# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ, 1981

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



**ԵՐԵՎԱՆ ✦ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ**

## СОДЕРЖАНИЕ







# ՆՈՐ ՏԱՐՎԱ ՇՆՈՐՀԱՎՈՐԱՆՔ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

## Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԼՈՒՅԹԸ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅԱՄԲ ԵՎ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՌԱԴԻՈՅՈՎ

Թանկագին ընկերնե՛ր, բարեկամնե՛ր:

Կրեմլյան կուրանտները համրում են 1980 թվականի վերջին րոպեները: Անցնող տարին շատ բան ներառավ իր մեջ՝ այդ տարում եղան դժվարություններ և դառնություններ, եղան նաև հաջողություններ և ուրախություններ: Բայց մենք նրան ճանապարհում ենք բարի զգացումով:

Լենինյան փառապանծ հոբելյանի տարում սովետական մարդիկ աշխատեցին անձնվիրաբար և ոգեշնչված: Այդ հնգամյակում նոր խոշոր քայլ կատարվեց էկոնոմիկայի զարգացման գործում: Բարձրացավ ժողովրդի բարեկեցությունը: Ավելի քան 50 միլիոն մարդ բնակարանամուտ տոնեց: Է՛լ ավելի զարգացավ սոցիալիստական դեմոկրատիան: Սովետական Միության ժողովուրդները ապրում են որպես միասնական, համերաշխ ընտանիք: Պատշաճ մակարդակի վրա է պահպանվում մեր պաշտպանունակությունը:

Սրտագին շնորհակալություն բոլոր նրանց, ովքեր աշխատում են գործարաններում ու ֆաբրիկաներում, նավթահանքերում, տրանսպորտում, դաշտերում ու ֆերմաներում, կառուցում տներ, գցում մայրուղիներ, կառուցում էլեկտրակայաններ, ովքեր ստեղծում են հոգևոր արժեքներ, սովորեցնում ու դաստիարակում երեխաներին, պահպանում մարդկանց առողջությունը, զարդարում նրանց կենցաղը՝ բոլոր նրանց, ովքեր գիտակցաբար ու բեղմնավոր կերպով աշխատում են ի բարօրություն սոցիալիստական հայրենիքի:

Երկիրը քաղաքական և աշխատանքային մեծ խանդավառության պայմաններում նախապատրաստվում է ՍՄԿԿ XXVI համագումարին: Դա ցույց է տալիս ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման առաջիկա հնգամյակի և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծի քննարկման ընթացքը: Հատուկ նշանակություն է տրվում գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, արտադրության արդյունավետության բարձրացմանը, պարենային պրոբլեմի լուծմանը, ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ավելացմանը, բնակարանային շինարարությանը:

Մենք լիակատար հիմքով հայտարարում ենք՝ ժողովուրդն ու կուսակցությունը միասնական են: Այդ անխախտ միասնությունը կոմունիզմի համար մղվող մեր պայքարի նոր հաջողությունների երաշխիքն է:

Սովետական ժողովուրդը միահամուռ հավանություն է տալիս ու ջերմորեն պաշտպանում է կոմունիստական կուսակցության և սովետական պետության լենինյան ներքին և արտաքին քաղաքականությունը: Սովետական Միու-

թյան արտաքին քաղաքականությունը հետապնդում է պարզ ու ազնիվ նպատակներ: Մենք խաղաղություն ենք ուզում բոլոր ժողովուրդների համար: Ազատության, արդարության և առաջադիմության իդեալներին մեր նվիրվածությունը անսասան է: Սովետական Միությունը վճռականորեն հանդես է գալիս հօգուտ լարվածության թուլացման, հօգուտ համագործակցության ամրապնդման և հաստատակամ «ոչ» է ասում սպառազինությունների մրցավազքին, իմպերիալիստական քաղաքականության հետևանքով առաջացող բարդություններին ու կոնֆլիկտներին:

Սովետական Միությունը աշխարհում լավ բարեկամներ շատ ունի: Նոր տարվա նախօրեին մենք մեր լավագույն բարեմաղթություններն ենք հայտնում սոցիալիզմի երկրների աշխատավորներին, կոմունիստական, բանվորական, ազգային-դեմոկրատական կուսակցություններին, իմպերիալիզմի, ռեակցիայի և պատերազմի դեմ պայքարող բոլոր մարտիկներին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների խորհրդի անունից նոր տարվա առթիվ ի սրտե շնորհավորում եմ սովետական հերոսական բանվոր դասակարգին, պանծալի կոլտնտեսային գյուղացիությանը, ժողովրդական մտավորականությանը:

Քաջառողջություն ձեզ, լավ տրամադրություն, հաջողություններ աշխատանքում, ուսման, ստեղծագործության մեջ:

Ամանորյա ողջույն հեղափոխության, պատերազմի և աշխատանքի վետերաններին, հայրենիքի խորին շնորհակալությունն ու երախտագիտությունը ձեզ:

Ամբողջ սրտով երջանկություն և ուրախություն եմ մաղթում սովետական կանանց:

Ջերմ շնորհավորանքներ սովետական հիանալի երիտասարդությանը, բանակի և նավատորմի քաջարի ռազմիկներին:

Լավագույն մաղթանքներ բոլոր նրանց, ովքեր Նոր տարվա գիշերը կանգնած են տասնմեկերորդ հնգամյակի աշխատանքային հերթափոխի, աչալուրջ պահպանում են սովետների երկրի սրբազան սահմանները, աշխատում հայրենի հողից հեռու:

Թո՛ղ յուրաքանչյուր տան մեջ, յուրաքանչյուր ընտանիքում միշտ բարօրություն և համաձայնություն լինի:

Շնորհավո՛ր Նոր տարի, թանկագին ընկերնե՛ր:

Նոր երջանկություն:

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

*Մեր ԵՐԿԻՐԸ ԹԵՎԱԿՈԽԵԼ է ժողովրդական տնտեսության զարգացման նոր՝ տասնմեկերորդ հնգամյակը: Թևակոխել է խրոխտ քայլերով, այն բանի խոր գիտակցմամբ, որ հնգամյակի, ինչպես և ամեն մի այլ ձեռնարկման, հաջող ընթացքն ու ավարտը որոշակի չափով լավ մեկնարկով են պայմանավորված: Մասսայական ինֆորմացիայի միջոցները ամեն օր բերկրալի լուրեր են հաղորդում այն մեծագործությունների մասին, որոնցով սովետական ժողովուրդը նշանավորում է նոր հնգամյակի առաջին շաբաթները: Հնգամյա պլանը, ճիշտ է՝ դեռ իբրև նախագիծ, ամբողջ երկրով մեկ սկսել է իր հաստատուն երթը: Եվ, ինչպես հունդը պարարտ հողի մեջ, նրա հոյակապ կանխագծումներն սկսում են արդեն ծիլեր տալ, շունչ առնել մեր ստեղծարար ժողովրդի մեծ ու փոքր գործերում:*

*Սովետական մարդու սրտին թանկ ու հարազատ է «հնգամյակ» հասկացությունը: Նա դրա հետ կապում է գալիքի իր հույսերը, այն նրան համակում է լավատեսությամբ, ապագայի նկատմամբ պայծառ հավատով: Սեփական կենսափորձով, մեր զարգացման ողջ ընթացքով հիմնավորված սպասելիքներ են դրանք: Հնգամյակները, եթե ժամանակակից տեխնիկայի լեզվով արտահայտվելու լինենք, դարձան այն յուրատեսակ բազմաստիճան հրթիռը, որը մեր երկիրը դուրս բերեց զարգացած սոցիալիզմի ուղեծիր: Տասնմեկերորդ հնգամյակը, առաջիկա տասը տարիներն ընդհանրապես, նոր փուլ կնշանավորեն կոմունիստական հասարակարգի կառուցման, երկրի հետագա սոցիալ-տնտեսական առաջընթացի ասպարեզում:*

*Հնգամյա պլանի նկատմամբ համաժողովրդական հետաքրքրության վառ արտահայտությունն է այն հիրավի աննախադեպ ակտիվությունը, որի պայմաններում սովետական մարդիկ քննարկում են երկրի սոցիալ-տնտեսական զարգացման հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը: Կուսակցությունը մոբիլիզացրել, գործի է դրել ժողովրդի կոլեկտիվ բանականությունն ու սոցիալական պրակտիկան, որպեսզի առավելագույն ճշգրտությամբ իր կանխագծումները ներդաշնակի նրա իղձերին ու խոհերին:*

*«ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը տեսական ու գործնական մեծ կարևորության փաստաթուղթ է: Նրանում մարքս-լենինյան տեսության հիման վրա ընդհանրացված է մեր երկրում կոմունիստական շինարարության պրակտիկան, մարմնավորված են արդի փուլում տնտեսական ու սոցիալական զարգացման կարևորագույն հարցերում ՍՄԿԿ-ի ստրատեգիան ու տակտիկան: Ինչպես նշվում է նախագծում, «Սովետական Միությունն ութսունական թվականներն է թևակոխում՝ ունենալով տնտեսական ու գիտական հզոր պոտենցիալ, բարձրորակ կադրեր: Տնտեսական ու սոցիալական զարգացման բնագավառում ձեռք բերված բնագծերը թույլ են տալիս լուծել է՛լ ավելի մասշտաբային խնդիրներ»:*

*Ներառելով այն ողջ արժեքավորը, որ բնորոշ է անցած հնգամյա պլաններին, սերվելով դրանցից և ընդհանրացնելով մեր տնտեսական ու սոցիալական*

զարգացման ամբողջ կեսդարյա պլանային փորձը, ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը միաժամանակ այն առանձնահատկությունն ունի, որ նրանում կոմպլեքսային ձևով դրվում են սոցիալական զարգացման՝ մասշտաբներով ու ընդգրկման շրջանակներով այնպիսի վիթխարածավալ խնդիրներ, որոնք արդեն իսկ իրենց բովանդակությամբ նոր որակ են հատկանշում և որոնց լուծումը սոցիալական հետագա առաջընթացի անհամեմատ ավելի բարձր մակարդակ կնշանավորի։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ նախագծի ամեն մի հոդված, դրույթ կամ հարցադրում մեկնում է մարդուց ու հանգում է նրան։ Արտահայտելով ժողովրդի բարեկեցության նկատմամբ իր անսահման հոգատարությունը, կուսակցությունն ազդարարում է, որ ութսունական թվականներին հետևողականորեն կշարունակի իրականացնել իր տնտեսական ստրատեգիան, որի գերագույն նպատակն է ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքը, անհատի համակողմանի զարգացման լավագույն պայմանների ստեղծումը։

ՍՄԿԿ XXVI համագումարին ներկայացվելիք այս պատմական փաստաթղթում հանգամանորեն արծարծվել ու գիտականորեն հիմնավորվել են տնտեսական, քաղաքական ու սոցիալական բոլոր այն գործոնները, որոնք որոշիչ դեր ունեն կուսակցության ստրատեգիական կուրսի իրականացման ասպարեզում։

Նոր խնդիրների լուծման երաշխիքը կուսակցությունը համարում է հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացումը, սովետական մարդկանց սոցիալական ու աշխատանքային ակտիվության աճը։ Փոխադարձորեն միմյանց հետ շաղկապված հարցերի այս կոմպլեքսի ներդաշնակ լուծման փորձը, որ կուտակվել է զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման պրոցեսում, ոչ պակաս հաջողությամբ մեզ կծառայի նաև կոմունիստական շինարարության արդի փուլի արմատական խնդիրների իրականացման ասպարեզում։

Խոսելով ութսունական թվականներին երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կետկոմի նախագծի մասին, մենք ակամա մտքով վերադառնում ենք մեր մոտիկ անցյալի այն օրերը, երբ նույնպիսի գործարարությամբ ու ոգևորությամբ քննարկում էինք տասներորդ հնգամյակի դիրեկտիվները։ Այդ հնգամյակն արդեն անցյալ է դարձել։ Սովետական մարդիկ այժմ հնարավորություն ունեն դիրեկտիվները համադրելու իրականության հետ։ Գլխավոր արդյունքը, որի մասին այսօր կարելի է խոսել, դա այն է, որ անցած տարիները հաստատեցին կուսակցության տնտեսական ստրատեգիայի ճշտությունը։ Խոշոր քայլ արվեց ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման, սոցիալական մեծ ու կարևոր խնդիրների լուծման ասպարեզում, զգալիորեն աճեց երկրի տնտեսական ու պաշտպանական պոտենցիալը։ Տասներորդ հնգամյակը, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «արժանի տեղ կգրավի կոմունիզմի ճանապարհով վստահորեն ընթացող սովետական ժողովրդի հերոսական գործերի պատմության մեջ»։

Անցած հնգամյակը փառապանծ գործերով նշանավորեցին մեր հանրապետության աշխատավորները։ Հայկական ՍՍՀ-ն չորս տարիների արդյունքներով հաղթող ճանաչվեց համամիութենական մրցության մեջ և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Կան բոլոր հիմքերը հուսալու, որ այդ բարձր պատվին հանրապետության աշխատավորները կարժանանան նաև 1980 թվականին ձեռք բերած ցուցանիշների համար։

Օրինական հպարտությամբ նշելով ձեռք բերված հաջողությունները, հանրապետության արտադրական կոլեկտիվները ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի քննարկմանը նվիրված ժողովներում կուսակցական սկզբունքայնությամբ բացահայտում են նաև առկա թերությունները, նշում մեր կենսագործունեության տարբեր ոլորտներում աշխատանքի որակի հետագա բարելավման ուղիները։ Իսկ թերություններն ու վրիպումները իրոք դեռ քիչ չեն։ Կարելի է թվարկել մի ամբողջ շարք միավորումներ, ձեռնարկություններ, կոլտնտեսություններ ու պետական տնտեսություններ, որոնք չեն կատարել ո՛չ միայն ստանձնած պարտավորու-



թյունները, այլև հնգամյակի պետական պլանային առաջադրանքները։ Դեռևս չի հաղթահարվում կապիտալ շինարարության տևականորեն ետ մնալը, ձգձգվում է ինչպես նոր ձեռնարկությունների գործարկումը, այնպես էլ հների տեխնիկական վերազինումը, որի հետևանքով ժողովրդական տնտեսությունը նախատեսվածից պակաս է տրվել տասնյակ միլիոնավոր ռուբլու արդյունաբերական արտադրանք։ Մի շարք ձեռարկությունների թողարկած արտադրանքը որակական ցուցանիշներով խիստ ետ է մնում արդի պահանջներից։

Ութսունական թվականներին, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում, պետք է ավարտվի էկոնոմիկայի փոխադրումը ինտենսիվ զարգացման ռելսերի վրա, պետք է խիստ բարձրացվեն աշխատանքի արտադրողականությունն ու որակը։ Պլենումի այս պահանջը, որն իր արտացոլումը գտավ նաև համագումարին ներկայացվելիք նախագծում, գործողության ուղեցույց պետք է դառնա հանրապետության աշխատանքային կոլեկտիվների, տնտեսական մարմինների ու կուսակցական կազմակերպությունների համար։ Մեր ժամանակներում ինտենսիվ զարգացման գործոնով է ամենից առաջ պայմանավորված հանրային արտադրության, հետևաբար և հասարակական կյանքի մյուս ոլորտների արագ առաջընթացը։

Հնգամյակի արդյունքները համոզիչ կերպով ցույց են տալիս, որ տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրները հաջողությամբ են լուծվում հենց այն կոլեկտիվներում ու արտադրության ճյուղերում, որտեղ տնտեսական ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները կարողացել են ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների ոգով ժամանակին վերակառուցել իրենց գործունեությունը, շրջադարձ կատարել դեպի որակական գործոնները, աշխատանքի կազմակերպման հիմքում դնել ինտենսիվ զարգացման նախադրյալները։

Էկոնոմիկայի ինտենսիվացումը այն գլխավոր լծակն է, որի միջոցով կուսակցությունը զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում իրականացնում է իր տնտեսական քաղաքականությունը։ Լայն իմաստով՝ ինտենսիվացումը հենց տնտեսական պոտենցիալի առավել ճիշտ օգտագործումն է, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման հիման վրա ժողովրդատնտեսական ողջ կոմպլեքսի արդյունավետության բարձրացումը։ Գործի հաջողությունն այստեղ շատ բանով, իհարկե, պայմանավորված է համապետական բնույթի այնպիսի միջոցառումներով, ինչպիսիք են պլանավորման ու կառավարման կատարելագործումը, միջտնտեսային ու միջճյուղային կապերի ամրապնդումը, նյութատեխնիկական մատակարարման բարելավումը և այլն։ Սակայն պարզ է և այն, որ բոլոր այդ միջոցառումները կոնկրետանում, ամենօրյա պրակտիկ գործունեության խնդիր են դառնում առանձին ձեռնարկությունների, տնտեսական այլ միավորների ու կազմակերպությունների շրջանակներում։ Եվ հենց այս մակարդակում է որոշվում, թե այդ ամենը ինչպիսի արդյունավետությամբ է ի սպաս դրվում նյութական, աշխատանքային, ֆինանսական ռեսուրսների, արտադրական կոլեկտիվների ու անհատների ստեղծագործական հնարավորությունների օգտագործմանը։ Կենսագործելով էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ռելսերի վրա փոխադրելու կուսակցության քաղաքականությունը, տնտեսական ղեկավարները, կուսակցական ու հասարակական կազմակերպությունները պետք է ամենից առաջ հոգան աշխատանքային կոլեկտիվներին այդ պրոցեսի մեջ ակտիվորեն ներգրավելու, նրանց ստեղծարար ջանքերը խնդրի լուծմանը նպատակամղելու մասին։

Ինտենսիվ զարգացման գործոնները առանձնահատուկ կարևորություն են ստանում մեր հանրապետության պայմաններում, որտեղ արդյունաբերական արտադրանքի թողարկումը հնգամյակի տարիներին նախատեսվում է մեծացնել 29—32 տոկոսով՝ նկատելիորեն ավելի շատ, քան միութենական միջին ցուցանիշը։ Ընդ որում շեշտը դրվում է ոչ թե նոր ձեռնարկությունների կառուցման, այլ գործողների տեխնիկական վերազինման, գիտության ու տեխնիկայի նվաճումների կիրառմամբ արտադրական նույն տարածություններից ավելի մեծ արդյունք ստանալու վրա։ Իսկ նման ներդրումները, ինչպես հայտնի է, ամենաարդյունավետն են ու շահութաբերը։

Չի կարելի, սակայն, չնշել, որ մեզանում խիստ դժվարությամբ է հաղթահարվում արտադրության զարգացման էքստենսիվ եղանակի հոգեբանական

պատնեշը։ Որոշ տնտեսավարներ փորձում են իրենց պահպանողականությունը հիմնավորել նրանով, որ հանրապետությունում աշխատանքային ռեսուրսների նվազման պրոբլեմը նույնքան սուր բնույթ չի կրում, ինչպես ամբողջ երկրում։ Նման դիրքորոշման վնասակարությունն ավելի ակնհայտ է դառնում, երբ այն կիրառության ասպարեզ է գտնում տնտեսական պրակտիկայում։ Ինչպես ցույց է տալիս անցած հնգամյակի փորձը, հանրապետության մի շարք ձեռնարկություններում պլանային առաջադրանքների կատարումն ապահովվեց հենց այդ եղանակով՝ անթույլատրելի չափերով աշխատուժի մեծացման հաշվին, մի բան, որը չէր կարող բացասաբար չանդրադառնալ աշխատանքի արտադրողականության բարձրացման և տնտեսական այլ ցուցանիշների վրա։

Վերջին տարիներին հանրապետությունում քիչ բան չի արվել աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման նպատակով։ Նոր հնգամյակում էլ կշարունակվի արդյունաբերական ձեռնարկությունները և նրանց մասնաճյուղերը փոքր ու միջին քաղաքներում տեղաբաշխելու՝ պրակտիկայում իրեն լրիվին արդարացրած կուրսը։ Այլ կերպ ասած, արդյունաբերությունը ինքը կշարունակի մոտենալ աշխատանքային ռեսուրսներով հարուստ շրջաններին։ Սակայն դա պրոբլեմի լուծման՝ թեպետև բավական արդյունավետ, բնավ համապարփակ միջոցը չէ։ Լուրջ ուշադրություն է պահանջում բուն խոշոր քաղաքներում աշխատանքային ռեսուրսների առկա ավելցուկը հանրային արտադրության մեջ ամբողջովին ներգրավելու հարցը։ Տնտեսական նշանակությունից բացի, այն ունի նաև սոցիալական առում և պետք է մշտապես գտնվի կուսակցական, սովետական, պլանային ու տնտեսական մարմինների տեսադաշտում։

Հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման նոր ծրագրի իրականացման շահերը կուսակցական կազմակերպություններից պահանջում են ավելի արդյունավետ կերպով զբաղվել սոցիալիստական շինարարության արդի փուլի համար կենսականորեն կարևոր այնպիսի խնդիրների լուծմամբ, ինչպիսիք են տնտեսական մեխանիզմի կատարելագործումը, պլանային կարգապահության ամրապնդումը, սոցիալիստական մրցության արդյունավետության բարձրացումը։

Էկոնոմիկայի վիթխարի մասշտաբների, միջճյուղային և միջտնտեսային կապերի բարդացման պայմաններում բնական է այն ուշադրությունը, որ կուսակցությունը հատկացնում է կառավարման ու տնտեսավարման մեթոդների կատարելագործմանը։ Սակայն, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումում, «կառավարման ու պլանավորման մեխանիզմը, տնտեսավարման մեթոդները և կատարողական կարգապահությունը առայժմ չի հաջողվել բարձրացնել ժամանակակից պահանջների մակարդակին»։ Լենինյան սկզբունքայնությամբ, ձեռք բերվածի սթափ գնահատմամբ արված այս հետևությունից ինքնին բխում են այն խնդիրները, որ ծառանում են մեր առջև։

Սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում կուսակցությունը միշտ էլ մեծագույն հոգատարություն է հանդես բերել տնտեսական ղեկավար կադրերի պատրաստման, սոցիալիստական տնտեսավարման տեսությամբ նրանց զինելու և գործնական հմտություններով օժտելու նկատմամբ։ Ակնհայտ է այդ տքնաջան աշխատանքի արդյունքը. մենք ունենք արտադրության ոչ քիչ թվով բանիմաց հրամանատարներ, որոնք աչքի են ընկնում կազմակերպչական տաղանդով, հասունացող հարցերը ժամանակին նկատելու և լուծելու ունակությամբ, որոնք ոչ թե սոսկ «պլան են կատարում», այլ իրոք իրականացնում են կուսակցության տնտեսական քաղաքականությունը, իրականացնում են ստեղծագործորեն, տեղական պայմանների ու հնարավորությունների հաշվառմամբ, կուսկազմակերպությունների հետ միասին այդ քաղաքականությունը աշխատավորական մասսաների սեփականությունը դարձնելով։

Մեր էկոնոմիկայի մասշտաբների ընդլայնման հետ մեծանում է և տնտեսական ղեկավարի դերը։ Այսօր նրա տնօրինությանը անհամեմատ ավելի շատ նյութական արժեքներ են վստահված, քան, ասենք, սրանից նույնիսկ մեկ-երկու տասնամյակ առաջ։ Նման հանգամանքներում, բնականաբար, ավելի ու ավելի է մեծանում տնտեսական և տեխնիկական քաղաքականության իրականացման գործում նրա տեսակարար կշիռը, ղեկավարի ընդունած վճիռներով է հաճախ պայմանավորվում այս կամ այն ձեռնարկման հաջողությունը։



Արդեն իսկ դրված դիրքով տնտեսական ղեկավարը որոշակի ազդեցություն է ունենում տվյալ ձեռնարկությունում աշխատանքի ոճի ձևավորման, նորի հանդեպ կոլեկտիվի վերաբերմունքի վրա։

Հարկ է նշել, սակայն, որ ինչպես արդյունաբերության ու շինարարության, այնպես էլ գյուղատնտեսության բնագավառում դեռևս քիչ չեն այն ղեկավար կադրերը, որոնք ո՛չ միայն պատշաճ կերպով չեն տիրապետում սոցիալիստական տնտեսավարման սկզբունքներին ու մեթոդներին, այլև հաճախ չեն էլ փորձում հաղթահարել այդ թերությունը, իներտության հասնող անտարբերություն են ցուցաբերում նույնիսկ շատ կարևոր ձեռնարկումների նկատմամբ։ Ժողովրդական տնտեսությունը չափազանց թանկ է հատուցում նման վերաբերմունքի համար, և ժամանակն է, որպեսզի այս կամ այն ղեկավարի գործունեության գնահատման չափանիշների համակարգում ըստ ամենայնի կարևորվի կառավարման կատարելագործմանը նրա ունեցած անձնական մասնակցությունը։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ կենսամակարդակի բարձրացման միջոցառումների համակարգում, որոնք նշված են Հիմնական ուղղությունների նախագծում, առանձնահատուկ կարևորություն ունի արդյունաբերության «Ա» խմբի ճյուղերի արտադրանքի աճի տեմպերի համեմատությամբ «Բ» խմբի ճյուղերի արտադրանքի աճի ավելի բարձր տեմպերի սահմանումը։ Անդրադառնալով նոր հնգամյակում երկրի տնտեսական զարգացման գլխավոր խնդիրներին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումում ասաց. «Այդ հարցերի շուրջ խոսակցությունը ես կսկսեի ոչ թե մետաղից, ոչ թե տրանսպորտից և նույնիսկ ոչ թե վառելիքից և էներգիայից, որքան էլ որ դրանք խոշոր նշանակություն ունեն, այլ այն հարցերից, որոնց լուծմամբ ավելի անմիջականորեն են պայմանավորված սովետական մարդկանց կենսապայմանները։ Կարծում եմ, որ հենց այն է բուն կուսակցական մոտեցումը, երբ անկյունաքար է դարձվում հոգատարությունը ժողովրդի բարօրության նկատմամբ»։

Էկոնոմիկայի առավել խոշոր շրջադարձ դեպի ժողովրդի բարեկեցության հետ առնչվող բազմապիսի խնդիրների լուծումը՝ ահա թե ինչպես է այժմ դրվում հարցը։

Մեր երկրի զարգացման որոշակի փուլերում բուն իսկ այդ զարգացման տրամաբանությամբ խնդիրների խնդիրը համարվել է ծանր ինդուստրիայի առաջընթացի ապահովումը։ Եվ դա միանգամայն բնական է. ծանր ինդուստրիան է այն հիմքը, որի վրա զարգանում են էկոնոմիկայի մյուս ճյուղերը։ Բացի այդ, նման կուրսը թելադրվում էր նաև մեզ պարտադրված պատերազմների, արտաքին աննպաստ պայմանների հետևանքով։ Օբյեկտիվ պատճառները արդարացնում էին այն իրողությունը, որ երկիրը հնարավորություն չուներ հավասարապես հոգալու բնակչության բարեկեցությունը որոշող կոմպլեքսի բոլոր բաղադրատարրերն ապահովելու մասին։ Ըստ երևույթին հենց այդ ժամանակներից է ժառանգություն մնացել մարդու անձնական պահանջմունքների հանդեպ անուշադիր վերաբերմունքի այն ստերեոտիպը, որը դեռ այսօր էլ իրեն մերթ զգացնել է տալիս տնտեսական ու սպասարկման ոլորտի առանձին ղեկավար աշխատողների մոտ։

Մինչդեռ ժամանակները շատ են փոխվել։ Բնավ չթուլացնելով ծանր ինդուստրիայի զարգացման նկատմամբ մեծ ուշադրությունը, կուսակցությունը երկրի տնտեսական վիթխարի պոտենցիալի պայմաններում խնդիր է դնում ոչ թե պարզապես ավելացնել լայն սպառման ապրանքների արտադրությունը, այլ շրջադարձ կատարել դեպի ժողովրդի բարեկեցության հարցերի լուծումը։

Առաջիկա հնգամյակը, ինչպես դա վկայում է ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը, կլինի հենց այդպիսի հնգամյակ։ Կուսակցությունը երկրի տնտեսական ու գիտատեխնիկական պոտենցիալը նպատակամղում է այն բանին, որպեսզի լրիվին բավարարվեն բնակչության պահանջմունքները բարձրորակ ու բազմատեսակ սննդամթերքի և արդյունաբերական ապրանքների նկատմամբ, որպեսզի ավելի բարելավվեն սովետական մարդու աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանները, ավելի լայն հնարավորություններ ստեղծվեն նրանց առողջության ամրապնդման ու ներդաշնակ զարգացման համար։

Ոչ միայն տնտեսական ու սոցիալական, այլև քաղաքական վիթխարի կարև-

վորության այս խնդրի լուծմանը պետք է նպատակամղված լինեն մեր բոլոր ջանքերը։ Յուրաքանչյուր ոք պետք է գիտակցի, որ բարեկեցության աճը ձեռք է բերվում արտադրության ամեն մի մասնակցի, ամեն մի կոլեկտիվի աշխատանքային ավանդի մեծացմամբ, այն պահանջում է խորապես ըմբռնել սեփական աշխատանքի հասարակական նշանակությունը, ընդհանուր գործի համար անձնական պատասխանատվությունը։

Մեծ անելիքներ ունեն հատկապես արդյունաբերական այն ձեռնարկությունների ղեկավարներն ու կոլեկտիվները, որտեղ անմիջականորեն վճռվում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության արագ վերելքի խնդիրը։ Հանրապետության մի շարք ձեռնարկություններ, հատկապես թեթև արդյունաբերության համակարգում, ընդօրինակման արժանի հետևողականությամբ պայքարում են ո՛չ միայն արդյունաբերական ապրանքների պլանային առաջադրանքները քանակական ու որակական բոլոր ցուցանիշներով կատարելու համար, այլև որոնում, գտնում են ներքին ռեզերվների հաշվին բնակչության շրջանում լայն պահանջարկ վայելող ապրանքների թողարկումն ամեն կերպ մեծացնելու հնարավորություններ։ Նրանց փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր արտադրության ակունքների մոտ կանգնած են բանիմաց, սրտացավ, իրենց կատարածի պետական կարևորությունը գիտակցող մարդիկ, այնտեղ բարեհաջող է և գործերի ընթացքը։

Սակայն չի կարելի աչք փակել այն բանի հանդեպ, որ ինչպես արտադրական, այնպես էլ սպասարկման ոլորտներում բնավ ամեն ինչ չի արվում արդի պահանջների ոգով սպառողին, գնորդին, հաճախորդին, ավելի լայն իմաստով՝ սովետական մարդուն գոհացնելու համար։ Դանդաղ են հաղթահարվում անցյալի իներցիան, ստերեոտիպը, հաճախ գործի գլուխ կանգնած են մարդիկ, որոնք այդ ամենն անելու ո՛չ միայն կարողություն, այլև ցանկություն չեն դրսևորում։

Նոր խնդիրները նոր մոտեցում են պահանջում։ Բնակչության բարեկեցության հետագա վերելքի լայն ծրագիրն իրականացնելու համար կուսակցական և սովետական մարմինները պետք է լրջորեն բարելավեն համապատասխան ոլորտների ու ճյուղերի աշխատանքը, օգնեն հաղթահարելու դժվարություններն ու խոչընդոտները, այդ օղակներն ամրապնդեն բանիմաց, կուսակցության նոր պահանջների մակարդակին կանգնած, մարդկանց օգտակար լինելու պատրաստակամությամբ օժտված կադրերով։

ՄԵՐ ԱՌՋԵՎ ԼՈՒՐՋ ԽՆԴԻՐՆԵՐ ԵՆ ծառացել տնտեսական մեխանիզմը կատարելագործելու, աշխատանքային ու պլանային կարգապահությունն ամրապնդելու, սոցիալիստական մրցության ներգործունությունն ուժեղացնելու, նրա պոտենցիալ հնարավորություններն արդյունավետ օգտագործելու ասպարեզում։ Ինչպես հայտնի է, բոլոր այդ հարցերի վերաբերյալ վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտկոմն ընդունել է համապատասխան որոշումներ, մշակել տնտեսական ու սոցիալական զարգացման այդ կարևոր լծակների արդյունավետ գործադրման միջոցառումներ։

Արդեն այժմ՝ տնտեսական մեխանիզմի կատարելագործման աշխատանքի սկզբնական փուլում, տնտեսավարման նոր պայմանները որոշակիորեն ընդլայնում են մրցության հնարավորությունների վերաբերյալ մեր պատկերացումների շրջանակը։ Մասնավորապես, ավելի ամուր նախադրյալներ են ստեղծվում մրցության բոլոր երեք հիմնական ֆունկցիաների իրականացման համար. տնտեսական՝ իբրև հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման գործոնի, սոցիալ-քաղաքական՝ որպես արտադրության կառավարմանը մասսաների ակտիվ մասնակցության եղանակի, և գաղափարական-դաստիարակչական՝ իբրև աշխատանքի հանդեպ նոր վերաբերմունքի դաստիարակման միջոցի։

Կուսակցական ու հասարակական կազմակերպությունները պետք է մեծ ուշադրություն դարձնեն հատկապես մրցության այն ձևերի տարածմանը, որոնք ավելի են համապատասխանում տնտեսական զարգացման ներկա փուլի պահանջներին։ Հարկավոր է ամեն կերպ խրախուսել, օրինակ, հանդիպական պլանների ընդունումը, որոնք այժմ, ըստ էության, հանդես են գալիս իբրև պետական տարեկան պլանի բաղկացուցիչ մաս և լայն հնարավորություններ են ըն-



ձեռում պլանավորմանը աշխատավորական մասսաներին ներգրավելու համար։

Մրցության տնտեսական դերն այնքան ավելի բարձր կլինի, որքան նրա կազմակերպումն ավելի սերտորեն առնչվի աշխատանքի կազմակերպման հետ։ Միավորումների ու ձեռնարկությունների բարդ տնտեսական կապերի պայմաններում խիստ արդյունավետ է, օրինակ, արտադրության բնույթով միմյանց հետ կապված ձեռնարկությունների մրցությունը։ Այն ստեղծում է փոխադարձ հսկողության գործուն համակարգ, նպաստում է պլանային կարգապահության ամրապնդմանը, փոխադարձ մատակարարումների բարելավմանը։

Մրցությունն ինքն իր ողջ էությամբ ակտիվ ստեղծագործական պրոցես է, և նոր հնգամյակի խնդիրների իրականացումը շատ բանով կհարստացնի նրա զինանոցը։

Տնտեսական ու սոցիալական պրոցեսների պլանաչափ կառավարումը սոցիալիստական հասարակարգի մեծագույն առավելությունն է և հենց նրան էլ պետք է բնորոշ լինեն խորապես գիտական պլանավորումն ու բարձր պլանային կարգապահությունը։ Կուսակցությունը տնտեսական մեխանիզմի կատարելագործման միջոցառումների համակարգում ըստ ամենայնի կարևորում է պլանի կազմակերպող և ուղղություն տվող դերը։ Իր այդ ֆունկցիան պլանը կարող է կատարել միայն այն դեպքում, երբ այն իրոք օրենք է դառնում ինչպես պլանը մշակողների, այնպես էլ կատարողների համար։ Անցած տարիների փորձը ցույց է տալիս, որ հանրապետության պլանային մարմինները, գերատեսչություններն ու ձեռնարկությունները բավական հաճախ են դիմել պլանները վերանայելու ոչնչով չհիմնավորված պրակտիկային։

Նոր հնգամյակի սկզբից ևեթ հարկավոր է պայքարել պլանային խստագույն կարգապահության հաստատման համար, հասնել այն բանին, որ գիտական խոր հիմնավորվածությամբ մշակված պլանները ժամանակին տրամադրվեն դրանց անմիջական կատարողներին։ Լուրջ ամրապնդման կարիք ունի նաև պայմանագրային կարգապահությունը։

ՀԻՇԱՐԺԱՆ ՕՐԵՐ Է ԱՊՐՈՒՄ մեր երկիրը։ Շուտով իր աշխատանքը կսկսի ՍՄԿԿ XXVI համագումարը։ Քաղաքական այն մեծ ակտիվությունն ու աշխատանքային խանդավառությունը, որով այս օրերին ապրում է մեր բովանդակ երկիրը, լավագույն վկայությունն են այն բանի, թե սովետական մարդիկ ինչպիսի ջերմ զգացմունքներ են տածում հարազատ կուսակցության հանդեպ։ ՍՄԿԿ ամեն մի համագումար մեր երկրի տնտեսական, սոցիալական ու քաղաքական կյանքում մի նոր փուլ է նշանավորել։ XXVI համագումարը ի մի կբերի զարգացած սոցիալիստական հասարակարգ կառուցող սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի արդյունքները, կնշի կոմունիստական շինարարության նոր բնագծերը։ Այն պատմական իրադարձություն կլինի ո՛չ միայն մեր կուսակցության, այլև միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման կյանքում։

Սովետական կոմունիստների մեծ համաժողովին նախորդում են հանրապետական կոմունիստական կուսակցությունների համագումարները։ Հունվարի 22-ին իր աշխատանքն է սկսում նաև ՍՄԿԿ մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի կոմկուսի XXVII համագումարը։ Մեր հանրապետության կոմունիստները դեպի իրենց համագումարն են գնում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի շուրջը սերտորեն համախմբված, կուսակցության կանխագծումները հետևողականորեն իրականացնելու վճռականությամբ։

Համագումարի նախօրյակին մամուլում հրապարակվեցին հանրապետության աշխատավորների 1981 թվականի սոցիալիստական պարտավորությունները։ Հավանություն տալով ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումի որոշումներին, ասված է այդ փաստաթղթում, ղեկավարվելով պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթում շարադրված ցուցումներով ու հետևություններով, ծավալելով աշխատավորական լայն զանգվածների սոցիալիստական մրցությունը, հանրապետության աշխատավորները մեծ ոգևորությամբ ընդգրկվել են տնտեսական ու սոցիալական զարգացման 1981 թվականի պլանը հաջողությամբ կատարելու համար ծավալված համամիութենական սոցիալիստաան մրցության մեջ։

Տպավորիչ են այդ փաստաթղթում բերված թվերը։ Ավելի քան 70 հազար բանվորներ, 2.200 բրիգադների, տեղամասերի և արտադրամասերի կոլեկտիվներ պարտավորվել են հնգամյակի առաջին տարվա պլանը կատարել մինչև 1981 թվականի նոյեմբերի 29-ը՝ Հայաստանում սովետական իշխանության հաստատման օրը։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվում են գերակատարել արդյունաբերական արտադրության ծավալի աճի հնգամյա պլանով նախատեսված տեմպերը։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանները կգերակատարեն նաև գյուղի աշխատավորները։ 1981 թվականին օգտագործման կհանձնվեն վեց հազար հեկտար ոռոգելի հողեր, ժամկետից երկու տարի շուտ կգործարկվեն Արագածի և Աբովյանի շրջաններում կառուցվող ջրամբարները։

Բարձր պարտավորություններ են ստանձնել նաև կապիտալ շինարարության, տրանսպորտի և կապի, գիտության, մշակույթի, կրթության և առողջապահության, առևտրի ու բնակչության կենցաղային սպասարկման բնագավառների աշխատողները։

Տասներորդ հնգամյակը աշխատանքային սխրագործությունների էստաֆետը հանձնել է իր հաջորդին՝ տասնմեկերորդին։ Հանձնել է կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերված ակնբախ հաջողություններով։ Նոր հնգամյակի աշխատանքային ռիթմը շատ բանով այս օրերին է հաստատվում։ Եվ հանրապետության աշխատավորները մեծ երթին արժանի մեկնարկ են վերցրել։

Առջևում կարևոր ու պատասխանատու շատ գործեր են սպասում։ Հստակորեն սահմանված են հնգամյակի և գալիք տասը տարվա գլխավոր բնագծերը, որոնց նվաճմանն են նպատակադրվում հանրապետության աշխատավորների եռանդն ու ստեղծագործական միտքը։

Կոմունիստական շինարարության ներկա փուլը մեր ժամանակներին վայել աշխատանքային մեծագործություններով նշանավորելու համաժողովրդական ձգտմանը հզոր լիցք է տվել հարազատ կուսակցության XXVI համագումարի պատվին ծավալված մրցությունը։ Արդյունաբերական ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում, գիտական լաբորատորիաներում և մշակույթի օջախներում, մեծ ու փոքր ամեն մի կոլեկտիվում մարդիկ նույն խոհերով են համակված՝ արժանավայել դիմավորել կուսակցության համագումարը։

Կուսակցությունը դեպի իր համագումարն է գնում ժողովրդի հետ սերտ միասնությամբ, հաստատ համոզված, որ իր բոլոր ծրագրերը կարժանանան նրա ջերմ հավանությանն ու պաշտպանությանը։

---



# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԵՐԱՇԽԻՔՆ Է

**Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ**
ՀԱՄԽ-ի նախագահ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ նախապատրաստության ընթացքում սկսվեց «ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի համաժողովրդական քննարկումը։ Սովետական ժողովուրդը հսկայական խանդավառությամբ ընդունեց նախագիծը։ Դա կարևոր, պատմական նշանակություն ունեցող փաստաթուղթ է, որով սահմանվում են մեր երկրի համընդհանուր ու համակողմանի զարգացման խնդիրներն ու բնագծերը։

Հիմնական ուղղություններով նախանշված մեր երկրի ժողովրդական տնտեսության համակողմանի վերելքի, աշխատավորների կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման լայն ծրագրի իրականացման գործում կուսակցությունը մեծ դեր է հատկացնում արհմիություններին։ «Հասուն սոցիալիզմի փուլում,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում,— բարձրանում է արհեստակցական միությունների, որպես կառավարման դպրոցի, տնտեսավարման դպրոցի, կոմունիզմի դպրոցի, նշանակությունը։ Նրանք կոչված են իրենց արժանի ավանդը մուծելու հնգամյա պլանի կատարման գործում, աշխատավորներին ավելի լայնորեն ներգրավելու արտադրության կառավարմանը, տնտեսական և սոցիալական բազմապիսի խնդիրների լուծմանը, նրանց մեջ դաստիարակելու արտադրության տիրոջ զգացում, բարձրացնելու սոցիալիստական մրցության ներգործությունը, մշտապես հոգ տանելու աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանների մասին, խիստ վերահսկողություն իրականացնել աշխատանքային օրենսդրության և կոլեկտիվ պայմանագրերի կիրառման նկատմամբ»։

Կուսակցությունը վստահում է արհմիություններին, հենվում նրանց վրա, համոզված լինելով, որ նրանք նոր հնգամյակում ևս կգտնվեն իրենց կոչման բարձրության վրա, ակտիվ գործունեությամբ կնպաստեն մեր երկրի հետագա առաջընթացին։

Սովետական արհմիությունները կուսակցության վստահությանը պատասխանում են կոնկրետ գործերով, ապացուցում, որ իրոք ունակ են պատվով կատարելու կառավարման և տնտեսավարման դպրոցի, կոմունիզմի դպրոցի իրենց դերը։ Դա դրսևորվում է ամենուրեք՝ աշխատավորներին մոբիլիզացնելու համար նրանց ծավալած արդյունավետ աշխատանքում, արտադրության մարդկանց կատարած մեծագործություններում, էկոնոմիկայի կառավարմանը նրանց ակտիվ մասնակցության մեջ։

Մեր հանրապետության աշխատավորները չթուլացող հետաքրքրությամբ են ուսումնասիրում «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—

1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը։ Ընթանալով ՍՄԿԿ XXVI համագումարին ընդառաջ՝ նրանք ստանձնում են նոր, բարձր սոցիալիստական պարտավորություններ, ձգտում են աշխատանքային սխրագործություններով նշանավորել կուսակցության մեծ համաժողովը։ Եվ արհմիությունները ակտիվորեն աջակցում են հայրենանվեր այդ գործին։ Այդ ակտիվությունը նրանց նախընթաց արդյունավետ գործունեության օրգանական շարունակությունն է։ Արհմիութենական կազմակերպությունները, կուսկազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ, բարձր պահելով մրցության դրոշը, կազմակերպչական լուրջ աշխատանք ծավալեցին տասներորդ հնգամյակի խնդիրները լիովին կենսագործելու նպատակով աշխատավորական կոլեկտիվներին մոբիլիզացնելու համար։ Եվ եթե մեր հանրապետությունը պատվով կատարեց տասներորդ հնգամյակի առաջադրանքները, ապա դրանում իրենց արժանի ավանդն ունեն նաև արհմիութենական կազմակերպությունները։ Եվ պետք ասել, որ այդ առթիվ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ողջույնի ջերմ խոսքերը, հանրապետության նվաճումներին տրված նրա բարձր գնահատականը վերաբերում են նաև Հայաստանի արհմիությունների բազմահազարանոց բանակին։

Նոր, տասնմեկերորդ հնգամյակում հանրապետությունը ավելի բարդ ու պատասխանատու խնդիրներ է լուծելու տնտեսական և սոցիալ-կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։ Այդ առումով նոր պահանջներ են առաջադրվում նաև կուսակցության հուսալի օգնականներին՝ արհմիություններին։ Նրանց խնդիրն է էլ ավելի բարձրացնել արտադրության զարգացման ու կառավարման այնպիսի կարևոր գործոնների դերը, ինչպիսիք են սոցիալիստական մրցությունը, կոմունիստական աշխատանքի համար շարժումը և մշտապես գործող արտադրական խորհրդակցությունները, ամեն ինչ անել, որ դրանք շոշափելիորեն ներազդեն արտադրության վերջնական արդյունքի վրա։

Մեծ է մրցության կենարար ուժը։ Դրված լինելով գիտական հիմքերի վրա, այսօր այն ընդգրկել է հանրապետության գրեթե բոլոր տնտեսությունների և կազմակերպությունների կոլեկտիվներին։ Նրա լայն թափն ապահովվում է նաև արտադրության կառավարման պրոցեսին աշխատավորության ակտիվ ներգրավման, մասնավորապես մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների բազմակողմանի գործունեության շնորհիվ։ Այսօր հսկայական կարևորություն ունի այդ խորհրդակցության գործունեությունը։ Այն սոցիալիստական դեմոկրատիայի, հասարակական վերահսկողության իրականացման կարևորագույն գործոն է, արտադրության զարգացման հզոր լծակ, նպաստում է բանվորների և ծառայողների ստեղծագործական նախաձեռնության զարգացմանն ու դրսևորմանը, հասարակական արտադրության մեծ ու փոքր հարցերի լուծմանը, նրա բարձր արդյունավետության ապահովմանը, սեփական և ընդհանուր աշխատանքի արդյունքների համար շահագրգռության բարձրացմանը։ Արտադրական խորհրդակցության արդյունավետ գործունեությունը օգնում է կյանքում առավել լրիվ իրագործելու լենինյան պատգամն այն մասին, որ բոլոր աշխատավորները պետք է դառնան կուսակցության տնտեսական քաղաքականությունն իրականացնող գիտակից մարտիկներ։

Լ. Ի. Բրեժնևն իր ելույթներում ու աշխատություններում նշել է արտադրական խորհրդակցությունների դերի բարձրացման կարևորությունը արտադրական դեմոկրատիայի հետևողական զարգացման գործում։ Կատարելով կուսակցության ցուցումները՝ ՀԱՄԽ-ն, ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեները սկզբնական արհմիութենական կազմակերպությունների միջոցով վերջին տարիներին զգալի աշխատանք են կատարել արտադրական խորհրդակցությունների գործունեությունն արմատապես բարելավելու համար։ Այսօր հանրապետության ձեռնարկություններում և կազմակերպություններում գործում են 1513 համագործարանային և արտադրամասային մշտական գործող արտադրական խորհրդակցություն և նրանց ներկայացուցիչների 14 խորհուրդ, ուր ընդգրկված է ավելի քան 53 հազար մարդ, այդ թվում՝ 39 հազար բանվոր։ 1979 թ. խորհրդակցություններն անցկացրել են 5360 նիստ, որոնց



մասնակցել են 418 հազար բանվորներ, ինժեներատեխնիկական աշխատողներ ու ծառայողներ։ Նրանք արել են մոտ 16 հազար առաջարկություն, որոնց 82 տոկոսը իրականացվել է։

Սակայն, հասկանալի է, որ արտադրական խորհրդակցությունների աշխատանքը գնահատվում է ոչ թե նիստերի ու առաջարկությունների քանակով, այլ նախ և առաջ տնտեսական ու սոցիալական այն արդյունքով, որը ձեռք է բերվում այդ հասարակական մարմինների գործունեության շնորհիվ։ Խորհրդակցություններում արված առաջարկությունների ներդրումից անցյալ տարի ստացվել է ավելի քան 2,3 միլիոն ռուբլու տնտեսական օգուտ։

Ամրապնդել այդ հաջողությունները՝ նշանակում է ուշադիր վերլուծել արտադրական խորհրդակցությունների գործունեությունը, ընդհանրացնել և տարածել նրանց ուսանելի փորձը, համբերատարությամբ շտկել թերություններն ու սխալները։ Փորձը ցույց է տալիս, որ արտադրական խորհրդակցությունը միայն այն դեպքում է դառնում մարտունակ հասարակական մարմին, երբ նրա օրակարգում քննարկվում են տնտեսական և սոցիալական նշանակության կարևոր հարցեր, երբ ընդունված որոշումները մտածված են և կոնկրետ, երբ սահմանված է (և դա ամենագլխավորն է) հատուկ և բազմակողմանի հսկողություն դրանց իրականացման նկատմամբ։

Այդպես է կազմակերպված գործը «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումում։ Գլխամասային գործարանի մշտապես գործող արտադրական խորհրդակցության կազմում ընտրված են լավագույն բանվորներ, ինժեներներ, տեխնիկներ։ Նրանցից շատերն արհմիութենական ակտիվիստներ են, արտադրության առաջավորներ, գիտատեխնիկական, գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերությունների անդամներ։ Խորհրդակցությունը գործում է տարեկան պլանին համապատասխան։ Պլանը քննարկվում և հաստատվում է արհմիության գործարանային կոմիտեի նիստում։ Կոլեկտիվի ընթացիկ խնդիրներին համապատասխան՝ պլաններում նախատեսվում է ուսումնասիրել այնպիսի հարցեր, որոնք առավելագույնս նպաստեն սոցիալիստական մրցության կազմակերպմանը, աշխատանքի առաջավոր ձևերի ներդրմանը, դրա արտադրողականության աճին, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը, աշխատանքի պաշտպանության ուժեղացմանը, աշխատանքային և արտադրական կարգապահության ամրապնդմանը և այլն։ Հեռանկարային պլանների հիման վրա կազմվում են եռամսյակային աշխատանքի պլաններ։ Խորհրդակցության յուրաքանչյուր նիստից հետո ձեռնարկության ղեկավարն իր հրամանով նշանակում է որոշման իրականացման համար պատասխանատու անձանց, նշում կատարման ժամկետները և այլն։ Խորհրդակցության նախագահությունը, հաճախ նաև արհմիության կոմիտեն, պարբերաբար լսում են տնտեսական ղեկավարների զեկուցումները ընդունված որոշումների կատարման ընթացքի մասին։

Այդ գործունեության լայն հրապարակայնությունն ապահովվում է ստորին մամուլի և տեղական ռադիոցանցի միջոցով։ Մշտական խորհրդակցության ընթացիկ գործունեությունը ղեկավարում է փորձառու աշխատողներից կազմված նախագահությունը։ Այն նախապատրաստում է նիստերը, ուսումնասիրում և ընդհանրացնում ստացված առաջարկությունները, կազմակերպում է հսկողություն դրանց իրագործման նկատմամբ։ Կոլեկտիվի արտադրական գործունեության վերաբերյալ առավել կարևոր հարցերի ուսումնասիրման նպատակով ստեղծվում են ժամանակավոր հանձնաժողովներ, որոնց գլխավորում են նախագահության անդամները։

Հանրապետության առաջավոր ձեռնարկությունների արտադրական խորհրդակցությունները մշտական ուշադրություն են նվիրում արտադրության արդյունավետության ու թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը։ Ահա մի օրինակ։ Սկսած 1979 թվականի ապրիլ ամսից՝ Արարատի ցեմենտաշիֆերի կոմբինատում ծանր վիճակ էր ստեղծվել Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական գործարանին կրաքար մատակարարելու հարցում։ Գործարանի արտադրական խորհրդակցության հանձնաժողովի նախաձեռնու-

թյամբ հարցը քննարկվեց քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության բանվորների ու շինարարության և շինանյութերի արդյունաբերության բանվորների արհմիությունների հանրապետական կոմիտեների համատեղ նիստում։ Այդ քննարկումն օգնեց բարելավելու կրաքարի մատակարարումը թե՛ քանակական և թե որակական ցուցանիշներով։

Մշտապես գործող խորհրդակցությունները լրջորեն նպաստում են արտադրական պրոցեսների մեքենայացմանն ու նոր տեխնիկայի ներդրմանը։ Գիտատեխնիկական ընկերությունների հանրապետական խորհուրդը և ճյուղային վարչությունները, սկզբնական արհմիութենական կազմակերպությունները բազմաթիվ հարցերի ընթացք են տալիս հենց արտադրական խորհրդակցությունների միջոցով։ Նրանք ձգտում են, որպեսզի գիտության նվաճումներն արտադրության մեջ ներդնելու գործի ամենաակտիվ մասնակիցը լինի ձեռնարկությունների ինժեներատեխնիկական աշխատողների հզոր ջոկատը։ Նշված աշխատանքների մակարդակի բարձրացմանը զգալիորեն նպաստեց ՀԱՄԽ-ի նախագահության՝ «Հանրապետության գիտատեխնիկական ընկերությունների աշխատանքի մասին» 1979 թ. ընդունած որոշումը։ Հարցի քննարկման արդյունքները, քննադատական դիտողություններն օգնեցին գիտատեխնիկական ընկերությունների հանրապետական խորհրդին՝ էապես վերակառուցելու իր գործունեությունը։ Այսօր նորարարական շարժման մեջ ներգրավված են շուրջ 22 հազար բանվոր-ծառայողներ, որոնց ջանքերով 1979 թ. արտադրության մեջ ներդրվել են 19 հազար ռացիոնալիզատորական առաջարկություն և 437 գյուտ։ Դրանց շնորհիվ տնտեսվել են 56,4 միլիոն ռուբլու աշխատանքային, նյութական և էներգետիկ ռեսուրսներ, իսկ հնգամյակի անցած չորս տարում այդ ցուցանիշը կազմել է 186 միլիոն ռուբլի։ Հաջողությունները բացատրվում են նաև գյուտարարների և ռացիոնալիզատորների տարեցտարի ծավալվող սոցիալիստական մրցությամբ, որը բարերար ազդեցություն է թողնում ինչպես տնտեսական ցուցանիշների, այնպես էլ աշխատանքի որակի լավացման վրա։ Նորարարների ստեղծագործական որոնումներն արժանացան բարձր գնահատականի. 1979 թ. արդյունքներով մեր հանրապետությունը համամիութենական սոցիալիստական մրցության մեջ առաջին անգամ խրախուսական պարգև ստացավ։ Մրցության հաղթողների թվում են Կիրովականի քիմիական գործարանի, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակագործվածքային միավորման, Երևանի ջերմաէլեկտրակենտրոնի նորարարների կոլեկտիվները։

Նրանց և մյուս առաջավոր կոլեկտիվների փորձը վկայում է, որ տնտեսական, արհմիութենական մարմինների և գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերության կազմակերպությունների համատեղ հետևողական գործունեությունն օգնում է նորարարների ստեղծագործական ողջ պոտենցիալը հաջողությամբ նպատակամղելու պետական պլանների անշեղ կատարմանը։ Սակայն այս ասպարեզում եղած հնարավորությունները շատ ավելին են, և դա մեզ պարտավորեցնում է մեծագույն խնամքով օգտագործել հասարակական այդ մեծ հարստությունը։

Հատկապես ցածր է քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության, գյուղատնտեսության, կոմունալ տնտեսության և կենցաղսպասարկման, անտառային արդյունաբերության և անտառային տնտեսության գիտատեխնիկական ընկերությունների հանրապետական վարչությունների օգտակար գործողության գործակիցը։ Նրանք գործնականորեն չեն ապահովում արդի փուլում գիտատեխնիկական հեղափոխության խնդիրների լուծումը։ 1979 թ. ռացիոնալիզատորական աշխատանքի ցուցանիշներն իջել են հաստոցաշինական, սարքաշինական, էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում։ Անմխիթար վիճակ է շինանյութերի արդյունաբերությունում։ Վերջին տասը տարիներին քարի և սիլիկատների գիտահետազոտական ինստիտուտում արված 130 գյուտից շինանյութերի մինիստրության ձեռնարկություններում արմատավորվել է միայն 8-ը։

Մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների մեծ մասը,



հատկապես, արդյունաբերության, տրանսպորտի ձեռնարկություններում, ավանդաբար մեծ տեղ են տալիս աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի վիճակի բարելավման, այդ նպատակի համար տրամադրվող միջոցների արդյունավետ օգտագործման հարցերին։ Եվ իրոք, հանրապետությունում լուրջ հաջողություններ են ձեռք բերվել աշխատանքի առողջ ու անվտանգ պայմանների ստեղծման, արտադրության մեջ վթարների ու վնասվածության նվազեցման գործում։ Կոլեկտիվ պայմանագրերով և աշխատանքի պաշտպանության համաձայնագրերով նախատեսված միջոցառումների իրականացման համար հնգամյակի չորս տարում ծախսվել է ավելի քան 85 միլիոն ռուբլի՝ պլանով նախատեսված 83-ի դիմաց։ Եթե 1975 թվականին դժբախտ դեպքերի հաճախականության գործակիցը կազմել է 2,7, ապա 1979 թվականին այն նկատելիորեն ցածր է եղել։

Սակայն արհմիությունների գործունեության այդ կարևոր ոլորտում դեռևս քիչ չեն թերություններն ու վրիպումները։ Վերլուծությունը ցույց է տալիս, որ արտադրական վնասվածության դեպքերի գերակշռող մասը տեղի է ունենում կազմակերպական բնույթի պատճառներով, հրահանգների պահանջների ուղղակի խախտումների, անվտանգության տեխնիկայի կանոնների ցածրորակ ուսուցման, անհատական պաշտպանության միջոցների բացակայության, աշխատանքային և արտադրական թույլ կարգապահության, աշխատանքի անվտանգության նկատմամբ անբավարար վերահսկողության հետևանքով։

Վիճակը շտկելու համար անհրաժեշտ է, որպեսզի աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի հարցերը արհմիութենական և տնտեսական կազմակերպություններն անպայմանորեն համարեն իբրև արտադրության կազմակերպման հիմնական հարցեր և սիստեմատիկաբար դրանք դնեն արտադրական խորհրդակցությունների և կոլեկտիվների ընդհանուր ժողովների քննարկմանը։ Դրանով իսկ կուժեղացվի վերջիններիս դերը սանիտարատեխնիկական պայմանների անձնագրերի կազմման, դրանց հիման վրա ձեռնարկությունների, գերատեսչությունների և ամբողջությամբ վերցրած մինիստրությունների աշխատանքի պայմանների, աշխատանքի պաշտպանության բարելավման և սանիտարաառողջարարական միջոցառումների 1981—1985 թթ. կոմպլեքսային պլանների մշակման գործում։ Եվ, վերջապես, անվտանգ պայմանների ստեղծումը սերտորեն կշաղկապվի արտադրության սոցիալական խնդիրների հետ, արդյունավետորեն կնպաստի աշխատանքի վերջնական արդյունքի բարելավմանն ու կայուն աշխատանքային կոլեկտիվների ստեղծմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի «Աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդման և ժողովրդական տնտեսության մեջ կադրերի հոսունության կրճատման մասին» որոշման մեջ տրված է արտադրության զարգացման այդ կարևորագույն գործոնների համապետական նշանակության սպառիչ գնահատականը, առաջ են քաշված նոր պահանջներ՝ դրանք ըստ ամենայնի օգտագործելու ժողովրդական տնտեսության զարգացման արդի խնդիրների լուծման համար։ Նշված որոշումը, առաջին հերթին, ուղղված է կայուն աշխատանքային կոլեկտիվների ձևավորմանը, աշխատանքի պայմանների և կազմակերպման բարելավման միջոցով արտադրական հզորությունների ավելի արդյունավետ օգտագործմանը։

Վ. Ի. Լենինը նշել է, որ աշխատանքային կարգապահությունը սոցիալիզմի տնտեսական շինարարության մեխն է, պրոլետարիատի դիկտատուրայի մեր հասկացության հիմքը։ Կարգապահության հարցը սերտորեն կապված է աշխատաժամանակի կորուստների և, վերջին հաշվով, արտադրական աշխատանքի ընդհանուր արդյունքների հետ։ Հարկ է, սակայն, նշել, որ հանրապետության արդյունաբերության մեջ շուրջօրյա և ներհերթափոխային պարապուրդների, ադմինիստրացիայի թույլտվությամբ աշխատանքի չներկայանալու և գործալքումների հետևանքով աշխատաժամանակի կորուստները ոչ միայն չեն նվազում, այլև նկատելիորեն ավելանում են։ Աշխատաժամանակի կորուստները առանձնապես մեծ չափերի են հասնում թեթև, էլեկտրատեխնիկա-

կան ու սննդի արդյունաբերության ձեռնարկություններում։ Ինչպես երևում է, անելիքներն այստեղ քիչ չեն։

Արհմիությունների հանրապետական խորհուրդը և կոմիտեները կազմակերպում են արտադրական խորհրդակցությունների նորընտիր նախագահների և ակտիվի մշտական ուսուցում։ Հանրապետության բազային ձեռնարկություններում, ՀԱՄԽ-ի դասընթացներում պարբերաբար կազմակերպվում են սեմինարներ, որտեղ ուսանում է արտադրական խորհրդակցությունների անդամների ավելի քան 80 տոկոսը։ Նրանց աշխատանքի կազմակերպման հարցերը մտցվել են տնտեսագիտական կրթության, առաջավոր փորձի ու կոմունիստական աշխատանքի դպրոցների ծրագրերի մեջ։ Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների հետ միասին անցկացվում են նաև մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների նախագահների և կուսակցական, արհմիութենական ու տնտեսական կազմակերպությունների ղեկավարների համատեղ սեմինար-խորհրդակցություններ։ Վերջին երկու տարում այդպիսի սեմինար-խորհրդակցություններ են հրավիրվել հանրապետության մի քանի շրջաններում ու քաղաքներում։

Արտադրական խորհրդակցությունների գործերի վիճակի բարելավմանը նպաստեց նաև «Աշխատանքի արտադրողականության բարձրացման ռեզերվների ուսումնասիրմանը և օգտագործմանը Պոդոլսկի Օրջոնիկիձեի անվան մեքենաշինական գործարանի մշտապես գործող արտադրական խորհրդակցության մասնակցության մասին» ՀԱՄԿԽ-ի նախագահության 1980 թ. փետրվարի 29-ի որոշման կատարման նպատակով տարված աշխատանքը։ Այդ որոշումը քննարկվեց արհմիությունների հանրապետական կոմիտեներում, միավորումների, ձեռնարկությունների բանվորական ժողովներում, մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների նիստերում։ Մշակվել և իրագործվում են կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման նպատակով։

Ցավոք, աննորմեք չէ, որ արտադրական խորհրդակցությունները հանդես են գալիս իբրև արհմիութենական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների գործուն օգնականներ։ Հանրապետության մի շարք ձեռնարկություններում այդ խորհրդակցությունների պասիվությունը բացատրվում է, նախ և առաջ, նրանով, որ շատ արհմիութենական և տնտեսական աշխատողներ անտեղյակ են խորհրդակցությունների խնդիրներին, իրավունքներին և պարտականություններին։ Վերցնենք Լենինականի հղկող հաստոցների գործարանը, մի ձեռնարկություն, ուր երկար ժամանակ չեն կատարվում պետական առաջադրանքները։ Թվում է, այս կոլեկտիվում քիչ չեն չլուծված հարցերը, որոնք պետք է արժանանային արտադրական խորհրդակցության սեռուն ուշադրությանը։ Սակայն, բանից պարզվում է, խորհրդակցության աշխատանքը (դրա կազմում ընդգրկված է 38 մարդ և այդ թվում ոչ մի բանվոր) վերածվել է դիսպետչերական նիստերի և ամենևին չի համապատասխանում գործող կանոնադրության պահանջներին։ Նույնպիսի «արտադրական խորհրդակցություն» է ստեղծված նաև Լենինականի վերլուծական սարքերի փորձարարական գործարանում։

Հաճախ արհմիութենական կոմիտեները և տնտեսական ղեկավարները անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների որոշումների իրականացմանը։ Դրա հետևանքով ամեն տարի անկատար է մնում վերջիններիս կողմից արված առաջարկությունների 20 տոկոսը։ Դրանով իսկ նվազում են արտադրական խորհրդակցությունների հեղինակությունը և աշխատանքի արդյունավետությունը, թուլանում է աշխատանքային կոլեկտիվների ուշադրությունը այդ կարևոր օղակի հանդեպ։

Հանրապետության մի շարք ձեռնարկություններ և տնտեսություններ չեն կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի թողարկման, նրա ինքնարժեքի իջեցման 1980 թ. առաջադրանքները։ Այս բնագավառում եղած ռեզերվները լավագույն ձևով օգտագործելու համար անհրաժեշտ է ավելի հաճախ խորհրդակցել մարդկանց հետ, ապահովել տնտեսական գործունեության լայն հրապարակայնությունը, առաջարկությունների մշակմանն ընդգրկել, որքան հնարավոր է, շատ բանվորների, վճռականորեն բարելավել արտադրական խորհրդակցությունների դերը գիտատեխնիկական առաջընթացի ապահովման, արտադրության մեջ ձեռքի ծանր աշխատանքների կրճատման գործում։

Մեծ են հասարակական ներգրավման հնարավորություններն ու ռեզերվները։ Դրանց առավել լիակատար օգտագործման անհրաժեշտ պայմանը ժողովրդական տնտեսության կառավարման մակարդակի անշեղ բարձրացումն է և աճի կատարելագործումը։ Արտադրության կառավարումը անբաժանելի է սոցիալիստական մրցությունից։ Մրցությունն է՛լ ավելի է կենտրոնացնում աշխատավորների ջանքերը արդյունավետության և որակի խնդիրների լուծման, լավագույն վերջնական ժողովրդատնտեսական արդյունքների հասնելու վրա։ Այսօր դա սերտորեն կապված է հանդիպական պլանների հետ, որոնցում արտացոլվում են աշխատողների նախաձեռնությունն ու շահագրգռությունը երկրի տնտեսական պոտենցիալի ամրապնդման համար։

Կուսակցությունն առանձնապես բարձր է գնահատում այն հաջողությունները, որոնք հնարավորություն են ընձեռում գիտատեխնիկական նորագույն նվաճումների հիման վրա հասնել աշխատանքի ամենաբարձր արտադրողականության և արտադրության արդյունավետության։ Իսկ դա պահանջում է ապահովել ըստ պայմանագրերի մատակարարման շղթայի ամբողջականությունը և աշխատանքի համաչափությունը։ Այստեղից էլ առավել արժեքավոր է դառնում «Բանվորական էստաֆետ», «Փոխադարձ դժգոհություններից՝ փոխադարձ օգնություն» նշանաբաններով մրցության փորձի օգտագործումը, դրա ըստ ամենայնի տարածումը։

«Գործարանները և հանքերը, ղոմնաները և մեքենաները, սարքերը և նորագույն ավտոմատները, այն ամենը, ինչ մենք անվանում ենք արտադրական ֆոնդեր՝ դա ժողովրդի մեծ հարստությունն է,— նշել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— բայց այդ հարստությունը պետք է կարողանալ իսկապես արդյունավետ օգտագործել»։ Իսկ դա նշանակում է, որ մենք պետք է է՛լ ավելի կատարելագործենք արտադրության կառավարման ձևերն ու մեթոդները, որի գլխավոր ուղիներից մեկը շարունակում է մնալ աշխատավորական մասսաների նախաձեռնության և ստեղծագործության զարգացումը։ Այդ աշխատանքի հիմնական դրսևորումներից մեկը այսուհետ ևս պետք է մնա մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների գործունեությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի «ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» նախագծով խնդիր է դրվում՝ բարձրացնել աշխատավորական կոլեկտիվների դերը արտադրության կառավարման ու պլանավորման, կադրերի որակավորման, արտադրության մարդկանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման, կարգապահության ամրապնդման և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման գործում։ Այդ խնդիրը հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է ամեն կերպ բարելավել ու կատարելագործել արտադրական խորհրդակցությունների գործունեությունը։ Նախագծով ուղղակի պահանջվում է՝ «Բարձրացնել արտադրական խորհրդակցությունների և աշխատավորական կոլեկտիվների ընդհանուր ժողովների նշանակությունը»։

Հանրապետության արհմիութենական կազմակերպությունները, իրականացնելով կուսակցության կուրսը, շարունակում են կատարելագործել իրենց աշխատանքի ոճն ու մեթոդները, ուժեղացնում են արտադրական կոլեկտիվներին ցույց տրվող օգնությունն ու վերահսկողությունը պլանային առաջադրանքների և ստանձնած պարտավորությունների կատարման գործում, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ ամենօրյա աշխատանք են տանում ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել ձևով դիմավորելու, նոր՝ տասնմեկերորդ հնգամյակը տնտեսական և սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծման արգասավոր ժամանակաշրջան դարձնելու համար։

# ՀՈՒՍԱԴՐՈՂ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

**Շ. Բ. ԴԱՎԹՅԱՆ**
ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար

ՍԻՍԻԱՆՆ ԻՐ ՏԱՐԱԾՔՈՎ մեր հանրապետության ամենաընդարձակ շրջանն է: Կոլտնտեսությունների ու սովխոզների օգտագործմանն են հատկացված մոտ 25 հազար հեկտար վարելահող, 60 հազար հեկտար արոտավայր: Շրջանում կան նաև բավականաչափ ջրային ռեսուրսներ: Պատահական չէ, որ էկոնոմիկայի առաջատար ճյուղը գյուղատնտեսությունն է:

Գյուղատնտեսության զարգացման ասպարեզում որոշակի նվաճումներ են ձեռք բերվել հատկապես վերջին տասնամյակում: Արգասավոր էր մանավանդ տասներորդ հնգամյակը: Նախորդ հնգամյակի համեմատությամբ, մսի համախառն արտադրանքն աճել է 21, կաթինը՝ 22,4, ձվինը՝ 28,7, բրդինը՝ 11,1 տոկոսով: Ավելացել են կովերի կաթնատվությունը, հավերի ձվատվությունը, մթերակայան հանձնվող անասունների կենդանի քաշը: Վերջին երեք տարում շրջանի գյուղատնտեսության աշխատողները հինգ անգամ արժանացել են ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին:

Գյուղատնտեսության վերելքը շրջանում ապահովվել է մի շարք կարևոր միջոցառումների իրականացման շնորհիվ, որոնք բխել են ՍՄԿԿ XXV համագումարի և Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի առաջադրած պահանջներից: Խոսքը հատկապես վերաբերում է միջտնտեսային կոոպերացման միջոցով գյուղատնտեսական արտադրության մասնագիտացմանը, հողերի մելիորացմանն ու ոռոգելի հողատարածությունների ընդլայնմանը, անասնապահական օբյեկտների շինարարության ծավալմանը, ինչպես նաև աշխատանքի առաջավոր մեթոդների կիրառմանը:

Գյուղատնտեսության հետագա առաջընթացի համար վճռական նշանակություն ունի «Սիսիանի շրջանի տնտեսական և սոցիալական զարգացման լրացուցիչ միջոցառումների մասին» Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի՝ 1979 թ. դեկտեմբերին ընդունած որոշումը, որով սահմանվեցին շրջանի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունները: Նոր հնգամյակը Սիսիանի համար կդառնա գյուղատնտեսության շեշտակի վերելքի ժամանակաշրջան, այդ ընթացքում կլուծվեն մի շարք արմատական խնդիրներ:

Գյուղատնտեսության դինամիկ զարգացման համար վճռական նշանակություն ունի ոռոգման արդյունավետ կազմակերպումը: Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և համախառն բերքի ծավալի մեծացման նպատակով ամենից առաջ անհրաժեշտ է ընդարձակել ոռոգելի հողատարածությունները և ներդնել ջրման առաջավոր եղանակներ: Տասներորդ հնգամյակում ոռոգման տակ դրվեց ընդամենը 200 հեկտար, մինչդեռ եկող հնգամյակում կպահանջվի տարեկան շրջանառության մեջ դնել առնվազն 400—500 հեկտար: Ջրային ռեսուրսները բավականացնում են. Որոտանի կասկադի ջրամբարներից երկուսն արդեն պատրաստ են, և դրանց տարողությունը կազմում է 115 միլիոն խորանարդ մետր: Սպանդարյանի ջրամբարի գործարկմամբ 1982 թ. շրջանի ջրամբարներում տարեկան կկուտակվի ավելի քան 400 միլիոն խմ ջուր: Այնպես որ, տարեկան 400—500 հեկտար հողատարածություններ ոռոգելի դարձնելը նվազագույն ծրագիր պետք է համարել:



Շրջանի էկոնոմիկայի զարգացման հեռանկարների վերաբերյալ ուշագրավ շատ նկատառումներ հայտնվեցին կուսակցական կազմակերպությունների ժողովներում և ՀԿԿ շրջկոմի պլենումում, որտեղ քննարկվում էր առաջիկա հնգամյակում և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանում ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը:

Շրջսովետի գործկոմի գյուղվարչության կոմունիստները առաջարկեցին հնգամյակի յուրաքանչյուր տարում շրջանում շրջանառության մեջ դնել 1000 հեկտար ոռոգելի հողատարածություն: Նրանք գտնում են, որ չկա կերի բազայի ամրապնդման ավելի հուսալի միջոց, քան ոռոգման պրոբլեմի լուծումն է: Դրանով հնարավոր կլինի մեկի փոխարեն տարեկան կատարել ցանովի բազմամյա խոտաբույսերի երեք հունձ և կայունացնել կերի բազան:

Գյուղական կուսկազմակերպությունների և կոլեկտիվների ժողովներում մեծ հավանության արժանացավ նախագծի այն կետը, ըստ որի հնգամյակի տարիներին Հայաստանում պետք է շահագործման հանձնվի 30 հազար հեկտար ոռոգելի հողատարածություն: Դրանից ելնելով, նրանք նշում էին այդ ասպարեզում իրենց կոնկրետ խնդիրները:

Սիսիանում ջրման առաջավոր եղանակների լայն արմատավորումը կենսականորեն անհրաժեշտ է նաև այն իմաստով, որ աշխատուժի սակավության պատճառով հնարավոր չէ ռացիոնալ կերպով օգտագործել նախկինում կառուցված ոռոգման պարզունակ համակարգերը: Ուստի խնդիր է դրվում աստիճանաբար վերակառուցել դրանք՝ այսպես կոչված պայմանական ջրվող հեկտարները նույնպես աստիճանաբար կրճատելու համար:

Իսկ ի՞նչ են տալու շրջանին ոռոգվող հեկտարները. ինչպես այժմ, այնպես էլ հեռանկարում դրանք հիմնականում պետք է զբաղեցվեն կերային կուլտուրաներով: Եվ ահա թե ինչու. Սիսիանում կոշտ ու հյութալի կերի մոտ 60 տոկոսը հավաքվում է բնական կերահանդակներից: Եվ եթե հաշվի առնենք, որ շրջանում տեղումները տարեկան կազմում են 360 մմ. ապա պարզ կլինի, թե ինչու կերի կուտակումը ամբողջովին կախման մեջ է գտնվում բնակլիմայական պայմաններից: Միաժամանակ հնարավորություն չի ստեղծվում կառուցվածքային փոփոխություններ մտցնել կերի հաշվեկշռում, որովհետև բնական խոտհարքներից ստացվող կերը բացառապես միանշանակ է: Որքան էլ տարօրինակ թվա, հանրապետության շրջանների համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների ամենաշատ գլխաքանակն ունենալու պայմաններում Սիսիանում տարեկան ցանվում է ընդամենը 100—120 հեկտար կերի արմատապտուղ, իսկ եգիպտացորենի, արևածաղկի և սիլոսային այլ կուլտուրաների զանգվածային ներդրումը հնարավոր չէ՝ դարձյալ ոռոգելի հողերի սակավության պատճառով:

Վերջերս կուսակցության շրջանային կոմիտեն և հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը որոշեցին Սիսիանում ստեղծել կերի արտադրության գիտափորձնական կայան: Այդ կազմակերպության առջև խնդիր է դրվել փորձարկել կերային, առաջին հերթին, սիլոսային կուլտուրաների այնպիսի սորտեր, որոնք ավելի լավ համապատասխանեն շրջանի բնակլիմայական պայմաններին: Կայանը կտա ընդհանրապես արտադրվող կերի որակի բարձրացման գիտական հանձնարարականներ, կզբաղվի համակցված կերի, խոտալյուրի, վիտամինային պատրաստուկների և կերի խթանիչների արտադրությամբ: Այլ խոսքով, այն պետք է կոորդինացնի շրջանում կերի արտադրության քանակական և որակական խնդիրները՝ հենվելով տարեցտարի շրջանառության մեջ դրվող նոր ոռոգելի հողերի պոտենցիալի վրա: Ի վերջո արդյունքը այն կլինի, որ շրջանում կերի արտադրությունը (վերածած կերամիավորների) առնվազն կկրկնապատկվի, որն ուղղակիորեն կնպաստի անասնապահական մթերքների և, առաջին հերթին, կաթի արտադրության ավելացմանը:

Շրջանի գյուղատնտեսության դեմքը կարող է էապես փոխվել, եթե ար-

դյունավետ օգտագործվեն եղած 60 հազար հեկտար ամառային արոտավայրերը: Ծովի մակերևույթից 2500—3200 մետր բարձրության վրա գտնվող այդ արոտավայրերի օգտագործումը դժվարանում է նաև նրանով, որ դրանց միջին հեռավորությունը մշտական բնակավայրերից 40—50 կիլոմետր է: Չկան ճանապարհներ, էլեկտրականություն, ինչպես նաև սարվորների աշխատանքի ու հանգստի համար անհրաժեշտ պայմաններ:

Ահա թե ինչու այժմ մենք ամենայն սրությամբ դնում ենք արոտավայրերը գիտականորեն յուրացնելու խնդիրը: Նախատեսվում է նոր հնգամյակում բարձրադիր լեռնալանջերին, ըստ առանձին ենթաշրջանների, ստեղծել անասնապահական ճամբարներ: Դա հնարավորություն կընձեռի բարելավելու արոտավայրերի օգտագործումը և անասունների ամառային պահվածքը: Ճամբարներում լավագույն պայմաններ կստեղծվեն սարվորների աշխատանքի ու հանգստի համար: Մնում է, որ նախագծային կազմակերպությունները ինչպես հարկն է ձեռնամուխ լինեն ճամբարների նախագծերը կազմելուն, իսկ պլանավորող մարմինները և գյուղատնտեսության մինիստրությունը ժամանակին լուծեն արոտավայրերի յուրացման հետ առնչվող ֆինանսական և կազմակերպական բնույթի հարցերը:

Հողին և ջրին վերաբերող խնդիրները մենք կարող ենք հաջողությամբ լուծել, եթե վերոհիշյալ միջոցառումներին զուգընթաց մեծացվի մեքենամելիորատիվ աշխատանքների ծավալը: Շրջանում բարելավման ենթակա է մոտ հինգ հազար հեկտար հողատարածություն, մինչդեռ տարեկան շրջանառության մեջ է դրվում 200—250 հեկտար: Այդ նպատակի համար մինչև հիմա տարեկան հատկացվում է մոտ մեկ միլիոն ռուբլի: Ստացված արդյունքն ապացուցում է այդ գումարների ավելացման անհրաժեշտությունը:

Սիսիանում գյուղատնտեսության զարգացումը մեծապես պայմանավորված է կապիտալ շինարարության ծավալմամբ: Մեր պայմաններում գյուղական շինարարությունը երկու պլանով է իրականացվում. արտադրական օբյեկտների և նոր գյուղերի՝ կապված Որոտանի կասկադի ջրամբարների հետ: Այժմ շրջանում համարյա չկա մի այնպիսի տնտեսություն, որտեղ չկառուցվեն անասնապահական համալիրներ և արտադրական այլ օբյեկտներ: Դա հնարավորություն կընձեռի ավարտելու արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման նպատակով կուսշրջկոմի մշակած ծրագիրը, ինչպես նաև լրջորեն բարձրացնելու արտադրության վարման կուլտուրան, բարելավելու անասնապահական մթերքների քանակական և հատկապես որակական ցուցանիշները: Տասներորդ հնգամյակում, շինարարության տեմպերի արագացման շնորհիվ, գործարկվեցին Սիսիանի թռչնաբուծական սովխոզը, Բալաքի տոհմային մատղաշի աճեցման միջտնտեսային ձեռնարկությունը, Շաքիի խոզաբուծական համալիրը: Համակենտրոնացված և մասնագիտացված համալիրների կառուցման հաջորդ փուլում կստեղծվեն Բորիսովկայի կաթնահամալիրը, Աշոտավանի մսացու մատղաշի միջտնտեսային ձեռնարկությունը, խոտանված կովերի Հացավանի սելեկցիոն-բտման կայանը և այլն:

Ինչ վերաբերում է նոր ավանների շինարարությանը, ապա այն ավելի բարդ ու դժվարին խնդիր է, մանավանդ որ կառուցվող չորս ավաններին այս տարի կգումարվի ևս մեկը՝ Նորավանը: Իսկ որո՞նք են այդ դժվարությունները: Նախ՝ նոր գյուղերի շինարարությանն առնչվող թերությունները, պլանավորման սխալներն ու այլ կարգի վրիպումները: Այսպես, Գոռհայք և Բուրաստան նոր գյուղերի շինարարությունն սկսվել է դեռևս 1970 թվականին՝ բնակելի շենքերի կառուցումով: Այժմ, մեկ տասնամյակ անց, երբ դրանք արդեն պատրաստ են, նոր միայն պլանավորվում է կառուցել անասնապահական շենքեր, կուլտուր-լուսավորական օջախներ, առևտրի, կենցաղային ծառայության օբյեկտներ և այլն: Իսկ տասը տարի առաջ կառուցված, բայց չբնակեցված տներն արդեն ենթակա են հիմնական նորոգման: Մինչդեռ նպատակահարմար կլիներ սկսել նախ մարդկանց համար անհրաժեշտ կոմունալ ու կենցաղային օբյեկտների շինարարությունը, լուծել նրանց աշխատատեղի խնդիրները և ապա այդ ամենին զուգընթաց կառուցել բնակելի տները:



Սակայն դժվարությունները այսքանով չեն սահմանափակվում: Նախագծողների մեղքով նոր գյուղերում կառուցվում են այսպես կոչված տիպային առանձնատներ, որոնք թե՛ արտաքին տեսքով և թե՛ ներքին հարմարություններով չեն համապատասխանում գյուղում ապրող մարդկանց պահանջներին: Պատահական չէ, որ արդեն բնակեցված Աշոտավան և Տոլորս ավանների անխտիր բոլոր բնակիչները վերակառուցել են տները՝ խախտելով, իհարկե, բնակավայրերի ճարտարապետական տեսքը:

Կա նաև հոգեբանական գործոն: Թվում է, թե, նորակառույց շենքերը տեսնելով, բնակիչները հաճույքով կտոնեն իրենց բնակարանամուտը: Մինչդեռ այդպես չէ: Հարյուրամյակներով ստեղծված ներգյուղական կապերը հեշտությամբ չեն փլուզվում, ավանդույթները չեն վերանում, մարդիկ դժվարությամբ են թողնում թեկուզ և խարխլված պապենական տունը, խնձորենու այգին կամ գյուղամիջի հրապարակը:

Կուսշրջկոմը, շրջանային մյուս մարմինները ստեղծված վիճակից դուրս գալու համար մշակել են միջոցառումների ծրագիր, ըստ որի նոր գյուղերի բնակեցումը առաջիկա հնգամյակի տարիներին հիմնականում կավարտվի: Այդ ծրագիրը բխում է նաև շրջանի բարձրադիր գոտու սոցիալ-տնտեսական զարգացման շահերից:

Ինչպես արտադրական օբյեկտների շինարարության, այնպես էլ գյուղերի կառուցման ու վերակառուցման հարցերը, բնականաբար, հանգամանորեն արծարծվեցին հիմնական ուղղությունների նախագծի քննարկմանը նվիրված ժողովներում: Հատկանշական է, որ գյուղական բոլոր կուսկազմակերպություններում շրջանի գյուղատնտեսության զարգացման հեռանկարը տեսնում են նրա ինտենսիվացման մեջ: Կոմունիստները, ինչպես և մյուս աշխատավորները գտնում են, որ պետք է շարունակել արտադրական օբյեկտների շինարարության վերցրած թափը, որովհետև անասնապահության զարգացումը պայմանավորված է կաթնային համալիրների առկայությամբ: Շրջանի 24 տնտեսություններից 18-ում արդեն ավարտվել կամ ընթացքի մեջ է կաթնային համալիրների կառուցումը: Տասնմեկերորդ հնգամյակում նման համալիրներ կստեղծվեն նաև մյուս տնտեսություններում: Նոր համալիրների կառուցման խնդիրը մտցվել է շրջանի տնտեսական և սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների մեջ:

Գյուղական շինարարության մինիստրության № 6 տրեստի կոլեկտիվի ժողովի մասնակիցները, հավանություն տալով հիմնական ուղղությունների նախագծի այն պահանջին, ըստ որի բնակարանային շինարարությունը լայն թափ է ստանալու նաև գյուղական վայրերում, միաժամանակ գտնում են, որ այսօրվա տիպային նախագծերն իրենց արտաքին ճարտարապետական տեսքով ետ են մնում ժամանակի պահանջներից: Նրանք առաջարկում են մշակել գյուղական վայրերում կառուցվող տների այնպիսի նախագծեր, որոնք ունենան արտաքին ճարտարապետական հաճելի տեսք և բնակության համար անթերի հարմարություններ:

Սիսիանի շրջանում կան արդյունաբերության զարգացման լայն հեռանկարներ: Ցավոք, երկար ժամանակ այն սխալ կարծիքն է իշխել, թե արդյունաբերությունը կարող է խոչընդոտել գյուղատնտեսության զարգացմանը: Մինչդեռ կատարվեց ճիշտ հակառակը: Աշխատանքային ռեսուրսների համար տեղում համապատասխան արդյունաբերական օբյեկտներ չստեղծելը հանգեցրեց շրջանից բնակչության ուժեղ արտահոսքի, հատկապես բնակչության աճի տենդենց ունեցող գյուղերից: Ստացվել է այնպես, որ 1966—1979 թվականներին շրջանի բնակչությունը ո՛չ միայն չի աճել, այլ ինչ-որ չափով նվազել է: Վերջին տարիներին լուրջ քայլեր արվեցին բնակչության արտահոսքը արդյունաբերական ձեռնարկություններ ստեղծելու միջոցով կանխելու համար: Տասներորդ հնգամյակում գործել սկսեցին Դաստակերտի բժշկական տեխնիկայի նորոգման գործարանը՝ Տոլորսի և Սիսիանի մասնաճյուղերով, շինանյութերի և շինարարական իրերի Սիսիանի կոմբինատը, Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկայի մասնաճյուղը և այլն, զգալիորեն ընդլայնվեցին գործող ձեռնարկությունները:

Սակայն իրականացված միջոցառումները դեռևս հնարավորություն չեն ընձեռել՝ լիովին լուծելու աշխատուժի զբաղվածության պրոբլեմը: Շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարում այսուհետև նույնպես մեծ տեղ կտրվի արդյունաբերական նոր ձեռնարկությունների ստեղծմանը, ընդ որում դրանց շինարարության պլանները կներառեն նաև կուլտուր-կենցաղային և բնակելի շենքերի կառուցման հարցերը: Նախատեսվում է 1981—83 թվականներին սկսել խոշոր գորգագործական կոմբինատի և Դաստակերտի գլխավորող գործարանի շինարարությունը: Հաշվի առնելով հումքի տեղական ռեսուրսները, աշխատանքներ են տարվում սկսելու շինանյութերի և շինարարական իրերի Սիսիանի նոր կոմբինատի կառուցումը, որի համար հումք կծառայեն տեղական բազալտը, գրանիտը, պեռլիտները և այլն:

Շրջանում կան նաև դիատոմիտների և հանքային ջրերի հսկայական պաշարներ: Հանքային ջրերի արտադրության վերաբերյալ արդեն կան վերադաս մարմինների կոնկրետ առաջադրանքները: Ինչ վերաբերում է դիատոմիտների արդյունաբերական արտադրության կազմակերպմանը, ապա այդ խնդիրը չի լուծված և, թվում է, հանրապետության տեղական արդյունաբերության մինիստրությունը չի էլ շտապում լուծել: Մինչդեռ մեզ համար կենսական կարևորության խնդիր է: Դրանով ոչ միայն Սիսիանում կզարգանար արդյունաբերության մի նոր ճյուղ, այլև շրջանի բարձրադիր գոտում կստեղծվեր արտադրաուժերի զարգացման լայն հնարավորություն: Այս հարցը նույնպես արծարծվեց նախագծի քննարկմանը նվիրված ժողովներում: Կոմունիստներն առաջարկում են շրջանում արդյունաբերական արտադրանքի աճը նախատեսել 40—50 տոկոսի սահմաններում: Իսկ դա հիմնավորում են ոչ միայն արդյունաբերական արտադրանքի ավելացման, այլև շրջանում բնակչության զբաղվածության պրոբլեմի լուծման անհրաժեշտությամբ: Ընդ որում, առաջարկում են լուրջ ուշադրություն նվիրել հատկապես շինանյութերի և հանքային ջրերի ռացիոնալ օգտագործմանը: Հիմնական ուղղությունների նախագծում նշվում է, որ պետք է ընդլայնել հանքային ջրերի լցարկման կարողությունները: Ժողովականները գտնում են, որ այդ խնդրի լուծման գործում մեծ ներդրում կարող է ունենալ նաև Սիսիանը, որի ընդերքում եղած հանքային ջրերն իրենց բաղադրությամբ չեն զիջում հանրապետությունում թողարկվող հանքային ջրերին: Նոր հնգամյակի սկզբներին աշխատանքներ կտարվեն այդ ջրերն օգտագործելու նպատակով:

Կուսշրջկոմը արմատական միջոցառումներ է մշակել ենթաշրջաններում, հատկապես խոշոր գյուղերում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր հիմնելու համար: Այդպիսիք արդեն գործում են Դաստակերտում, Տոլորսում, Շամբում: Այս տարի նման արտադրամասեր կստեղծվեն նաև Գոռհայք ավանում, իսկ հեռանկարում՝ Աշոտավան, Դարբաս, Բռնակոթ և Անգեղակոթ գյուղերում: Ընդ որում, այդ մասնաճյուղերը արտադրանք կթողարկեն հիմնականում ձմռան ամիսներին, իսկ ամռանը նրանց կոլեկտիվները կզբաղվեն գյուղատնտեսությամբ:

Շրջանի տնտեսական ու սոցիալական զարգացման ծրագրի իրականացման շահերը պահանջում են լուծել մի այլ կարևոր խնդիր ևս: Խոսքը վերաբերում է մայրաքաղաքի և հանրապետության մյուս շրջանների հետ կապի միջոցներին: Որքան էլ տարօրինակ է, ճանապարհաշինության վերաբերյալ Սիսիանը երբեք որոշակի ծրագիր չի ունեցել և այսօր էլ, ըստ էության, չունի: Գորիս—Երևան մայրուղին, որ անցնում է Սիսիանով, արդեն տասներորդ տարին է՝ կառուցվում է, բայց չի ավարտվում: 290 կիլոմետր միջգյուղային ճանապարհներից այսօրվա պահանջներին համապատասխանում է միայն վեց կիլոմետրը: Ամբողջովին շարքից դուրս է եկել Անգեղակոթ—Նախիջևան միութենական նշանակության ճանապարհը: Հաշվի առնելով շրջանի հեռավորությունը և բացառապես ավտոմոբիլային տրանսպորտին ապավինելու հանգամանքը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների խորհրդի վերը նշված որոշմամբ հանձնարարություններ են տրվել ինչպես ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման, այնպես էլ ավտոմոբիլա-



յին տրանսպորտի մինիստրություններին՝ միջոցառումներ մշակելու իրենց իրավասությանը ենթակա հարցերը Սիսիանում լուծելու համար: Կարծում ենք, որ նոր հնգամյակը այդ իմաստով բեկումնային կլինի:

Հանրապետության պետպլանին պետք է զբաղեցնի նաև Սիսիանի օդանավակայանի կառուցման խնդիրը: Դեռևս 1937 թ. կառուցված թռիչքային դաշտը այժմ գտնվում է Սիսիան քաղաքի ուղիղ կենտրոնում, իսկ դա, հասկանալի է, դժվարացնում է թռիչքների անվտանգ կազմակերպումը:

Շրջանի զարգացման տնտեսական և սոցիալական ծրագրերը կարող են հաջողությամբ կենսագործվել, եթե կուսկազմակերպությունները բոլոր օղակներում ապահովեն բարձր կազմակերպվածություն և ամուր կարգապահություն, մարդկանց համակեն գործի կարևորության նկատմամբ գիտակցական վերաբերմունքով: Կուսշրջկոմը կազմակերպությունների ուշադրությունը բևեռում է այդ հարցերի վրա:

Շատ կարևոր է, որպեսզի հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները և կուսկազմակերպություններն իրենց գործունեության մեջ զգալի տեղ հատկացնեն նաև սոցիալ-կուլտուրական հարցերին:

Վերջին ժամանակներս հատկապես լայն ճակատով աշխատանքներ են տարվում Սիսիան քաղաքի և շրջանի գյուղերի բարեկարգման ու կանաչապատման նպատակով: Չկա մի այնպիսի հիմնարկ-ձեռնարկություն և կազմակերպություն, որ այդ կապակցությամբ չունենա կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի կողմից հաստատված որոշակի ծրագիր: Ցուցաբերված հետևողականության շնորհիվ 1979—80 թվականներին միայն քաղաքի բարեկարգման աշխատանքների ծավալները, նախորդ տարիների համեմատությամբ, ավելի քան տասնապատկվել են: Ըստ առանձին գյուղերի՝ նոր հնգամյակի համար մշակվում են սոցիալական զարգացման ծրագրեր, որոնցում կարևոր տեղ է տրվում բնակավայրերի բարեկարգմանը, մի խնդիր, որը տարիներ շարունակ տեսադաշտից դուրս է մնացել:

Ունենալով պոտենցիալ մեծ հնարավորություններ, զարգացման լայն հեռանկարներ՝ Սիսիանն իրավունք ունի ակնկալելու հանրապետության մինիստրությունների և գերատեսչությունների ավելի մեծ ուշադրությունը: Արտադրաուժերի բուռն զարգացման պայմաններում միայն հնարավոր կլինի լուծել շրջանի բնական հարստությունները յուրացնելու խնդիրները:

Անտարակույս, ՍՄԿԿ XXVI համագումարը գյուղական կուսակցական կազմակերպություններին կզինի գյուղատնտեսության հետագա վերելքի մարտական ծրագրով: Շրջանի կուսկազմակերպությունները դեպի համագումար են ընթանում գյուղատնտեսական արտադրության բնագավառում նոր բնագծեր նվաճելու վճռականությամբ: Նրանք ՍՄԿԿ Կենտկոմի «ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» նախագիծը դիտում են որպես աշխատավորների բարեկեցության հանդեպ կոմունիստական կուսակցության ջերմ հոգատարության իսկական դրսևորում: Ահա թե ինչու հիմնական ուղղությունների նախագիծը շարունակվում է մնալ աշխատավորների հետաքրքրության և ուսումնասիրության առարկան: Ավելի քան 340 ագիտատորներ նրանց ծանոթացնում են նախագծի դրույթներին, պարզաբանում այդ փաստաթղթի հույժ կարևորությունը մեր երկրի հետագա զարգացման գործում: Կուսշրջկոմը հրավիրել է ագիտատորների շերտավորված փնջային խորհրդակցություններ, որոշել նրանց անելիքները նախագծի պրոպագանդման գործում: Նախագծում պարունակված խնդիրներն ու պրոբլեմները խորությամբ ուսումնասիրվում են նաև կուսակցական ու կոմերիտական քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության սիստեմում: Այդ կարևոր փաստաթղթի ուսումնասիրությունն ու քննարկումները նկատելիորեն բարձրացրել են աշխատավորական կոլեկտիվների, կոմերիտական ու կուսակցական կազմակերպությունների ակտիվությունը: Կուսակցության նոր կանխագծումները աշխատանքային սխրանքների են մղում բանվորներին, կոլտնտեսականներին, շրջանի բոլոր աշխատավորներին, որոնք արժանավայել գործերով են դիմավորում ՍՄԿԿ XXVI համագումարը:

# ՈՉ ԹԵ ՈՒՏՈՊԻԱ, ԱՅԼ ԻՐԱԿԱՆ ՓՈՐՁ

ՄԱՐԻԵՏԱ ՇԱՀԻՆՅԱՆ

### ԳԼՈՒԽ I

Այս թեմային, խոստովանում եմ, ինձ մղեց ռեալ և տեսական սոցիալիզմի մասին «Коммунист» ամսագրի հոդվածը (1979, № 11, էջ 11—24): Իրականում եղածի և տեսության մեջ դրա նախակերպարի փոխհարաբերության պարզաբանումը հույժ կարևոր խնդիր է ո՛չ միայն փիլիսոփայի համար: Դա մի խնդիր է ամենից առաջ մարդկային հասարակության պրակտիկայի համար, մարդկանց գործողությունների նպատակամղվածության համար: Բայց ես ցանկանում եմ դրա լուծմանը մոտենալ այն ուսումնասիրության տեսանկյունից, որին, որքան ինձ հայտնի է, դեռևս ոչ ոք և երբեք չի դիմել՝ ուտոպիայի նկատմամբ Վ. Ի. Լենինի ունեցած վերաբերմունքի առումով: «Ուտոպիա» բառը, որն այժմ այնքան հաճախ է օգտագործվում, համեմատաբար վերջերս է առաջացել: Այն մարդկային բառարան է մուծվել Թոմաս Մորի ժամանակներից ի վեր, որն «Ուտոպիա» անվանեց իր աշխատությունը՝ մարդկանց իդեալական ընկերակցության մասին, որտեղ բոլորն իրենց իրավունքներով և պահանջմունքներով միատեսակ են, արդարացի, հավասար, ազատ,— կարճ ասած, որտեղ իդեալական է ապրում հասարակությունը՝ իր մեջ մարմնավորելով վսեմ գաղափարը: Այդ պետությունը Թոմաս Մորն անվանեց Ուտոպիա[1], որը նշանակում է աշխարհում գոյություն չունեցող վայր: Դրանով նա կարծես թե անիրագործելիության սահմանագիծ անցկացրեց եղածի և անհրաժեշտի, իրականի և... միայն գաղափարում գոյություն ունեցողի միջև:

Բայց նրա «ուտոպիզմը», որն այդպես էլ շրջանառության մեջ մտավ որպես աշխարհում անիրագործելի, անհնարին մի բան, «երջանիկների քաղաքի» մասին ամենևին էլ ո՛չ առաջին, ո՛չ էլ վերջին խոսքն էր, թեպետ «ուտոպիա» արտահայտությունը Մորի ժամանակվանից տարածվեց և՛ նախորդ պատումների (վաղ անցյալում դրանց թիվը քիչ չէր), և՛ ֆրանսիացիների հետագա՝ ուտոպիա անունը կրող աշխատությունների վրա. այս արդեն մեր ժամանակների շեմին էր: Անհնար է մոռանալ, հիշողությունից ջնջել, որ մարքսիզմը, ըստ Լենինի, ծագել է գերմանական կլասիկ փիլիսոփայության (Հեգել, Ֆոյերբախ), անգլիական քաղաքատնտեսության (Ադամ Սմիտ և Դավիդ Ռիկարդո) և ֆրանսիական սոցիալիստ-ուտոպիստների (Սեն-Սիմոն, Ֆուրյե) հիման վրա:

Եվ այսպես, հնագույն «ուտոպիաները» ո՛չ միայն մարդկության երազանքն էին այնպիսի հասարակական կառուցվածքի մասին, որի օրոք հասարակության բոլոր անդամները հավասար իրավունքներ ունեն, հոգում են ընդհանուր աշխատանքի և ընդհանուր բարիքի, և ոչ թե սոսկ անձնական բարեկեցության մասին, «իմ» ու «քո» չգիտեն, այլ՝ միայն «մեր». դրանք ո՛չ միայն այդ պատկերում էին իդեալում, տեսության մեջ, այլև դրանք բոլորը, այդ բոլոր պատումները, արևելյան ժողովուրդների, հույների, պատմաբանների մոտ (օրինակ՝ Դիոդորոս Սիցիլիացու մոտ, որը մեզ է հաղորդում Էվհեմերոսի պատմածը). համոզմունք էին և սկսվում էին իրական վայրի մատնանշումով, որն իրոք կար, գոյություն ուներ երկրագնդի որոշակի կետում (մեծ մասամբ՝ կղզու վրա): Հատկապես նման շատ զրույցներ կան Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքների, այսպես կոչված՝ նկարագրություններում, որոնք երևան են եկել մոտ երկու հազարամյակ առաջ: «Ալեքսանդրիա» անունը կրող պոեմներ շատ կան և դրանց մեծ մասը պատմում է այն մասին, թե ինչպես Ալեքսանդրն իր զորքով հասել է մի զարմանալի քաղաք:

Ստորև բերում եմ բառերն այն ձեռագրի, այսինքն՝ տողացի թարգմանության, որ կատարել է պրոֆեսոր Ա. Կ. Արենդսը՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Ե. Է. Բերտելսի խմբագրությամբ[1]:

Եվ ահա

*Մեր դեմ քաղաքը շքեղաշուք էր,*
*Կայք ու գանձով լի՝ դրախտի պես էր:*
*Երբ նա մոտեցավ ամուր դարպասին—*
*Զտեսավ երկաթե դռներ, ամրասյուն,*
*Տեսավ քաղաքում շքեղ կուղպակներ,*
*Որոնք ո՛չ կողպեք, ո՛չ դրգոց ունեն:*

Քաղաքի բնակիչները նրան առաջնորդում են դեպի մի հիանալի պալատ, հյուրասիրում են և պատասխանում հարցուփորձին: Ինչո՞ւ, հարցնում է նրանց Իսկանդերը, ձեզ մոտ

*Պարտեզներ ունեք, բայց մարդիկ չկան,*
*Դռների վրա ոչ փակ ու փակա՞նք,*
*Եվ հոտը չունի հովիվ-պահապա՞ն,*
*Հարյուր հազարին՝ և ո՞չ մի չոբան:*

Քաղաքի բնակիչներն Իսկանդերին ասում են, որ իրենք ինքնին ուժեղ չեն, այլ ուժեղ են հավատով (այստեղ Նիզամին տուրք է տվել բարեպաշտների մասին պարականոն (ապոկրիֆային) լեգենդին): Սակայն քիչ անց պարզվում է, որ նրանց ուժն ամենևին էլ «հավատի» մեջ չէ, այլ նոր հասարակական էթիկայի մեջ.

*Մենք չենք հեռանա ուղիղ ճշմարտի,*
*Չենք երգի անգամ մի կեղծ մեղեդի:*
*Հավատարմության մեր լույսի հանդեպ*
*Փակ են քսության դռները անդեմ...*
*Չենք ստախոսում մենք ոչ մի բանում,*
*Պիղծ բան չենք տեսնում, անգամ երազում:*
*Չենք չարախոսում մեր կյանքում ոչինչ,*
*Տկարի օգտին կանենք ամեն ինչ...*
*Զախորդ օրերը տանում ենք մեկտեղ,*
*Կորուստ կրողը մենակ չի մնում,*
*Մենք մեր գրպանից բաժին ենք հանում,*
*Եվ նա օգնությամբ ոտքի է ելնում:*
*Մեկս մյուսից չունի ավել բան,*
**Մեր ինչքը բոլոր կիսել ենք արդար,**
**Եվ հավասար ենք համարում իրար:**
*Ոչ ոքի լացը մենք չենք ծանակում,*
*Ավազակներից նույնպես չենք վախում,*
*Մեզնից ոչ մի բան նրանք չեն տանում,*
*Տանուտեր չունենք մենք մեր քաղաքում,*
*Ոչ էլ պահապան որևէ գյուղում:*
*Ոչ ոքից ոչինչ մենք չենք թալանում,*
*Ոչ էլ ուրիշն է մեր ինչքը խլում:*
*Ո՛չ կողպեք ունենք, ո՛չ փականք ամուր,*
*Նախիր ու հոտեր մենք չենք պահակում:*
*Եվ չենք սովորել բամբասել մարդկանց,*
*Արատավորին չենք նայում կողքանց...*
*Թե մեկին գործ է պատահում ինչ-որ,*
*Նրա օգտին ենք բանում ամեն օր:*
*Վատ ճանապարհի չենք մղում մարդուն,*
*Ո՛չ խռովություն, ո՛չ արյուն թափում:*
*Մենք վշտանում ենք խղճալով իրար,*
*Ուրախությունը կիսում հավասար:*
**Ոսկով, արծաթով մենք չենք շլանում,**
**Դրանք մեզ պետք չեն և ոչ մի բանում:**
*(Ընդգծումներն իմն են:— Մ. Շ.)*

Մարդիկ այդ քաղաքում երբեք չեն դիմում բռնության, որովհետև նրանք ավելցուկի կարիք չունեն.

*Գարու հատիկ իսկ սրով չենք խլում,*
*Գիշատիչները մեզնից չեն փախչում,*
*Մեր ողջ որսածից օգտվում ենք այնքան,*
*Որքանով պետք է մարդիկ հագենան:*
*Թե ուրիշների կարիքը չունենք՝*
*Հանդում ու դաշտում դրանք պիտ թողնենք:*

Ուտելում նրանք չափավոր են.

*Մենք ճաշակում ենք տարքն ու սառն այնքան,*
*Որքան կուտեինք ես ճիշտ այդքան:*
*Մեզանից ոչ ոք չի մեռնում ջահել,*
*Բացի ծերերից, որ շատ են ապրել:*

Մահը նրանք ընդունում են անվախ կերպով: Նրանք երկերեսանի չեն: Նրանց միջավայրում միայն նա է, որ համակարծիք է նրանց համոզմունքներին.

*Մեկի մեռնելուց մենք չենք վշտանում,*
*Չէ՛ որ այդ ցավին դարման չի լինում:*
*Մարդու երեսին չենք ասում ոչինչ,*
*Որ կպատճառի նրան անհուն վիշտ:*
*Մեզ հետ մնում են այն մարդիկ միայն,*
*Ովքեր ժուժկալ են, շիտակ մեզ նման:*
*Ով դավաճանի մեր կյանքի ճամփին,*
*Այլ տեղ պիտ փնտրի իր կյանքի ուղին:*

Թեպետև խոսքը մի քաղաքի մասին է, որտեղ խանութներ կան և, նշանակում է՝ շուկա, բնակիչները զբաղվում են, ըստ երևույթին, գլխավորապես անասնապահությամբ և երկրագործությամբ: Նրանց վարելահողն ընդհանուր է, դրա շուրջը պահակներ չկան, այնտեղ բոլորը միասին են աշխատում.

*Սերմը ցանում ենք ճիշտ ժամանակին,*
*Ու մշակում ենք մենք այն խմբովին:*

---

[1] *Հունարեն «տոպո՛ս»—տեղ, վայր, «ու»— ժխտական մասնիկ:* Ռուս. խմբ.:

[1] *Նիզամի Գյանջևի, Իսկանդեր-Նամե, Երկրորդ մաս «Իկբալ-Նամե» («Գիրք երջանկության»): Ստորև իմ կատարած մեջբերումները վերցված են այդ տողացի թարգմանությունից (հայերեն չափածո թարգմանությունը կատարել է Ս. Ումառյանը— «Լ. Ու.» խմբ.): Իմ ծանոթագրությունների հետ միասին դրանք տպագրվել են որպես իմ «Ուրվագծեր Նիզամու մասին» գրքի մի գլուխ* «Известия Академии наук СССР» *հանդեսում* (Отделение литературы и языка, т. VI, вып. 4, июль-август, М., 1947):

քերը, որոնք ցույց տվին կազմակերպված պրոլետարիատի իսկական վերաբերմունքը պատերազմ մղող կառավարող դասակարգերի նկատմամբ» (էջ 181):

Փարիզի Կոմունայի վերաբերյալ այս վաղ շրջանի ցիտատից երևում է, որ Լենինը, դեռևս միանգամայն երիտասարդ հասակում (գրվել է 1894 թվականին), արդեն ձևակերպել է տարբերությունն այն քաղաքական կազմակերպությունների, որոնք հետագայում ստացան մենշևիզմ և բոլշևիզմ անվանումները: Եվ այդ ժամանակ էլ նա ցույց տվեց Փարիզի Կոմունայի բուն էությունը, Երկրի վրա դրա սկզբունքների իրագործելիության վերաբերյալ իր պարզ ու հստակ համոզմունքը:

1902 թվականին Լենինը գրում է իր խորիմաստ Ի՞նչ անել աշխատությունը: Եվ դրանում արդեն ավելի ճիշտ և ավելի որոշակի է խոսում Փարիզի Կոմունայի մասին՝ որպես նոր հասարակարգի ստեղծման իրական փորձի և օրինակի մասին, հասարակարգ, որը գոյատևեց երկու ամսից ավելի. «Որտե՞ղ կլինեինք մենք այժմ առանց անգլիական տրեդ-յունիոնների և բանվորների ֆրանսիական քաղաքական պայքարի օրինակի, առանց այն վիթխարի զարկին, որ տվեց մանավանդ Փարիզի Կոմունան» (հ. 6, էջ 33):

Եթե ապագա հեղափոխությունների համար, ըստ Լենինի, անգլիական բանվոր տրեդ-յունիոնները և ֆրանսիական բանվորների հեղափոխական գործունեությունը սոսկ նմուշ են ծառայում, պրոլետարիատի կազմակերպության ու պայքարի ուսանելի օրինակներ ստեղծում, ապա Փարիզի Կոմունան դուրս է գալիս դրանց շարքից: Այն արդեն պայքարում ապագա հաղթանակի, պրակտիկայում տեսության իրականացման վիթխարի (ի՜նչ մակդիր) զարկ է (ի՜նչ տերմին): Փարիզի Կոմունայում ո՛չ միայն պրոլետարիատի դասակարգային պայքարի ստրատեգիայի առանձնահատկությունները, այլև նոր հասարակարգի կառուցվածքի ու կազմակերպման կոնկրետ ձևերը Լենինի համար իրական փորձ էին, որոնք կիրառվեցին 1905 թվականի ռուսական հեղափոխության առաջին ամիսներին... Արդեն դրա նախօրեին, 1903 թվականին, «Կուսակցության ծրագրի հարցի առթիվ ճառում» (հ. 7, էջ 338—339) կա երրորդ հիշատակումը Փարիզի Կոմունայի մասին՝ կապված պրոլետարիատի շարժման մեջ գյուղացիությանն ընդգրկելու կամ չընդգրկելու հարցի բոլշևիկյան լուծման հետ: Ահա թե ինչ էր ասում Լենինը. «Մտաբերեցեք այնուհետև, որ Մարքսը հետագայում միանգամայն ճիշտ էր համարում կոմունարների այն պնդումը, թե Կոմունայի գործը նաև գյուղացիության գործն է: Կրկնում եմ, չի կարելի կասկածել, որ որոշ պայմաններում աշխատավորների այս կամ այն խավի անցումը պրոլետարիատի կողմը ամենևին անհնարին չէ: Ամբողջ բանն այն է, որ ճշտորեն որոշվեն այդ պայմանները: Եվ «անցնում են պրոլետարիատի տեսակետին» բառերի մեջ այն պայմանը, որին վերաբերում է խոսքը, արտահայտված է լիակատար ճշգրտությամբ: Հենց այդ բառերն են մեզ, սոցիալ-դեմոկրատներիս, ամենավճռական կերպով սահմանազատում ամեն տեսակ իբր թե սոցիալիստական հոսանքներից՝ ընդհանրապես և՝ այսպես կոչված՝ սոցիալիստ-հեղափոխականներից՝ հատկապես»:

Այստեղ Փարիզի Կոմունայի հարցը սերտորեն առնչվում է բոլշևիկների հայացքների հետ, և Լենինն օգտագործում է նրա օրինակը որպես ներդրում սոցիալ-դեմոկրատների (բոլշևիկների) հայացքների և իրենց «սոցիալիստական» անվանող հոսանքների օպորտունիզմի բոլոր ձևերի «սահմանազատման» ոլորտում: Որքա՜ն ուսանելի և որքա՜ն հետաքրքրական է հետևել Փարիզի Կոմունայի նկատմամբ Լենինի վերաբերմունքի այս «գլխավոր ուղուն»՝ նրա քաղաքական գործունեության ամենավաղ տարիներից:

Եվ, վերջապես, 8—9 հատորներում (հ. 8, էջ 601—613, հ. 9, էջ 405—408) մենք գտնում ենք արդեն ոչ թե առանձին արտահայտություններ Փարիզի Կոմունայի մասին, այլ դրա վերաբերյալ տարբեր ժամանակներում (Կոմունայի տարեդարձի առթիվ մարտի 18-ին) զեկուցումների կոնսպեկտներ ու պլան: Լենինն այդ զեկուցումներով հանդես է եկել Ժնևում և շատ է պատրաստվել դրանց, ինչի մասին վկայում են գրադարանային բազմաթիվ վկայությունները, մեզ համար պահպանված ցուցակներն այն գրքերի, որ նա կարդացել է, և նույնիսկ դրանք իր մոտ պահելու ժամկետը: Դրանք, իհարկե, այն գրքերն էին, որ Կոմունայի թարմ հետքերով գրել են նրա ժամանակակիցները ու նույնիսկ մասնակիցները:

Բայց թե ինչպես է նա արտասանել այդ ճառերը և ինչպես են դրանք ներգործել ունկնդիրների վրա, հաղորդում են մեզ ներկա եղողների հիշողությունները:

Կբերեմ հին բոլշևիկուհի Մ. Մ. Էսսենի և Լենինի ընկեր Պ. Ն. Լեպեշինսկու՝ իմ կարծիքով առավել բնորոշ երկու հիշողությունները:

## ԳԼՈՒԽ III

1904 թվական: Ժնևը՝ իր գրադարանով և նշանավոր Կարուժկա (Carouge) փողոցով՝ ինչպես անվանում էր այն Նադեժդա Կոնստանտինովնան: Մարիա Էսսենը պատմում է.



«Առաջին անգամ ես տեսա նրան ամբիոնի մոտ 1904 թվականին Ժնևում, երբ նա զեկուցում էր Փարիզի Կոմունայի մասին: Լենինն ամբիոնի մոտ ամբողջովին կերպարանափոխվում էր: Մի տեսակ ամբողջովին վայելուչ, կոկիկ, կարծես մի կտորից պատրաստված: Ամբողջ ուժը կենտրոնացված է ձայնի մեջ, փայլող աչքերում, պողպատյա հատու խոսքում: Ինձ այն ժամանակ բախտ էր վիճակվել լսելու շատ մեծ հռետորների, որոնք կարծես խոսում են, լսողներին զարմացնելու, տպավորիչ դարձվածքով, սրամիտ կատակով փայլելու համար, կարողանում են օգտագործել ձայնի ուժն ու ճկունությունը, գեղեցիկ շարժուձևն ու կեցվածքը: Այդպիսիք էին համաշխարհային հռետորներ համարվող Պլեխանովը, Ժորեսը, Վանդերվելդեն: Նրանց ելույթներում ազդեցիկ շատ բան կար, բայց ինձ երբեք չէր հաջողվում ազատվել նրանց ճառերի ինչ-որ արհեստականության տպավորությունից: Լենինն ուրիշ էր: Անհնար է հաղորդել նրա ճառերի ուժը: Դրանցում կարծես թե ոչ մի արտաքին փայլ չկա, դրանք պարզ են, հստակ, բայց Լենինին լսելիս մոռանում ես ամեն ինչ: Նա ամբողջովին կլանում է ունկնդիրներին... Ուրիշ հռետորներ հիացնում են, բայց նրանց լսում ես կարծես կողքանց:— Լենինը գործի է կոչում»:

Այս ամենը դեռևս ընդհանուր է և հանդիպում է շատ հիշողություններում: Բաց ահա.

«Լենինը խոսում էր Կոմունայի մասին, և մենք զգացինք դրա հզոր շունչը, դրա պաթոսը, դրա ողբերգությունը, դրա համաշխարհային նշանակությունը: Փարիզի Կոմունան հառնեց մեր առջև որպես նոր կյանքի շողշողուն արշալույս, որպես բանվորների՝ իշխանությունն իրենց ձեռքը վերցնելու առաջին փորձ: Մենք մտովի տեսնում էինք պաշարված Փարիզը, տիրող դասակարգերի վախկոտությունն ու դավաճանությունը, Վերսալ փախած և հայրենիքին դավաճանած ծախու կառավարությունը, տեսնում էինք հերոսական բանվոր դասակարգը, որն իր վրա էր վերցրել հայրենիքի պաշտպանությունը և նոր հիմունքներով պետություն կառուցելու խնդիրը: Լենինը ցույց տվեց այդ խնդիրների կատարման բոլոր դժվարությունները, բացահայտեց Կոմունայի բոլոր հակասությունները, սխալները, պատմեց դրա անկման մասին: Մինչև օրս ես հիշում եմ և՛ այդ ճառը,, և՛ դրա հարուցած խանդավառությունը: Լենինի ողջ ճառից՝ այնքա՜ն ոգեշունչ ու կրակոտ, պարզ դարձավ, որ Փարիզի կոմունան ո՛չ միայն բանվոր դասակարգի ուժն ու հզորությունը ցույց տվող պատմության հերոսական դիպված է, այլև ոգեշնչող օրինակ մեզ համար»:

Ապա հետևում է այն հիանալի տեղը, հանուն որի ընթերցողի համար ես մեջբերեցի այս ողջ երկար քաղվածքը:

«Ժողովից վերադառնում էինք ոչ մեծ խմբով, բոլորս երջանիկ հուզմունքի մեջ էինք: Ես հարցրի Լենինին.

— Միթե՞ մենք կապրենք մինչև այն ժամանակները, երբ Կոմունան նորից օրակարգի հարց կդառնա:

Լենինը ցնցվեց.

— Իսկ դուք իմ զեկուցումից այդպիսի՞ եզրակացության եկաք,— հարցրեց նա:

— Այո՛, և ո՛չ միայն ես, այլ բոլորը, ովքեր ձեզ լսում էին այսօր» (տե՛ս Հիշողություններ Վլադիմիր Իլյիչ Լենինի մասին, հ. 1, Ե., 1957, էջ 325—326):

Այս հիշողությունների հեղինակն անկրկնելի գրական ձիրք ունի, ավելի ճիշտ, մանրամասները ինտուիտիվ կերպով որսալու ձիրք: Նա զգայուն կերպով է ընկալել իր խոսքերի նկատմամբ Լենինի ռեակցիան: Նա «ցնցվեց»: Ո՛չ միայն բանականությամբ, այլև ողջ էությամբ, իր ողջ շարժիչ ապարատով է նա արձագանքում իր համար հաճելի հաղորդմանը:

Այստեղ մենք ուղղակի զգում ենք կենդանի Լենինին: Ցնցվեց, նշանակում է ստացավ մի կարևոր լուր, որը գրավեց նրան: Նա ամբողջովին շարժման մեջ է: Ուրեմն, արձագանքում ենք և մենք այս տեղում, նրա համար այնքա՜ն կարևոր է, որ ճառն ազդել է ինչպես հույս, ամրացրել է այն համոզմունքը, որ Կոմունան կլինի, կլինի, կգա նրա օրը Երկրի վրա:

Այստեղ իմ լեզուն անզոր է դառնում, թեպետ սուր կերպով զգում եմ Լենինի հատուկ իմպուլսիվությունը: Իմպուլսիվություն ո՛չ միայն լսածի նկատմամբ ունեցած ռեակցիայում: Անմիջապես հիշում եմ Ն. Լ. Մեշչերյակովի պատմածը: Դա տեղի է ունեցել Բրյուսելում, որտեղով պետք է անցներ Լենինը և պետք է շատ զգույշ լիներ՝ իր վրա չհրավիրելու համար ոստիկանության ուշադրությունը: Հիշողության հեղինակի հետ Լենինն անցնում էր քաղաքի փողոցներով: Եվ հանկարծ՝ շարժում: Մասսայական... Մասնակիցներ այն ալիքվող մարդկային բողոքի, որը ցույց է կոչվում: Մեշչերյակովը մեծ դժվարությամբ կարողացավ պահել Վլադիմիր Իլյիչին, որն ուժգին մղվում էր միանալու ամբոխին...

Այստեղ նույնպես ողջ էությամբ արձագանքել է, կատարվողի նկատմամբ Վլադիմիր Իլյիչին հատուկ այնքա՜ն զարմանալի, կենդանի, անմիջական ռեակցիան:

Լեպեշինսկու հիշողությունն այլ բնույթի է: Նա սկսում է այն բանից, որ Ժնևում գտնվող քաղվտարանդիներն իրենց համար մեծ պատիվ էին համարում ներկա գտնվել Վլադիմիր Իլյիչի՝ Փարիզի Կոմունայի հիշատակին

րերը: Վոլոդյա Ուլյանովի ծնվելուց մի քանի տասնամյակ առաջ: Փարիզի Կոմունայի մասին նրա ժամանակակիցների գրած ֆրանսիական գրքույկները հավանաբար նկարազարդված էին հենց այդ դեպքերի պատկերներով, թերևս՝ փառապանծ կոմունարների դագերոտիպ լուսանկարներով: Մենք գիտենք. Լենինը դրանք կարդացել է իր վտարանդիության տարիներին Ժնևի և Փարիզի գրադարաններում: Ոչ թե Ասիայի ինչ-որ հեռավոր ավազուտներում և օազիսներում, ոչ թե ինչ-որ «քաղաքում շքեղաշուք», որ տեսել էր Ալեքսանդր Մակեդոնացին ավելի քան երկու հազար տարի առաջ... Նրա երևակայության մեջ ինչպես կենդանի հառնում էին ոչ թե ինչ-որ քիտոն, պատմուճան և չգիտես էլ ինչ հագած մարդիկ, այլ իրական Փարիզի վարչական շրջանների մարդիկ, հագած բանկոն ու տաբատ՝ նման մեր օրերի հագուստին...

Իր գրքում նա բացականչել է.

«...Միանգամից ջարդել չինովնիկական հին մեքենան և անմիջապես սկսել նորը կառուցել, որը հնարավորություն կընձեռի հետզհետե ոչնչացնելու ամեն մի չինովնիկություն, այդ ուտոպիա չէ, այդ— Կոմունայի փորձն է, այդ հեղափոխական պրոլետարիատի անմիջական, հերթական խնդիրն է (Երկեր, հ. 25, էջ 549—550):

Այսպիսով, Լենինի ընդհանուր տեքստից ուժեղագույն «ընդգծումով» վերցված վճռական «Չէ»-ն. Փարիզի Կոմունան ուտոպիա չէ, այն փորձ է:

Այստեղ խիստ արժեքավոր է յուրաքանչյուր բառը: Ոչ թե ուտոպիա, այլ՝ փորձ:

Ինչի՞ փորձ: Իսկական սոցիալիստական հեղափոխության իրական, գործնական փորձ: Այդ փորձի, դրա լոզունգների, դրա պրակտիկ անքակտելի ներքին կապի մեջ գտնվող գործողությունների ուսումնասիրմանն է գլուխ առ գլուխ նվիրում Լենինը իր գիրքը պատմական Հոկտեմբերյան մեծ մարտին նետվելուց առաջ: Եվ նա մեկընդմիշտ Փարիզի Կոմունայի վրայից սրբում է «ուտոպիականության» ամեն մի փառ, նա ճշգրիտ ու հստակ սահմանում է. Կոմունան իրականություն է, այն ուտոպիա չէ:

Լենինը կատաղի պայքարում է Կաուցկու այն փորձի դեմ, որով նա ջանում էր նսեմացնել, կասկածի ենթարկել Փարիզի Կոմունայի լոզունգների լիովին իրագործելիությունը: Լենինը Մարքսի հետ միասին զայրագին պայքարում է, վկայակոչում նրան, շարադրում է իր՝ լենինյան դիրքորոշումը, ընթերցողի առջև բացահայտում կոմունարների ծրագրի ու պրակտիկայի միասնությունը, և բազմիցս կրկնելով «մենք ուտոպիստներ չենք», կոչ է անում.

«Հեղափոխական համարձակություն սովորենք կոմունարներից, նրանց գործնական միջոցառումներում տեսնենք գործնականորեն— կենսական ու անհապաղ— հնարավոր միջոցառումների կանխանշումը և այն ժամանակ, այդ ուղիով ընթանալով, մենք կհասնենք բյուրոկրատիզմի կատարյալ խորտակմանը:

Այդպիսի խորտակման հնարավորությունն ապահովված է նրանով, որ սոցիալիզմը կկրճատի աշխատանքային օրը, մասսաներին կբարձրացնի նոր կյանքի համար, բնակչության մեծամասնությանն այնպիսի պայմանների մեջ կդնի, որ բոլորն անխտիր հնարավորություն կունենան «պետական ֆունկցիաներ» կատարելու, իսկ այդ կտանի դեպի առհասարակ ամեն մի պետության լիակատար մահացումը» (Նույն տեղը, էջ 668):

Դա մտքերի թանձրուկ է, որտեղ կրկնվում է «գործնական» մակդիրը և մատնանշվում է ողջ բովանդակությանը վերաբերող ուղու կետագիծը (Լենինն այն անվանում է իր սեփական, «կանխանշում» բառով), որը հանգեցնում է առհասարակ ամեն մի պետության մահացմանը: Պետականության՝ որպես այդպիսինի մահացման երկարատև պրոցեսը, որը շատ բանով որոշված է արտաքին-քաղաքական պայմաններով ու հանգամանքներով, չպետք է շփոթել նախկին շահագործողական, կապիտալիստական պետության ակնթարթային, «անմիջապես» բայքայման, ջարդելու հետ: Դա նորի և հնի մարտական գոտեմարտի հետևանքով ծնված առաջին գործնական միջոցառումն է:

Մարքսի հեղինակությունը: Լենինը նրան է վկայակոչում. «Սոցիալիզմի և քաղաքական պայքարի ողջ պատմությունից Մարքսն այն եզրակացությունը հանեց, որ պետությունը պետք է անհետանա, որ նրա անհետանալու անցման ձևը (պետությունից ոչ-պետության անցնելը) կլինի «իբրև տիրապետող դասակարգ կազմակերպված պրոլետարիատը»» Նույն տեղը, էջ 558—559):

Պետության հին տեսություններում (մենք դեռևս հիշում ենք դրանց ավանդումը մինչհեղափոխական համալսարաններում (հետազոտողները դրան մոտենում էին որպես մի ինչ-որ միստիկական բանի) ինչպես Հոբսի «Լևիաթանը»):

Լենինը մի հարվածով վերջ տվեց դրանց: Նա պետությունը բնութագրեց որպես մի դասակարգի կողմից մյուսին ճնշելու մեքենա, որն ունի իր սկիզբը, պատմությունն ու անհետանալու նախադրյալները, որի վկան է լինելու նոր, ազատ հասարակական պայմաններում աճած սերունդը:

Լենինը մանրազնին ուսումնասիրում է այն ամենը, ինչ Մարքսը գրել է Կոմունայի մասին՝



իր հանճարեղ ներթափանցող— հստակ մտքի լույսով ընտրելով անհրաժեշտ քաղվածքները:

«...Կոմունայի առաջին դեկրետը մշտական զորքի ոչնչացումն ու այն զինված ժողովրդով փոխարինումն էր... Կոմունան կազմված էր Փարիզի զանազան օկրուգներում ընդհանուր ընտրական իրավունքի հիման վրա ընտրված քաղաքային իրավասուներից: Նրանք պատասխանատու էին և ցանկացած ժամանակ փոխարինելի... Ոստիկանությունը, որ մինչև այժմ պետական կառավարման մի գործիք էր, անմիջապես զրկվեց իր բոլոր քաղաքական ֆունկցիաներից և դարձավ Կոմունայի պատասխանատու օրգանը, որ կարելի էր ցանկացած ժամանակ փոխել... Նույնպես և՝ կառավարչության բոլոր մյուս բնագավառների աստիճանավորները... Կոմունան անմիջապես ձեռնարկեց խորտակելու հոգևոր ճնշման գործիքը, տերտերների ուժը... Դատավորական աստիճանավորները կորցրին իրենց կարծեցյալ անկախությունը... Այսուհետև նրանք պետք է ընտրվեին բաց քվեարկությամբ, լինեին պատասխանատու և փոփոխելի...» (Նույն տեղը, էջ 540—541, տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս Ընտիր երկեր, 3 հատորով, հ. 2, Ե., 1973, էջ 294, 295):

Նա թվարկում է Կոմունայի բոլոր գործնական միջոցառումները, բացահայտորեն դրանցից առանձնացնելով այն, ինչ իրեն կարևոր է թվում բուրժուական պետականությունը վերացնելու առումով: Նա գրում է.

«Արտոնյալ փոքրամասնության հատուկ հիմնարկների փոխարեն (արտոնյալ չինովնիկություն, մշտական բանակի հրամանատարություն) մեծամասնությունն ինքն անմիջականորեն կարող է կատարել այդ բանը, իսկ որքան ավելի համաժողովրդական է դառնում պետական իշխանության ֆունկցիաների բուն կատարումը, այնքան ավելի պակաս կարևոր է դառնում այդ իշխանությունը:

Այդ տեսակետից առանձնապես ուշագրավ է Կոմունայի ձեռնարկած այն միջոցառումը, որն ընդգծել է Մարքսը՝ ներկայացուցչության համար տրվող դրամի ամեն տեսակ վճարման, չինովնիկների ամեն տեսակ դրամական արտոնությունների վերացումը, բոլոր պաշտոնատար անձանց վարձատրությունը պետության մեջ «բանվորի աշխատավարձի» չափին իջեցնելը: Հենց այստեղ է, որ ամենից ավելի ակնբախ կերպով է արտահայտված բեկումը բուրժուական դեմոկրատիայից դեպի պրոլետարական դեմոկրատիան, ճնշողների դեմոկրատիայից դեպի ճնշված դասակարգերի դեմոկրատիան, պետությունից՝ իբրև որոշ դասակարգ ճնշելու, «հատուկ ուժից» դեպի ճնշողներին՝ ժողովրդի մեծամասնության, բանվորների ու գյուղացիների, համընդհանուր ուժով ճնշելը: Եվ պետության հարցին վերաբերող հենց այս առանձնապես ակնբախ, թերևս ամենակարևոր կետում է, որ Մարքսի դասերն ամենից ավելի են մոռացված» (Նույն տեղը, էջ 542—543):

Մեր երեխաները և մեր երեխաների երեխաները այբուբենի նման յուրացրել են Լենինի կենսագրության այն փաստը, երբ նա զայրույթով հարձակվել է Վ. Դ. Բոնչ-Բրուևիչի վրա, որի խելքին փչել էր նրա՝ մեր պետության առաջին ղեկավարի աշխատավարձին, առանց վերջինիս գիտության ու համաձայնության, ավելացնել լրացուցիչ 300 ռուբլի: Այդ զայրույթի ակունքն այն է, որ, ինչպես գրում է Լենինը Հոկտեմբերի նախօրեին, «Մարքսի գլխավոր դասերն» ամենի՜ց ավելի են մոռացված:

Այստեղ Լենինի առջև կարծես թե կանգնեց մարդը: Սովորական մարդը, որպիսիք մեծամասնություն են. տարբեր բնավորության, տարբեր աստիճանի օժտվածության, տարբեր ընդունակության և տարբեր կերպ մտածող. մարդ, որի հետ պետք է գործ անել: Կարելի՞ է արդյոք նրա հետ սոցիալիստական հեղափոխություն կատարել: Մենշևիկները կարծում էին, որ սոցիալիզմի համար հարկավոր է մարդկանց ինչ-որ նախապատրաստված, բարելավված «ցեղ», որի աստիճանին մասսան դեռևս չի բարձրացել: Իսկ ի՞նչ է ասում Լենինը:— «Մենք ուտոպիստներ չենք... Ո՛չ, մենք սոցիալիստական հեղափոխություն ենք ուզում հենց այնպիսի մարդկանցով, որոնք այժմ կան...» (Նույն տեղը, էջ 550):

«Մենք ուտոպիստներ չենք»,— Լենինը հայտնագործում է բոլշևիզմի խորքից աճող մի ինչ-որ բան. մարդկության հանդեպ մեծ հավատը, սերը մարդու նկատմամբ, ահա այսպիսիների, ո՛չ թե ինչ-որ հատուկների, այլ այժմյան մարդկանց նկատմամբ, իրենց բոլոր թերություններով ու արատներով հանդերձ, որովհետև հենց նման մարդկանց հետ պետք է այժմ կատարել սոցիալիստական հեղափոխություն: Եթե Կոմունան, որը երկու ամսից ավելի գոյություն ունեցավ Երկրի վրա արդարության ու հավասարության օրենքով, ուտոպիա չէ, այլ ՓՈՐՁ, ինչպես ուսուցանում է Լենինը, ապա նույնպես և պետք է հավատալ մարդու մեջ, ամեն մի մարդու մեջ բարու իրական լինելուն, ինչպես որ պետք է հավատալ յուրաքանչյուրի հոգեկան մեծ վերելքի հնարավորությանը, ինչպես որ պետք է սիրել մարդկությանը, ինչպես որ պետք է հավատալ, որ նա ընդունակ է, թո՛ղ որ դանդաղ, թո՛ղ որ ձախողումներով գնալու դեպի Բարին ու Արդարը:

Ահա թե ինչպիսի ատոմային էներգիա էր ճառագում Լենինի ողջ էությունը Մեծ հոկտեմբերի նախօրեին:

Բայց այս դատողությունների և Փարիզի Կոմունայի լոզունգների ճանապարհին կարող է կրկին կանգնել «ուտոպիստը», կասկածամիտը, հետնորդը կաուցկիների ու նրանց, որոնց գիտելիքը չի վերաճել համոզմունքի: Նա վարանում է, կծկվում, նրա սրտովը չեն Փարիզի Կոմունայի լոզունգները, աշխատավարձի հավասարեցումը հասարակ բանվորի հետ, (նա, ի դեպ, կարող է և չիմանալ, որ կառավարչական ապարատի աշխատողի աշխատավարձը, որը դեռևս 1940 թվականին՝ միջինը 20 տոկոսով գերազանցում էր արդյունաբերական բանվորի վաստակը, այժմ դրանից ցածր է— 1979 թվականին, համապատասխանաբար՝ 147,8 և 180,3 ռուբլի): Նա չի ցանկանում բացահայտորեն հակասել Մարքսին ու Լենինին, նա քրթմնջում է. «Ո՞ւմ ի նկատի ունեք դուք: Ո՞վ կհամաձայնի պատասխանատվություն կրել և այն էլ նման աշխատավարձով: Երազա՜նք է: Ուտոպիա՜: Կյանքում դա անիրագործելի՜ է»:

Լենինը պատասխանում է. «Իրագործելի՜ է»: Եվ իր գրքի ոգեշունչ էջերը նվիրում է սովորության մասին ուսմունքին, սովորության պրակտիկային, սովորություն, որը կատարելագործվում է ամեն օր և ամեն ժամ: Չէ որ ժողովուրդն է շրջանառության մեջ դրել այն խոսքերը, թե սովորությունը երկրորդ բնավորություն է: Մարդկային զանգվածների մշտական գործողությունները Կոմունայի միջոցառումների նշանաբանով, ինչպես ջուրն է քարը հղկում, կարող են փոխել մասնավոր սեփականատիրական պետականության պայմաններում հազարամյակներով դաստիարակված նախկին մարդկանց բնավորությունն ու հատկանիշները, դարձնել նրանց նոր մարդ, կոմունարներ, որոնք ստեղծված են կեսպետությամբ՝ արդեն «ոչ-պետությամբ»:

Լենինն իր գրքում արծարծում և լուծում է սոցիալիզմի շատ նրբագույն հարցեր, զարմանալի խորությամբ բացատրելով ձևական հավասարության և փաստական հավասարության, ձևական դեմոկրատիզմի և փաստական դեմոկրատիզմի տարբերությունը: Այս վերլուծությունն ամենախորիմաստ տեղերից մեկն է «Պետություն և հեղափոխություն»-ում. առանց այդ հասկանալու՝ ընթերցողի տեսադաշտից գրքում շատ այլ բան ևս դուրս է մնում:

Նորից կլսվի կասկածամիտը. դե՛ն, դուք պնդո՞ւմ եք, որ իրական Փարիզի Կոմունայի կարճատև գոյությունը կարող է շարունակվել Երկրի վրա «դեռևս դարե՜ր, դարե՜ր»: Անցյալի անցքերից ի՞նչը, վերջապես, բացի Կոմունայի այդ երկամսյա փորձից, դուք կարող եք գեթ համեմատել նրա հետ:

Եվ այստեղ— ուզում եք հավատացեք, ուզում եք ոչ, ընթերցող— ես ցնցվեցի: Այնքա՜ն անակնկալ, այնքա՜ն հանկարծակի, այնքա՜ն զարմանալի էր այն, ինչ նա պատասխանել է ուտոպիստների այդ հնարավոր հարցին.

Վաղ քրիստոնյաները...

«Սկզբնական քրիստոնեությունը՝ իր դեմոկրատական-հեղափոխական ոգով հանդերձ»:

«Պետություն և հեղափոխություն»-ում այդ անակնկալ տեղի մասին ես խոսել եմ շատ ուսումնասիրողների հետ: Ոչ ոք դա չի նկատել, բոլորը կասկածում էին, թե Լենինի աշխատություններում կա այդպիսի տեղ, չէին հավատում և ժխտում էին նման հնարավորությունը: Հարցնում էին. որտե՞ղ, որտե՞ղ: Ես պատասխանում էի՝ փնտրեցե՛ք ինքներդ:

«Պետություն և հեղափոխության» նույն էջից Լենինի միտքը շարունակելուց առաջ հիշեցնեմ նախորդ արտահայտության վերջը: Խոսքն այնտեղ այն մասին էր, որ «Մարքսի ամենակարևոր դասերն ամենի՜ց ավելի են մոռացված»: «Մոռացված են», ըստ իս, այն պատճառով, որ ուշ շրջանի տեսաբաններից ոմանց դրանք թվացել են անիրագործելի և այդ պատճառով՝ հնացած ու միամիտ:

Անցնենք այժմ քաղվածքի վերջին մասին:

Լենինը գրում է սոցիալիստների կողմից Փարիզի Կոմունայի կիրառած հավասարության արմատական միջոցառումների մոռացության մասին, սոցիալիզմի պատմաբանների կողմից այդ դասերը մոռանալու մասին.

«Հանրամատչելի մեկնաբանությունների մեջ, որոնց թիվ ու համար չկա, այդ մասին չեն խոսում: «Ընդունված է» լռել այդ մասին, իբրև իր դարն ապրած մի «միամտության» մասին, այնպես, ինչպես որ քրիստոնյաները, պետական կրոնի դիրք ձեռք բերելով, «մոռացան» սկզբնական քրիստոնեության «միամտությունները»՝ նրա դեմոկրատական-հեղափոխական ոգով հանդերձ» (նույն տեղը, էջ 543):

Այս քաղվածքում Լենինն ասել է նաև ինչ-որ շատ արժեքավոր բան. նրա միտքը թռչել-անցնելով հազարամյա անցյալը, նախազգուշացրել է ներկային: Ինչ՞ու վերասերվեց և այլասերվեց քրիստոնեությունը, որն իր սաղմում կոմունա էր հիշեցնում: Որովհետև այն, «պետական կրոնի դիրք ձեռք բերելով», տիրանալով նյութական հարստության ու հզոր մենաշնորհի, դարձավ շահագործողական պետության կցորդը, հաշվի չառավ իշխանությամբ արբենալու, կանոնականացման, ճնշվածների՝ իրեն ծնած կենդանի պահանջների հետ կապերը կորցնելու վտանգը: Պատմության հետադարձ քայլերի շարադրման ինչպիսի՜ զարմանալի համարձակություն:

Բայց այս սուկ, ի միջիայլոց, որպես սուկ մտածելիս որսված բան: Իսկ ընդհանուր առմամբ ես այստեղ լսում եմ փակվող էջերի ձայնը... Բավակա՞ն է: Իր զարմանալի գրքի վերջաբանում, ոչ թե Թոմաս Մորի պես «ուտոպիստի», այլ մեծ հեղափոխական վերափոխիչի, մարդկությանը հավատացողի գրքի վերջաբանում Լենինն ասել է.

«...Առավել հաճելի և օգտակար է «հեղափոխության փորձը» կատարել, քան թե դրա մասին գրել» (նույն տեղը, էջ 642):

Բայց այն բանից հետո ևս, երբ նա «կատարեց» սոցիալիստական հեղափոխությունը և արդեն կանգնած է սովետական պետության գլուխ, նա կրկին մտովին դիմում է Փարիզի Կոմունային.

«Մեր սովետներում դեռ շատ կոպիտ, կիսակատար բան կա, այդ կասկածի ենթակա չէ, այդ պարզ է ամեն մեկի համար, ով հետևել է նրանց աշխատանքին, բայց այն, ինչ նրանց մեջ կարևոր է, ինչ պատմականորեն արժեքավոր է, ինչ մի քայլ է դեպի առաջ սոցիալիզմի համաշխարհային զարգացման մեջ,— այդ այն է, որ այստեղ ստեղծվել է պետության նոր տիպ: Փարիզի Կոմունայում այդ գոյատևեց մի քանի շաբաթ, մի քաղաքում, առանց գիտակցելու այն, ինչ անում էին: Կոմունան չէին հասկանում նրանք, ովքեր այն ստեղծում էին, նրանք ստեղծում էին արթնացած մասսաների հանճարեղ բնազդով և ֆրանսիական սոցիալիստների ոչ մի ֆրակցիա չէր գիտակցում, թե ինքը ինչ է անում: Մենք գտնվում ենք այնպիսի պայմաններում, երբ շնորհիվ այն հանգամանքի, որ մենք կանգնած ենք Փարիզի Կոմունայի և գերմանական սոցիալ-դեմոկրատիայի բազմամյա զարգացման ուսերի վրա, մենք կարող ենք պարզ տեսնել, թե մենք ինչ ենք անում, ստեղծելով սովետական իշխանություն» (Երկեր, հ. 27, էջ 147):

Փարիզի Կոմունայի ուսերի՜ վրա:

## ԳԼՈՒԽ VI

Եզրափակիչ (Pro domo sua[1]):

Հոկտեմբերյան հեղաշրջումը ես ապրեցի արդեն հասուն տարիքում, ես երեսուն տարեկան էի: Այն ապրեցի, ի բարեբախտություն իմ, ողջ ժողովրդի հետ միասին, և ոչ թե մոսկովյան ու պետերբուրգյան այն ժամանակվա մտավորականության հետ, ոչ թե բուրժուական գրողների շրջանի հետ, որ թուլացել էր քաղցից, փետըրվարյան կառավարական քաոսից, տեղի ունեցածը չըմբռնելուց, պատմության իսկական զգացողության կորստից:

Կատարվում են ո՛չ միայն քաղաքական հեղափոխություններ: Հեղափոխական պայթյունում վիթխարի դեր է խաղում Երկրի վրա Ճշմարտության, Արդարության, Բարության նըկատմամբ մարդկության բարոյական պահանջը: Երբ Լենինի մասին խոսում են որպես միայն քաղաքագետի՝ մոռանում են այն վիթխարի բարոյական ուժը, որ նա ներդրել է Հոկտեմբերյան հեղափոխության մեջ: Մարդկության և մարդու հանդեպ նրա հավատի բարոյական ուժը: Այդ բարոյական ուժի հիմքն էր, հատկապես, որ դեպի նրան էր ձգում մասսային, դարձնում նրան ժողովրդի սիրելի առաջնորդը: Լենինի մեծ հումանիզմը հնչում է «Պետության և հեղափոխության» քաղաքական բանաձևումներում, նույնիսկ այն բառերի ընտրությունում, որոնցով շարադրում է դրանք Լենինը: Մշտապես «բանվոր դասակարգ», «դասակարգային պայքար» կրկնելու փոխարեն ինչպիսի՜ ջերմությամբ են համակում ընթերցողի սիրտը նրա հաճախակի օգտագործված «ճնշվածներ», «ճնշողներ», «աղքատներ», «հարուստներ», հասարակ բառերը,— դասակարգերի բաժանումը, քաղաքականության լեզուն այս որակական սահմանումներում ձեռք է բերում մատչելիություն և պատկերավորություն, ընթերցողն իր առջև տեսնում է կենդանի մարդկանց և նրանց նկատմամբ բարոյական վերաբերմունքը: Քաղաքականության միջով ճառագում է իսկական մարդասիրությունը: Ես այս գրում եմ այն պատճառով, որ ինձ այն ժամանակ բոլշևիզմը մոտ էր ու թանկ ոչ միայն որպես արմատական քաղաքական ուղղություն. այն ինձ հրապուրում էր իր խոր մարդկայնությամբ: Այդ իսկ պատճառով Հոկտեմբերյան հեղափոխությունն ինձ համար մեծ երջանկություն էր, Երկրի վրա Արդարության ու Բարու հաղթանակի երջանկություն: Ինձ համար մեծ հաջողություն եմ համարում, որ Հոկտեմբերը դիմավորել եմ՝ 1914 թվականի պատերազմի ժամանակ լովելմնալով իմ մորենական քաղաք Դոնի-Նախիջևանում, երբ Հայդելբերգի համալսարանից Ռուսաստան էի վերադառնում մեր հարավային սահմանով: Դա բանվորական,հեղափոխական տրամադրված Դոնի-Ռոստով խոշոր քաղաքի արվարձանն էր: Այն բանից հետո, երբ հյուսիսում կատարվեց Հոկտեմբերյան հեղափոխությունը, հարավում մենք մնացինք դենիկինականության իշխանության տակ: Ինչո՞ւ եմ գրում, թե դա հաջողություն էր ինձ համար: Որովհետև իմ նախկին շրջապատը, Պետերբուրգի և Մոսկվայի բուրժուական բանաստեղծներն ու գրողները, մի մասը նրանց, ում

[1] *Լատիներեն (տառացի «Հանուն իր տան»)— ի պաշտպանություն իր անձի և իր գործերի:*

միջավայրում ես գտնվում էի, Հոկտեմբերյան հեղափոխությունը դիմավորեցին՝ չըմբռնելով այն ամենը, ինչ նա բերեց աշխարհ, պատմության իսկական զգացողության բացակայությամբ, գազազած ու թշնամաբար: Իսկ մենք հարավում, և իմ այնտեղի միջավայրը, իր դարն ապրած կարգի վերջին ջղաձգությունների, դրա զազրելիությունների ու դաժանությունների հրեշավոր մթնոլորտում հեղաշրջումին ըսպասում էինք որպես փրկության և ազատագրության: Մենք նրան սպասում էինք ակտիվորեն: Մենք ունեինք ընդհատակյա խմբակներ, մենք հանդիպում էինք պրոլետարական Տեմերնիկի շրջանի բանվորների հետ: Երբեմն մեզ էին հասնում արգելված բոլշևիկյան հրատարակություններ: Ես ավելի ուշ բազմիցս գրել եմ, թե ինչպիսի հսկայական դեր խաղաց մեզ համար Բլոկի «Տասներկուսի» ընթերցումը...

Երբ Հոկտեմբերը թեպետև ուշացումով, բայց հասավ մեզ, իմ երկարատև կյանքի ընթացքում դա ամենավիթխարի երջանկության զգացումն էր: Դժվար է նկարագրել երջանկության այդ վիճակը, որ բաժին էր ընկել մեր սերնդին: Գալիք սերունդները պիտի նախանձեն մեզ, որ այդ հրաշքի՝ Հոկտեմբերի ժամանակակիցներն ենք եղել մենք: Մարդկության լեզվում կա ոչ այն է բժշկական, ոչ այն է հոգեբանական, ոչ այն է փիլիսոփայական բառ՝ «էյֆորիա»: Այն խոսում է մարդու մեջ լավագույն հատկանիշների մեծագույն, հույժ բարձր վերելքի մասին, ասես նրա մեջ լրիվ նյութափոխանակության մասին, ազատագրման լիարժեք, ամեն մի այլ երանգից զերծ զգացմունքի մասին, կատարյալ թեթևության մասին՝ կարծես ինչ-որ մեկի ծանըր, երկաթյա թաթերը հանկարծ վերցված են քո ուսերից և քեզ չի լքում բացարձակ ճշմարտության, բացարձակ ազատության, գտնված երջանկության ճախրող, համակող զգացումը, որտեղ չկան ո՛չ «ես», ո՛չ «դու», այլ կա ամբողջը՝ մարդկությունը, և դու նրա մեջ ես, դու այն ես... Ահա այսպես ենք զգացել ես և համախոհների իմ սերունդը Հոկտեմբերյան հեղափոխության հրաշքը:

Շատ ափսոս, որ արվեստում և գրականության մեջ դեռևս չկան հզոր միջոցներ՝ մեր սերունդներին փոխանցելու Հոկտեմբերյան հեղափոխության օդը, այդ Երջանկության լիարժեքությունը, անաղարտությունը, անշահախընդրությունը, մեծ Հոկտեմբերի այդ թարմ ու ոգևորիչ մթնոլորտը:

Չգիտեմ, կկարողանա՞ն արդյոք տեսաբանները գիտության մեջ, արվեստագետները, այդ թվում Լենինի կերպարի վրա աշխատողները՝ արվեստում, ամենայն խորությամբ հասկանալ դա՝ ապրած չլինելով նման «ակնթարթ-հավերժություն»: Բայց դրա արտացոլքն անցավ ողջ մարդկության վրայով: Մարդկանց համար դա ստեղծեց Բարու և Երջանկության նոր չափանիշ: Այն զգացին բոլոր ճնշվածները: Քանի՜ պետություններ պատերազմի ելան մեր դեմ, որպեսզի պահպանեին շահագործողների իշխանությունը, խարխլված մարդկային կարգը: Քաղցա՜ծ, հյուծվա՜ծ, հոգնա՜ծ, ուժասպա՜ռ էինք մենք ապրած պատերազմներից: Բայց մենք ջերմացած էինք Հոկտեմբերի կրակով: Եվ մեր ժողովրդի մեծագործության բարոյական վեհությունը բոցավառում էր բանվորների և հին աշխարհի լավագույն մարդկանց սրտերը: Եվ նրանք հրաժարվում էին օգնել իրենց պետություններին՝ մեզ խեղդելու նրանց մտադրությունում, նրանք չէին ցանկանում մեր դեմ զենք կռել, նավահանգստային բանվորները հրաժարվում էին այն բեռնել, նավաստիները հրաժարվում էին այն տեղափոխել, զինվորները հրաժարվում էին կրակել հեղափոխության սըրտին... Մենք այն ժամանակ հաղթեցինք մեր Բարոյական Վեհությամբ, ամեն մի ցուցադրականի բացակայությամբ, ամենայն Ճշմարտի լույսով: Դա մի ժամանակ էր, երբ Տեսությունը լիովին միահյուսվեց Պրակտիկայի հետ, երկու զուգահեռները հանդիպեցին, Գաղափարը և Իրականությունը ձուլվեցին Մեկի մեջ:

Լենինն ասում էր, թե սոցիալիստական հեղափոխություն կատարելու համար չպետք է սպասել մարդկային ցեղի ինչ-որ բարելավման: Նա ասում էր, որ այդ հեղափոխությունը պետք է անել հիմա, այն մարդկանցով, որպիսիք կան — իրական, և ոչ թե ինչ-որ «բարելավված» մարդկանցով: Եվ մեր սերունդը վկան էր այն բանի, թե ինչպես այդ սովորական մարդիկ, իրենց բոլոր թուլություններով հանդերձ, բոլորի աչքի առջև վերածնվում էին, ինչպես և մենք ինքներս, որպես նոր, իսկական մարդիկ: Հոկտեմբերյան հեղաշրջման օդի շնորհիվ, նրա բերած երջանկության, մեր շնչի, մեր խոյանքի, ազատության, հին արտադրահարաբերությունների դաժան անգթության ծանր թաթից ազատված ուսերին, ասես, թևեր բուսնելու շնորհիվ:

Հիշում եմ սովետական շինարարության առաջին տարիները, նախ հարավում՝ Ռոստովում, որտեղ ես ջուլհակագործության հրահանգիչ էի, բանվորական աշխատանքի արտադրողականության բարձրացման դասընթացների դասախոս, հայկական Չալդըր գյուղում գյուղսովետի գործավար,— և ապա սիրելի Պիտերում ու Մոսկվայում, ուր ես վերադարձա, արդեն ձեռք բերելով բանվորների ու գյուղացիների հետ տարվող նոր, սովետական աշխատանքի փորձ: Գրողի պրոֆեսիոնալ աշխատանքով ես սկսեցի ծնունդ առած իմ նոր



ըմբռնողությունը, իմ աշխատանքային փորձը ինչպես հարկն է տալ ժողովրդին: Եվ այստեղ ինձ վիճակվեց նկատել նոր, սոցիալիստական կարգի դանդաղ ու անշեղ միտումն ապագային, կոմունիզմին: Եթե սոցիալիզմը ճիշտ է զարգանում, եթե աշխարհում օբյեկտիվ պայմանները չեն խոչընդոտում այդ ճիշտ զարգացմանը, ապա նրանում անխուսափելիորեն սկսում են նշմարվել, թող որ ոչ մեծ, բայց անտարակույս, կոմունիստական միտումներ: Մարքսի և Լենինի բանաձևն այն մասին, թե սոցիալիզմն անխուսափելիորեն կվերաճի կոմունիզմի, սկսեց իրականանալ ժողովրդի աչքի առջև: Հիշում եմ, թե այդ միտումը ինչպես էր դրսևորվում քսանական թվականների ձեռնարկումներում: Ամենահասարակ բանը՝ մարդու բնակարանը, ճարտարապետությունը: Սովետական ճարտարապետների առաջին փորձերը: Մոսկվայում, Գեղարվեստական թատրոնի նրբափողոցի վրա կա համար երկու տունը, որտեղ մենք՝ գրողներս, ստացանք մեր առաջին սովետական բնակարանները: Փոքր էին այդ բնակարանները. երկու փոքրիկ սենյակ, լոգարան և փոքրիկ խոհանոց: Բայց ներքևում տեղի էր ունենում մեր «մասնավոր կյանքի» գործնական շարունակությունը հասարակականի մեջ: Այնտեղ կար ընդարձակ ընդհանուր լվացքատուն, որտեղ ամեն ինչ հարմարեցված էր լվացքի համար: Եվ բոլոր բնակարանների բնակիչները գալիս էին այդտեղ իրենց սպիտակեղենով, ծանոթանում միմյանց, բարեկամանում էին, վիճում, այսինքն՝ հաղորդակցվում էին՝ աշխատելով կոլեկտիվ կերպով: Այնտեղ, ներքևում կային «կարմիր անկյուն», տընային լիազորի սենյակ՝ կոմունիզմի մասին առաջին գրքերի գրադարանով, այնտեղ կար նաև սենյակ ու դաստիարակչուհի՝ երեխաների համար, որոնց՝ առաջին սովետական ծառայության գնացող մայրերը դեռևս թողնելու տեղ չունեին: Եվ դա դաստիարակում էր, մեր երեխաների մեջ դա պատվաստում էր կոլեկտիվության պարզ ու բարի զգացումը:

Մեր առաջին կոմերիտմիությո՛ւնը՝ ինչպիսի՛ն էր նա, մեր նորելո՛ւկ կոմերիտմիությունը: Դա հիմա է թվում նույն այն «միամտությունը», որը ներկայիս կասկածամիտների համար հնացած է, իրական կյանքի համար արթնացած և Լենինի կողմից իր «Պետություն և հեղափոխություն» գրքում խորապես գնահատված միամտությունը. բարոյական վարքագծի խորություն և անաղարտություն, արհամարհանք ցուցամոլության, փառամոլության նկատմամբ, անցյալի գայթակղությունների ետևից ընկնելու, իրենց առույգ ու առողջ դեմքերը, իրենց թարմ շրթունքները, իրենց առաձգական ջահել մազերը ներկող աղջիկների նկատմամբ... Կոմերիտմիությունը՝ աշխատանքի ու կոլեկտիվիզմի նկատմամբ իր սիրով, դժբախտության մեջ և սովորելու գործում ընկերներին իր օգնելով, գիտության հանդեպ իր կրքով... Իսկ գիտությունը դժվար էր ժողովրդի ծոցից ելած այդ առաջին երիտասարդության համար, զուր չէ, որ այն ժամանակ ծնվեց «կրծել գիտության գրանիտը» ահավոր ասացվածքը: Բայց գիտելիքի նկատմամբ ինչպիսի՜ հետաքրքրություն, հոկտեմբերյան սերնդի այդ առաջնեկների ինչպիսի՜ հափըշտակվածություն գիտությամբ: Այդ ժամանակվա իմ օրագրում խիստ համառոտ գրառում կա: Պիտերի մերձակա Լուգա քաղաքի մասնավոր առողջարաններից մեկում էի: Առողջարանի տերը մի հայտնի բժիշկ-նևրոպաթոլոգ էր: (Նման մասնավոր փոքրիկ անկյուններ դեռևս գոյություն ունեին վաղ Հոկտեմբերյան տարիներին, դրանք օգնում էին մեր հասարակարգին): Եվ այդ բժիշկը մի անգամ ինձ ասաց. «Դուք չեք պատկերացնում, թե ուսման ընթացքում հսկայական մտավոր գերլարվածության պատճառով որքան շատ են հիմա նյարդային հիվանդները երիտասարդների շրջանում:»: Իսկ ես օրագրում գրել եմ. «Բայց իմ սիրտը նրանց նկատմամբ լցվեց ոչ թե խղճահարությամբ, այլ քնքշությամբ: Ինչպե՜ս են նրանք ձգտում գիտությանը: Ինչպիսի՜ տարբերություն նրանց և նախկին «սպիտակաստառավորների» միջև, որոնց բերանն էին խցկում գիտությունը, իսկ նրանք դուրս էին թքում: Իսկ սրանք, ժողովրդից ելած առաջինները, վերջապես հասան կարդալու, սովորելու իրավունքին, իրենց համար թանկագին գիտությանը»:

Իսկ սիրելի, հարազատ «նոր սովետական մտավորականությո՛ւնը»,— նորը և հին կադրերից, որոնք ոգևորությամբ սկսեցին իրենց նոր աշխատանքը: Երջանկությո՛ւն է ունեցածդ գիտելիքները ժողովրդին հաղորդելը: Հատկապես ինձ հրապուրում էր այն ժամանակվա գրադարանավարների, ռադիո-կինոինֆորմատորների, դասախոսների, մանկավարժների աշխատանքը, որոնք դարձել էին սովետական էնտուզիաստներ (նրանք քի՛չ չէին): Հիշում եմ, ես հիվանդ պառկած էի սովետական հիվանդանոցներից մեկում,— դրանք այդ տարիներին գրեթե բոլորը միատեսակ էին, ինչպես և կենցաղային մեր ողջ կյանքը, ունենալով, ինչպես թվում էր փաստական և ոչ թե ձևական հավասարություն, թանկագին հատկանիշները: Այն ժամանակ ինձ ուրախալիորեն զարմացրեց մի նորամուծություն. ամեն մի հիվանդանոցային մահճակալին ամրացված էին ռադիոընկալուչներ: Դա տեխնիկական առաջըն-

թացի նոր նվաճում էր, մեր հիվանդանոցների հպարտությունը: Ամեն մի հիվանդանոց այն ներդնում էր մյուսի օրինակով: Ես դրեցի ընկալուչները և լսեցի մի ոչ երիտասարդ կնոջ աշխույժ, ուրախ, կուզեի ասել «ծաղկող» ձայնը, որը թեթևակի շնչակտուր էր լինում գիտելիք հաղորդելու հաճույքից: Նա պատմում էր ֆրանսիական կոմպոզիտոր Բիզեի կյանքի մասին, նրա հանճարեղ «Կարմեն» օպերայի ձախողման, նրա ողբերգության, ապա և այդ հիանալի օպերայի համաշխարհային փառքի մասին: Ես ինքս այդ մասին վաղուց գիտեի, և գիտեի շատ ավելի ընդարձակ ու խոր: Բայց ես ունեցա տպավորիչ նորույթի զգացում, այն նորույթի, թե դա ինչպես էր ասվում և ում համար էր ասվում: Ակամա արցունքներս հոսեցին. որքա՜ն սիրալիր, հիանալի է այդ տարեց կինը, որն իր գիտելիքներին հաղորդակից է դարձնում հասարակ ժողովրդին, երջանիկ այն բանից, որ ինքը կարող է մարդկանց հաղորդել և հաղորդելու բան ունի...

Կարճամիտ և ապրել չգիտցող մարդիկ, ապրել ոչ քաղքենիաբար-ապահովված, կուշտ-հաշվենկատորեն, հոգեզուրկ-պրագմատիկորեն, այլ հիրավի մարդկայնորեն, ստեղծագործաբար, ուրիշ մարդու մեջ տեսնելով իր սեփական անձի շարունակությունը, կասեն՝ հնացած միամտություններ... Իսկ մենք ապրել ենք անող այդ «միամտությունների»՝ դեպի ապագան, կոմունիզմ տանող աշխարհում, մենք երջանիկ ենք եղել: Եվ ես համոզված եմ, որ գրողներ Սեյֆուլինայի, Սերաֆիմովիչի, Ֆուրմանովի, Ֆադեևի, Գլադկովի, Շոլոխովի սրտից ծնված առաջին սովետական գրականությունն ստեղծվում էր այն բանի գիտակցությամբ, ինչ բերեց մեզ Հոկտեմբերը: Մենք մոտ էինք այն ժամանակ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» լոզունգի լիովին ըմբռնմանը, որովհետև այդ լոզունգում թաքնըված է հատուցելու մեծագույն Երջանկությունը:

Ուրեմն թող ապրի հուշը Հոկտեմբերյան հեղափոխության՝ մեր Երկրի վրա կատարված իրական և ոչ թե երևակայական հրաշքի մասին, տեսության ու պրակտիկայի միաձուլման հրաշքի՝ ոչ որպես ուտոպիայի, այլ որպես մարդկության մեծագույն փորձի մասին:

Коммунист № 16, 1980 г.



# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԴԵՐԻ ՄԱՍԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

**Լ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

*ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ՝ ՈՐՊԵՍ ՕԲՅԵԿՏԻՎ աշխարհի զանազան երևույթների և դրանց զարգացման օրինաչափությունների մասին գիտելիքների մի համակարգ, ունի բազմադարյան պատմություն: Այն մշտապես եղել է հասարակության ուշադրության կենտրոնում: Սակայն տարբեր հասարակական տնտեսական ֆորմացիաներում գիտության սոցիալական ֆունկցիայի և դրա զարգացման օրինաչափությունների համակողմանի վերլուծությունը տվել են դիալեկտիկամատերիալիստական աշխարհայացքի ստեղծողները: Նրանք մասնավորապես անդրադարձել են գիտության դասակարգայնության, սոցիալ-տնտեսական սիստեմի հետ անմիջական կապի, աշխարհի ճանաչողության ու հեղափոխական վերափոխման գործում նրա նշանակության բացահայտման հարցերին:*

*Գիտական կոմունիզմի հիմնադիրները բազմակողմանիորեն վերլուծել են մասնավոր սեփականատիրական, հատկապես կապիտալիստական աշխարհում գիտության զարգացման միտումները: Կ. Մարքսը նշել է, որ կապիտալիզմի պայմաններում «գիտությունը հանդես է գալիս որպես աշխատանքին օտար, թշնամի, նրա վրա իշխող մի ուժ»* (Կ. Մարքսի ձեռագիր ժառանգությունից: *Տե՛ս «Коммунист», 1958, № 7):*

*Վ. Ի. Լենինը ցույց է տվել, որ կապիտալիստական հասարակարգում գիտության այդ դերն առավել ակնառու կերպով է դրսևորվում նրա զարգացման բարձրագույն փուլում՝ իմպերիալիզմի դարաշրջանում: Արտադրության ու կապիտալի համակենտրոնացման պրոցեսը, պետական մոնոպոլիստական կապիտալի հաստատումն ու զարգացումը անխուսափելիորեն պայմանավորում են գիտության նվաճումների վերածումը մոնոպոլիաների գործիքի: Ընդ որում, նրանք գիտությունն օգտագործում են ո՛չ միայն գերշահույթ ապահովելու, այլև իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունն իրագործելու նպատակով: Ինչպես նշել է Լենինը, աշխարհի վերաբաժանման համար պայքարում իմպերիալիստական պետությունները կանձավերժեն նոր պատերազմներ և դրանցում կօգտագործեն գիտության ու տեխնիկայի նվաճումները:*

*Կապիտալիստական հասարակարգում հետադիմական նպատակներով գիտության օգտագործման վերաբերյալ մարքս-լենինյան կանխատեսումները լիովին հաստատվեցին պատմական պրակտիկայում: Անհիմն ու սնանկ են արդի բուրժուական գաղափարախոսների այն «նորագույն» տեսությունները, որոնց համաձայն իբր թե գիտատեխնիկական հեղափոխությունը նպաստում է կապիտալիզմի «փոխակերպմանը» սոցիալական հակասություններից ու դասակարգային պայքարից ազատ մի նոր հասարակության: Անշուշտ, գիտատեխնիկական առաջընթացը որոշակիորեն խթանեց կապիտալիզմի արտադրաուժերի զարգացումը, բայց դրա անխուսափելի հետևանքը եղավ նաև կա-*

պիտալիզմի բոլոր հակասությունների հետագա սրումը: Ինչպես Լենինն է նշել, այդ առաջընթացը դարձյալ ուղեկցվում է հակասությունների «առաջընթացով»:

Լենինը խորապես համոզված էր, որ «միայն սոցիալիզմը կազատի գիտությունը նրա բուրժուական կապանքներից, կապիտալին ստրկանալուց, կեղտոտ կապիտալիստական շահասիրությանը ստրկանալուց» (Երկեր, հ. 27, էջ 511):

Սոցիալիստական հասարակության տնտեսական հիմքը, քաղաքական սիստեմը և գաղափարախոսությունը օբյեկտիվորեն պայմանավորում են գիտության նոր սոցիալական ֆունկցիան, որի բուն էությունն է աշխատավոր ժողովրդին ծառայելը: «...Առաջ ամբողջ մարդկային խելքը, նրա ամբողջ հանճարն ստեղծագործում էր միմիայն նրա համար, որպեսզի մի կարգ մարդկանց տա տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր բարիքները, իսկ մյուսներին զրկի ամենաանհրաժեշտից՝ լուսավորությունից ու զարգացումից: Իսկ այժմ տեխնիկայի բոլոր հրաշքները, կուլտուրայի բոլոր նվաճումները դառնալու են համաժողովրդական սեփականություն, և այսուհետև մարդկային խելքն ու հանճարն էլ երբեք բռնության միջոցների, շահագործման միջոցների չեն վերածվի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 589—590):

Լենինը հիմնավորել է գիտատեխնիկական առաջընթացի և սոցիալիստական հասարակության զարգացման մեջ փոխադարձ կապի օրինաչափությունը: «Սոցիալիզմն աներևակայելի է առանց... տեխնիկայի, որը կառուցված է նորագույն գիտության վերջին խոսքի համաձայն...» (Երկեր, հ. 27, էջ 414): Իր հերթին գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը շատ բանով պայմանավորված են սոցիալիզմի կազմավորմամբ ու ընդլայնմամբ: Լենինը ելել է այն բանից, որ գիտության այդ նոր դերը սոցիալիստական հասարակության մեջ դրսևորվում է ոչ թե տարերայնորեն, այլ կազմակերպվում է կոմունիստական կուսակցության նպատակասլաց գործունեությամբ: Այդ պատճառով էլ նա մեծ ուշադրություն է դարձրել գիտական հաստատությունների կազմակերպման նոր սկզբունքին, գիտնականներ պատրաստելուն, արտադրության հետ գիտության անմիջական կապն ապահովելուն, գիտատեխնիկական նվաճումների հետ լայն զանգվածների հաղորդակցվելուն: Ինչպես հայտնի է, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից շատ չանցած Լենինը կազմեց «Գիտահետազոտական աշխատանքների պլանի ուրվագիծը», որը դարձավ երիտասարդ սովետական հանրապետության գիտությունների ակադեմիայի առաջին ծրագիրը: Լենինի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ իրագործվեց գիտությունների ակադեմիայի վերակառուցման, նրա աշխատանքներում երևելի գիտնականների ներգրավման, նրանց համար արդյունավետ աշխատանքի անհրաժեշտ նյութական ու բարոյական պայմանների ստեղծման նպատակով կարևոր միջոցառումների մի ամբողջ համակարգ: «...Մենք,— ասել է Լենինը,— նրանց պետք է տանք որքան հնարավոր է գոյության լավ պայմաններ: Այդ կլինի լավագույն քաղաքականությունը, այդ կլինի ամենախնայողական տնտեսարարությունը: Այլապես մենք, տնտեսելով մի քանի հարյուր միլիոն, կարող ենք կորցնել այնքան, որ միլիարդներն իսկ չեն վերականգնի կորուստը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 211):

Նա հատուկ ուշադրություն է դարձրել գիտական հաստատություններում անհրաժեշտ ստեղծագործական մթնոլորտ ստեղծելուն, վճռականորեն հանդես է եկել ընդդեմ վարչարարության և գիտական հարցերը լուծելիս անիրավել միջամտության:

Դեռևս պատերազմի ու ավերածությունների տարիներին Լենինը մշտապես կոչ էր անում գիտությունը առավելագույն չափով ներդնել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, կազմակերպել կառավարումն այն հաշվով, որ գիտությունը մտնի սոցիալիստական հասարակության բոլոր ոլորտները, դառնա նրա միսն ու արյունը: «Հարկավոր է վերցնել ամբողջ գիտությունը, տեխնիկան, բոլոր գիտելիքները, արվեստը,— ընդգծել է նա:—



Առանց այս բանի մենք չենք կարող կոմունիստական հասարակության կյանքը կառուցել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 67):

Հետևողականորեն իրագործելով այդ խնդիրը, կուսակցությունն ու կառավարությունը սովետական իշխանության հենց առաջին օրերից գլխավոր ուշադրությունը կենտրոնացրին գիտության այն ուղղությունների զարգացմանը, որոնք առաջնակարգ նշանակություն ունեին ավերածությունների վերացման, ժողովրդական տնտեսության վերականգնման, երկրի ինդուստրացման հրատապ պրոբլեմի, իբրև նոր հասարակության կառուցման հիմքի, արագ լուծումն ապահովելու համար: Այդ կապակցությամբ Լենինը վճռական նշանակություն է տվել երկրի էլեկտրիֆիկացմանը «Մենք պետք է նոր տեխնիկական բազա ունենանք տնտեսական նոր շինարարության համար: Այդ նոր տեխնիկական բազան էլեկտրականությունն է: Այդ բազայի հիման վրա ենք կառուցելու ամեն ինչ» (Երկեր, հ. 30 էջ 425):

Ինչպես հայտնի է, երկրի էլեկտրիֆիկացման գիտական հիմք հանդիսացավ Լենինի նախաձեռնությամբ մշակված և նրա կողմից կուսակցության երկրորդ ծրագիր անվանված նշանավոր ԳՈԷԼՌՕ-ի պլանը: Նրանում առաջին անգամ խնդիր է դրված էլեկտրիֆիկացման բազայի վրա ապահովել մեքենաշինության, տրանսպորտի, հանքարդյունաբերության և ժողովրդական տնտեսության մի շարք այլ կարևոր ճյուղերի զարգացումը: Այդ իսկ տարիներին մշակվեց գյուղատնտեսության տեխնիկական վերակառուցման ծրագիրը՝ էլեկտրիֆիկացման, մեքենայացման ու քիմիացման հիման վրա:

Սոցիալիստական սիստեմի կարևորագույն առանձնահատկությունն ու առավելությունն է գիտության, տեխնիկայի, ինչպես նաև հասարակության կյանքի մյուս ոլորտների զարգացման պետական և պլանային ղեկավարումը: Դա հնարավորություն է ընձեռում անհրաժեշտ միջոցներ ու գիտատեխնիկական պոտենցիալ կուտակել գիտության առավել կարևոր ուղղությունների արագընթաց զարգացման համար, նրա նվաճումները սոցիալ-տնտեսական հրատապ խնդիրների լուծմանը ծառայեցնելու նպատակով:

Գիտության պլանաչափ զարգացումը կազմակերպելու և նրա նվաճումները սոցիալիզմի կառուցման գործին առավելագույն չափով ծառայեցնելու վերաբերյալ լենինյան ցուցումները գործնականորեն մարմնավորվեցին երկրի ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլաններում: Դրանց հաջող կատարման շնորհիվ մեր երկիրը պատմական կարճ ժամանակամիջոցում առաջավոր դիրքեր գրավեց համաշխարհային գիտության մեջ:

Հանրահայտ են սովետական մաթեմատիկական դպրոցի հաջողությունները, հատկապես հաշվողական մաթեմատիկայի, կառավարման տեսության և այլ բնագավառներում: Սովետական գիտնականները ծանրակշիռ ներդրում են կատարել ժամանակակից ֆիզիկայի շատ ուղղությունների զարգացման ասպարեզում: Այստեղ նախ պետք է նշել ատոմային էներգիայի տիրապետման, քվանտային էլեկտրոնիկայի զարգացման, պինդ մարմնի տեսության, պինդ մարմիններում էլեկտրամագնիսական և մագնիսական երևույթների ուսումնասիրման, գերհաղորդականության, ալմաստի և այլ գունավոր նյութերի սինթեզման մեթոդների մշակման հետ կապված պրոբլեմների լուծումը:

Մշակվել են ֆիզիկական արժեքավոր հատկություններով օժտված այնպիսի անօրգանական նյութեր ստանալու գիտական հիմունքները, որոնք վճռական նշանակություն ունեն նոր տեխնիկայի համար: Սովետական գիտնականների ստեղծած ֆիզիկաքիմիական անալիզի մեթոդները հնարավորություն են ընձեռել նշանակալից չափով կատարելագործել հանքային հումքի շատ տեսակների վերամշակման ու պարարտանյութի արտադրության տեխնոլոգիական սխեմաները:

Ստեղծվել են նավթի և գազի վերամշակման տեխնոլոգիական պրոցեսներ: Սովետական կենսաբանները մշակել են սպիտակուցի և ֆիզիոլոգիական որոշ ակտիվ նյութերի միկրոկենսաբանական սինթեզման հիմունքները: Գյուղատնտեսության արդյունավետության բարձրացման գործին մեծապես նպաստեցին մեր գիտնականների հետազոտությունները սելեկցիայի ասպարեզում: Նշանակալից հաջողություններ են ձեռք բերվել երկրագիտության մեջ: Հետա-

խուզական աշխատանքների նոր մեթոդների ստեղծումը նպաստեց խոշորագույն հանքավայրերի հայտնաբերմանը:

Սովետական գիտության մեծագույն հաղթանակն էր այն, որ մեր երկիրը դրեց տիեզերքի նվաճման սկիզբը: Հենց սոցիալիզմի առաջին երկրում իրագործվեց երկրի առաջին արհեստական արբանյակի արձակումը, մարդու առաջին թռիչքը երկրամերձ ուղեծրում, մարդու առաջին ելքը տիեզերական բաց տարածություն:

Տիեզերագիտության զարգացումն ունի ո՛չ միայն տեսական, այլև գործնական ժողովրդատնտեսական նշանակություն: Ներկայումս արհեստական արբանյակները լայնորեն օգտագործվում են երկրի բնական ռեսուրսների ուսումնասիրման մեջ, խոշոր հողաշինարարական աշխատանքներում, նավագնացության, օդերևութաբանության, հեռուստատեսության և հեռախոսային կապի բնագավառներում: Այսպես, օրինակ, երկրի արհեստական արբանյակի միջոցով հեռախոսային խոսակցության ինքնարժեքը 40 անգամ ցածր է սովորական կաբելային խոսակցության ինքնարժեքից: Նավագնացության մեջ արբանյակների օգտագործման տնտեսական արդյունավետությունը կազմում է տարեկան ավելի քան 200 միլիոն ռուբլի: Ընդհանուր առմամբ ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում արհեստական արբանյակների օգտագործումն արդեն հատուցել է բոլոր այն աշխատանքների հետ կապված ծախսերը, որոնք կատարվել են տիեզերքի նվաճման ուղղությամբ: Պարզ է, որ դրանց օգտագործման ոլորտի ընդլայնման համեմատ կմեծանա նաև տիեզերքի յուրացման ասպարեզում գիտական հետազոտությունների տնտեսական արդյունավետությունը:

Սոցիալիստական հասարակության մեջ բնական գիտությունների զարգացումն ու ակնբախ նվաճումները սերտորեն առնչվում են հասարակական գիտությունների հետ: Հասարակական գիտությունների համակարգում վճռական դերը պատկանում է մարքսիզմ-լենինիզմին, որը սոցիալական առաջընթացի հեռանկարների որոշման տեսական հիմքն է:

Այս կամ այն տեսության իսկական գիտականության գլխավոր չափանիշը պրակտիկան է, նշել է Լենինը: Ելնելով այդ միակ ճիշտ չափանիշից և XX դարի պատմական պրակտիկայից, միանգամայն ակնհայտ է դառնում, որ մարքսիզմ-լենինիզմի խոր գիտականության հաստատումն են զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը մեր երկրում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը, գաղութատիրության փլուզումը, կապիտալիստական ֆորմացիայից սոցիալիստականին անցնելու պրոցեսը:

Լիովին հաղթանակել է Լենինի հիմնավորած կանխագուշակությունը բնական և այլ գիտությունների զարգացման համար մարքսիստական փիլիսոփայության մեթոդաբանական կարևոր նշանակության մասին: «...Առանց լուրջ փիլիսոփայական հիմնավորման— գրել է նա,— ոչ մի բնական գիտություն, ոչ մի մատերիալիզմ բուրժուական գաղափարների գրոհի և բուրժուական աշխարհայեցողության վերականգնման դեմ մղվող պայքարում դիմանալ չի կարող» (Երկեր, հ. 33, էջ 274):

Հենց դիալեկտիկական մատերիալիզմի հետ բնագիտության Լենինի կոչած դաշինքն է, որ կարևոր դեր է խաղացել սովետական գիտության կազմավորման ու զարգացման, նրա իրոք վիթխարի նվաճումների ու համաշխարհային գիտության առաջավոր դիրքերը դուրս գալու գործում:

Մեր բազմազգ երկրի պատմական փորձը նույնպես ցույց է տվել, որ գիտության հաջող զարգացումը կազմակերպելու գործում կարևոր նշանակություն ունեն ազգային և ինտերնացիոնալ շահերի ներդաշնակ զուգակցումը, ժողովուրդների գիտական և մշակութային ավանդույթների համակողմանի հաշվառումը, կոնկրետ դպրոցների և ուղղությունների հետևող գիտնականների առկայությունը, ազգային առանձնահատկությունները հաշվի առնելը:

Հայտնի է, որ մինչև մեծ Հոկտեմբերի հաղթանակը Ռուսաստանի գիտական հաստատությունները կենտրոնացված էին Պետերբուրգում և Մոսկվայում: Պատկերը կտրուկ փոխվեց սոցիալիստական շինարարության և լենին-



յան ազգային քաղաքականության իրագործման պրոցեսում: Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից գիտության կազմակերպման ու զարգացման ուղղությամբ հսկայական աշխատանք սկսվեց բոլոր հանրապետություններում ու երկրամասերում: Կուլտուրական հեղափոխության իրականացման, անգրագիտության վերացման և ժողովրդական կրթության կազմակերպման բազայի վրա գիտական աշխատողների կադրեր էին պատրաստվում բնիկ ազգություններից:

Բոլոր հանրապետություններում գիտական կադրերի պատրաստման համեմատ պայմաններ ստեղծվեցին համապատասխան գիտական հիմնարկություններ ու կենտրոններ ունենալու համար: Սկզբում հիմնադրվեցին ՍՍՀՄ ԳԱ ֆիլիալներ, որոնք վերածվեցին հանրապետական գիտությունների ակադեմիաների: Բացի դրանցից վերջին տարիներին գիտության ռեգիոնալ կենտրոններ են ստեղծվել Սիբիրում, Ուրալում, Հեռավոր Արևելքում և երկրի այլ շրջաններում:

Մեր հանրապետության գիտությունների ակադեմիան ծնունդ առավ Հայրենական մեծ պատերազմի ծանր տարիներին: Սկզբում սկսեցին գործել երկրաբանության, քիմիական, կենսաբանական, բուսաբանական, պատմության և նյութական մշակույթի պատմության, գրականության ու լեզվի ինստիտուտները:

Ներկայումս հանրապետության գիտությունների ակադեմիայի կազմում կան 30 գիտահետազոտական ինստիտուտներ, որոնցում աշխատում են շուրջ ութ հազար գիտաշխատողներ: Նրանցից 39-ը ակադեմիկոսներ են, 50-ը՝ թղթակից-անդամներ, 193-ը՝ գիտության դոկտորներ և 972-ը՝ թեկնածուներ:

Սովետական Հայաստանի գիտնականների շատ նվաճումներ լայն ճանաչում են գտել ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում: Դա ամենից առաջ աստղագիտության, տեսական աստրոֆիզիկայի, գալակտիկաների միջուկների ուսումնասիրության, կոսմիկական ճառագայթների, ռադիոֆիզիկայի, մաթեմատիկայի, հաշվողական տեխնիկայի, քիմիայի, կենսաբանության և մի շարք այլ ուղղություններում ձեռք բերված նվաճումներն են: Հայ գիտնականների բարձրագույն նվաճումներից մեկը տիեզերքի անծայրածիր տարածությունները ճեղքող տիեզերանավերի համար գերճշգրիտ սարքերի ստեղծումն է: Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ինստիտուտները տասներորդ հնգամյակի տարիներին մասնակցել են ՍՍՀՄ ԳԱ-ի կողմից կոորդինացվող գիտահետազոտական աշխատանքների կարևորագույն բաժինների գծով 18 պրոբլեմների մշակմանը:

Գիտությունների ակադեմիայի և նրանց ռեգիոնալ կենտրոնների հետ միասին երկրում զարգանում է ճյուղային գիտությունների համակարգը: Այն լուծում է այնպիսի խնդիրներ, որոնք կապված են տվյալ ճյուղի արտադրական պրոցեսների կատարելագործման, արտադրանքի որակի բարձրացման հետ: Լայն տարածում են ստանում նաև արտադրության հետ գիտության կապի նոր ձևերը՝ գիտաարտադրական միավորումներ ստեղծելու ճանապարհով: Մեր բազմազգ երկրում գիտության զարգացման օրինաչափություն է միութենական հանրապետությունների գիտական հիմնարկությունների և առանձին գիտնականների փոխադարձ կապերի ու սերտ համագործակցության մշտական ընդլայնումը:

Հայկական ՍՍՀ, Ադրբեջանական ՍՍՀ և Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիաների միջև համագործակցություն է իրականացվում ըստ նրանց համատեղ մշակած երկարաժամկետ կոմպլեքսային պլանի: Այդպիսի պլանների հիման վրա են համագործակցում նաև մերձբալթյան, միջինասիական և մյուս հարևան հանրապետությունները: Բացի դրանից, միութենական հանրապետությունների ակադեմիական ինստիտուտները և բուհերը համատեղ հիմնական և կիրառական հետազոտություններ են կատարում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի, Մոսկվայի, Լենինգրադի, Նովոսիբիրսկի և երկրի այլ գիտական կենտրոնների համապատասխան ինստիտուտների հետ: Այդպիսի համագործակցությունը ո՛չ միայն նպաստում է գիտության զարգացմանը և ժողովրդատնտեսական խնդիրների լուծմանը, այլև ունի սոցիալ-

սային ծրագիրը: Այդ ծրագրի հետևողական կենսագործումը ապահովում է երկրի էկոնոմիկայի արդյունավետ զարգացումը, մեր ժողովրդի նյութական և հոգևոր աճող պահանջմունքների ավելի լրիվ բավարարման խնդրի հաջող լուծումը, նրա բարեկեցության անշեղ աճը:

Կուսակցության XXVI համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի երրորդ ենթաբաժինը նվիրված է գիտության զարգացմանը և տեխնիկական առաջընթացի արագացմանը: Այստեղ մասնավորապես ասված է, որ տասնմեկերորդ հնգամյակում գիտության ու տեխնիկայի զարգացումը պետք է առավել մեծ չափով նպաստի սովետական հասարակության հետագա առաջընթացի կարևորագույն պրոբլեմների լուծմանը, ինտենսիվ զարգացման ուղու վրա էկոնոմիկայի անցման արագացմանը:

Գիտատեխնիկական հեղափոխության և կոմունիզմի կառուցման պայմաններում սովետական գիտնականները ընդլայնում են շրջապատող աշխարհի ճանաչման սահմանները հանուն մարդու և սոցիալական առաջընթացի: «Մարդկային միտքը շատ արտասովոր բաներ է հայտնագործել բնության մեջ և է՛լ ավելի կհայտնագործի՝ դրանով մեծացնելով իր իշխանությունը նրա նկատմամբ»— գրել է Վ. Ի. Լենինը (ԵԼԺ, հ. 18, էջ 368): Կես դարից ավելի է անցել այն ժամանակից, երբ Լենինն արտասանել է այս մարգարեական խոսքերը. «Գիտության ներկայացուցիչների, պրոլետարիատի և տեխնիկայի միության առջև չի կարող դիմանալ և ոչ մի մութ ուժ» (Երկեր, հ. 30, էջ 512): Այդ կանխատեսումներն իրականություն դարձան մեր երկրում սոցիալիզմի կառուցման ողջ ընթացքում, երբ գիտությունը ժողովրդական տնտեսության զարգացմանը ակտիվորեն նպաստելու դերից հասել է անմիջականորեն մասնակցելու, արտադրողականությունն ու արտադրանքի որակը բարձրացնելու ֆունկցիային:

Սովետական գիտությունը միշտ էլ եղել և մնում է կուսակցության ու կառավարության ուշադրության կենտրոնում, նրա հսկայական նվաճումներն ի սպաս են դրվում աշխատավորության բարօրության հետագա վերելքին, ամրապնդում ՍՍՀՄ-ի և սոցիալիստական համագործակցության երկրների տնտեսական հզորությունը, նրանց պաշտպանունակությունը և այդպիսով դառնում միջազգային խաղաղության պահպանման հզոր լծակ: Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը հիրավի զարգացած սոցիալիստական հասարակարգի սոցիալական առաջնահերթ խնդիրն է: Միայն սոցիալիզմի պայմաններում է գիտատեխնիկական հեղաշրջումը ստանում ճիշտ, մարդու և հասարակության շահերին համապատասխանող ուղղություն:



# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԾՐԱԳՐԻՆ ՈՒ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆԸ ՄԻՇՏ ՀԱՎԱՏԱՐԻՄ

**Ս. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսհանձնաժողովի նախագահ

Բովանդակ մարդկության ազատության ու երջանկության համար մղած իր հերոսական պայքարով Վ. Ի. Լենինի մեծագործ կուսակցությունն արժանացել է կոչումներից բարձրագույնին՝ ճանաչվելով որպես մեր դարաշրջանի միտքը, պատիվը, խիղճը: Լենինյան կուսակցության անդամ լինելը ո՛չ միայն մեծագույն վստահություն ու պատիվ է, այլև մեծագույն պատասխանատվություն:

Մարդիկ դեպի կուսակցություն են գալիս կամովին, իրենց բանականության, համոզմունքների, սրտի ու խղճի թելադրանքով: Այդ խիստ կամավոր ակտը ծնում է երկկողմանի փոխադարձ պարտականություններ: Կոմունիստը լրիվին պատասխանատու է դառնում իր կուսակցության առջև, իսկ կուսակցությունը՝ յուրաքանչյուր կոմունիստի գործունեության ու վարքի համար:

Կոմունիստի պարտականությունները շատ են: Դրանք հստակորեն շարադրված են կուսակցության գլխավոր փաստաթղթերում՝ նրա ծրագրի ու կանոնադրության մեջ: Այդ պարտականություններից առաջնայինը, որից էլ սկսվում է կուսակցականությունը, ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության ճանաչումն է և դրանց պահանջների անվերապահ կատարումը:

ՍՄԿԿ ծրագիրը կուսշարքերի գաղափարական, իսկ կանոնադրությունը կազմակերպական միասնության հիմքն են: Դրանք կուսակցության այն հիմնական փաստաթղթերն են, որոնց մեջ իրենց լիակատար արտացոլումն են գտել լենինյան կուսակցականության դրույթները, կուսակցական կյանքի լենինյան նորմերն ու ղեկավարման սկզբունքները:

Կուսակցության ծրագիրը, որը մշակված է մարքս-լենինյան ուսմունքի հիման վրա, սահմանում է կուսակցության հիմնական խնդիրները կոմունիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանում, ինչպես նաև այդ խնդիրների իրականացման ստրատեգիան ու տակտիկան:

ՍՄԿԿ կանոնադրությունը իր հերթին սահմանում է մեր կուսակցության կառուցվածքի սկզբունքը, նրա կենտրոնական ու տեղական կազմակերպությունների խնդիրներն ու իրավասության շրջանակները, աշխատանքի ձևերն ու մեթոդները, կոմունիստների պարտականություններն ու իրավունքները:

Կուսակցական կյանքի լենինյան նորմերի ու կոլեկտիվ ղեկավարման սկզբունքի անշեղ կիրառումը, ասված է ՍՄԿԿ ծրագրում, կուսակցական մասսաների առջև կուսակցական մարմինների և նրանց աշխատողների պատասխանատվության բարձրացումը, բոլոր կոմունիստների ակտիվության ու ինքնագործունեության աճի, կուսակցության քաղաքականության մշակմանն ու իրագործմանը նրանց ակտիվ մասնակցության ապահովումը, քննադատու-

թյան և ինքնաքննադատության զարգացումը հանդիսանում են կուսակցության կյանքի օրենքը։

Լիովին հավատարիմ մնալով ծրագրի այս դրույթներին, ՍՄԿԿ կանոնադրությունը դրանք ավելի է կոնկրետացնում, նշելով, որ ՍՄԿԿ-ն իր աշխատանքը կառուցում է կուսակցական կյանքի լենինյան նորմերի, ղեկավարման կոլեկտիվության սկզբունքի անշեղ պահպանման, ներկուսակցական դեմոկրատիայի, կոմունիստների ակտիվության և ինքնագործունեության, քննադատության և ինքնաքննադատության համակողմանի զարգացման հիման վրա։

Մեր կուսակցության բազմահարուստ փորձը վկայում է, որ նրա ուժի ու հաջողությունների գրավականը կուսշարքերի միասնության և համախմբվածության, բոլոր կոմունիստների գիտակցական բարձր կարգապահության մեջ է։ Լենինյան այդ դրույթը ևս արտացոլված է ՍՄԿԿ կանոնադրության մեջ։

Կոմունիստական կուսակցությունը, սակայն, ուժեղ է ո՛չ միայն իր շարքերի կուռ միասնությամբ ու ամուր կարգապահությամբ, այլև նրանով, որ իր շարքերը մաքրում է բոլոր նրանցից, ովքեր խախտում են ՍՄԿԿ ծրագիրն ու կանոնադրությունը և իրենց վարքագծով արատավորում կոմունիստի վեհ կոչումը։ Կանոնադրական այդ դրույթը կոչված է ապահովելու կուսշարքերի անաղարտությունը; նրա որակական կազմի բարելավումը, որոնք վճռական նշանակություն ունեն կոմունիստների ակտիվության ու նախաձեռնության զարգացման և կուսշարքերի մարտունակության բարձրացման համար։

Կուսակցական կյանքի լենինյան նորմերի և կուսակցության բազմահարուստ փորձի հիման վրա մշակվել և ՍՄԿԿ կանոնադրության մեջ իրենց լիակատար արտացոլումն են գտել կուսակցության անդամի պարտականություններն ու իրավունքները։ Սակայն ո՞վ պետք է վերահսկի դրանց կատարմանը, չէ՞ որ կուսակցության գործին անսահմանորեն նվիրված հարյուր-հազարավոր բարեխիղճ կոմունիստների կողքին կան նաև, Լենինի բառերով ասած, «խրցկրվածներ», այնպիսիք, որոնք արատավորում են կոմունիստի վեհ կոչումը։ Այդ վերահսկողությունը պետք է իրականացնի հենց ինքը՝ կուսակցությունը, հանձինս նրա սկզբնական կուսկազմակերպությունների, տեղական ու կենտրոնական մարմինների։ Վ. Ի. Լենինը նշել է. «...կուսակցությունն ինքը պարտավոր է հսկել իր պաշտոնատար անձանց կողմից կանոնադրության կատարմանը... Կուսակցության անդամի կոչմանն արժանի չէ նա, ով չի կարողանում պահանջել և հասնել այն բանին, որ իր կողմից վստահված անձինք կատարեն իրենց կուսակցական պարտականությունները իրենց վստահողների հանդեպ» (ԵԼԺ, հ. 9, էջ 381)։

ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջների կատարման վերահսկողությունը, իսկ դա ողջ կուսակցական վերահսկողության առանցքն է, նրա միջուկը, դրված է բոլոր կուսակցական կազմակերպությունների ու կոմիտեների վրա, սկսած սկզբնական կուսկազմակերպություններից մինչև կուսակցության բարձրագույն մարմինները։ Սակայն կուսակցական վերահսկողություն իրականացնող այդ համակարգի մեջ միանգամայն բացառիկ դեր ունեն կատարելու մեր սկզբնական կուսկազմակերպությունները։

Սկզբնական կուսկազմակերպությունները, գործելով մասսաների խորքում, բուն աշխատանքային կոլեկտիվներում, անմիջականորեն ղեկավարում և ուղղություն են տալիս բոլոր կոմունիստների գործունեությանը, հնարավորություն ունեն իրենց տեսադաշտում պահելու և խորապես ճանաչելու նրանցից յուրաքանչյուրին, գնահատելու նրանց արժանիքները, մատնանշելու և շտկելու թերությունները։ Կուսկազմակերպությունների ունեցած հարուստ ինֆորմացիան, աշխատանքի ճիշտ կազմակերպման դեպքում, նրանց հնարավորություն է ընձեռում յուրաքանչյուր սխալ, վրիպում, բացթողում տեսնել ու նկատել դեռևս սաղմնային վիճակում, սկզբնավորման, ձևավորման շրջանում և հմուտ ու օպերատիվ միջամտությամբ կանխել, շտկել, հաղթահարել դրանք։ Հարկ է նշել նաև, որ սկզբնական կուսկազմակերպությունների կողմից իրականացվող վերահսկողությունը ամենամասսայականն է, ամենածավալունը, ամենակոնկրետն ու ամենագործնականը։



ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջների կատարման վերահսկողության ձևերն ու մեթոդները սկզբնական կուսկազմակերպություններում բազմազան են և բազմապիսի։

Կոմունիստների քաղաքական կոփվածքի, ակտիվության և նախաձեռնության զարգացման գործում բացառիկ կարևոր նշանակություն ունեն խնամքով նախապատրաստված և բարձր մակարդակով անցկացվող կուսակցական ժողովները, բյուրոների ու կոմիտեների նիստերը, ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջների կատարման մասին կոմունիստների հաշվետվությունների քննարկումը, կուսակցական հանձնարարությունների կատարումը, կուսկազմակերպություններում և աշխատանքային կոլեկտիվներում իշխող քննադատական ոգին, պահանջկոտության, փոխադարձ օգնության մթնոլորտը և այլն։ Մինչդեռ ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մեր շատ սկզբնական կուսկազմակերպություններ լրջորեն չեն մոտենում կուսակցական ժողովներում քննարկվող հարցերի ընտրությանը, տարիներ շարունակ չեն անդրադառնում կուսակցության ծրագրի ու կանոնադրության պահանջների կատարման վերաբերյալ կոմունիստների հաշվետվությունների քննարկմանը, չափից ավելի են հրապուրվում, այսպես կոչված, հերթապահ, տարբեր կամպանիաների հետ առնչվող հարցերով, մոռացության են տալիս կուսակցական շինարարության, արտադրության կուսակցական ղեկավարման, աշխատանքի ռճի կատարելագործման, կոմունիստների կարգապահության ու պատասխանատվության հրատապ հարցերը։

Զուտ արտադրական բնույթի հարցեր քննարկելիս անգամ կուսկազմակերպությունները կարող են և պարտավոր են այդ քննարկումներին տալ կուսակցական հնչեղություն, դրանք ծառայեցնել կուսակցական, պետական ու աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, կոմունիստների աշխատանքային և քաղաքական ակտիվության բարձրացմանը, արտադրության մեջ նրանց ավանգարդային դերի ապահովմանը և նախաձեռնության զարգացմանը։

ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջների կատարման վերահսկողության ասպարեզում մեծ աշխատանք են տանում նաև ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեն և տեղական կուսակցական կոմիտեներին առընթեր կուսակցական հանձնաժողովները, որոնց խնդիրն է ստուգել, թե կուսանդամներն ու անդամության թեկնածուները ինչպես են պահպանում կուսակցական կարգապահությունը և պատասխանատվության ենթարկել այն կոմունիստներին, որոնք անտեսում են կուսակցության ծրագրի ու կանոնադրության պահանջները, խախտում են կուսակցական ու պետական կարգապահությունը, կոմունիստական բարոյականության նորմերը։

Հայաստանի կոմկուսի քաղաքային ու շրջանային կոմիտեներին առընթեր կուսակցական հանձնաժողովները, առաջնորդվելով ՍՄԿԿ XXV համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի որոշումներով, վերջին տարիներին քիչ աշխատանք չեն կատարել կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի նկատմամբ կադրերի, կոմունիստների պատասխանատվության բարձրացման, կուսշարքերի անաղարտության, կուսակցական կյանքի լենինյան նորմերի պահպանման, մեր կյանքի բացասական երևույթների դեմ պայքարի գործում։

Ստացված ահազանգերի հիման վրա և պլանային կարգով նրանք հարյուրավոր ստուգումներ են կատարել, վեր հանել կուսակցական ու պետական կարգապահության, սովետական օրենքի և օրինականության խախտման, պաշտոնական դիրքի չարաշահման, սոցիալիստական սեփականության հափշտակման, անտնտեսվարության, բյուրոկրատիզմի և քաշքշուկի բազմաթիվ փաստեր, բազմակողմանիորեն հիմնավորված առաջարկություններ ներկայացրել համապատասխան քաղկոմ-շրջկոմներին և սկզբնական կուսկազմակերպություններին՝ մեղավորներին պատժելու և կատարած սխալներն ու թերությունները շտկելու համար։

Կուսհանձնաժողովներից շատերը պարբերաբար ուսումնասիրում են

ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջների կատարման վիճակը սկզբնական կուսկազմակերպություններում, ձեռնարկում են գործնական միջոցներ տեղ գտած թերություններն ու վրիպումներն ուղղելու համար, իսկ անհրաժեշտության դեպքում արդյունքները քննարկման են ներկայացնում քաղկոմ-շրջկոմներին: Նման վերահսկողական բնույթի աշխատանք են ծավալում շատ կուսակցական հանձնաժողովներ, այդ թվում ՀԿԿ Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղաքային, Օրջոնիկիձեի, 26 կոմիսարների անվան, Աշտարակի, Կրասնոսելսկի, Կալինինոյի, Էջմիածնի, Ղափանի շրջանային կոմիտեներին առընթեր կուսհանձնաժողովները:

Այսպես, ՀԿԿ Կալինինոյի շրջկոմին առընթեր կուսհանձնաժողովը (նախագահ՝ Մ. Ստաշևսկի) 1979 թ. բազմակողմանիորեն ուսումնասիրել և շրջանային կոմիտեի քննարկմանն է ներկայացրել մի քանի կարևոր հարցեր, որոնց մի մասը՝ աշխատավորներից ստացված դիմումների ու ահազանգերի ստուգման հիման վրա: Այսպես, կարի ֆաբրիկայի Կալինինոյի մասնաճյուղի մի խումբ աշխատողներ դիմել էին կուսշրջկոմին և իրենց վրդովմունքն արտահայտել ձեռնարկության գլխավոր ինժեներ Ջ. Պերճյանի անօրինական արարքների վերաբերյալ: Շրջկոմին առընթեր կուսհանձնաժողովի ստուգումներից պարզվել էր, որ, իրոք Ջ. Պերճյանը, չարաշահելով պաշտոնական դիրքը և բռնելով անազնվության ուղին, աշխատանքի ընդունելիս բանվորներից փող է կորզում: Ստուգման արդյունքները և ձեռք բերված ապացույցները հանձնվեցին դատաքննչական մարմիններին. դրամաշորթը ենթարկվեց քրեական պատասխանատվության:

Նույն հանձնաժողովը սովետական առևտրի կանոնների խախտման կոպիտ փաստեր է հայտնաբերել Կալինինոյի շրջկոոպում և հասել այն բանին, որ մեղավոր անձինք ստացել են արժանի պատիժ: Այստեղ հասարակական սննդի առանձին աշխատողներ շահադիտական նկատառումներով խանութից ձեռք՝ են բերել 300 շիշ օղի, դրանք կնքել հասարակական սննդի միավորման կնիքով և վաճառքի հանել վերադիր գներով: Գործարքը կատարվել է հասարակական սննդի միավորման դիրեկտոր, կուսանդամ Ա. Բաղդասարյանի և գույքագրող, դարձյալ կուսանդամ Ս. Պետրոսյանի գիտությամբ և նրանց անմիջական մասնակցությամբ: ՀԿԿ Կալինինոյի շրջկոմի բյուրոն, քննարկելով ստուգման արդյունքները, նշված անձանց վտարեց կուսշարքերից, իսկ ժողովրդական դատարանը նրանց դատապարտեց ազատազրկման հինգ տարի ժամկետով: Շրջկոմի բյուրոն կուսակցական պատասխանատվության ենթարկեց նաև շրջկոոպի նախագահ, ՍՄԿԿ անդամ Հ. Ամիրխանյանին և նրան ազատեց զբաղեցրած պաշտոնից:

Կուսհանձնաժողովն իր նախաձեռնությամբ, ինչպես նաև կուսշրջկոմի մյուս բաժինների հետ միասին ուսումնասիրել է ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարման վիճակը Մեծավանի գորգագործական ֆաբրիկայի, Լենինհովիտի սովխոզային, Սարատովկայի կոլտնտեսային կուսկազմակերպություններում, կուսշարքերի աճի և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի, կոմունիստների կողմից կուսակցական ու հասարակական պարտականությունների կատարման վիճակը՝ տրիկոտաժի ֆաբրիկայի մասնաճյուղի և Մեդովկայի կոլտնտեսային կուսկազմակերպություններում, հաշվետու-ընտրական ժողովներում արված քննադատական դիտողությունների և առաջարկների կենսագործման ընթացքը՝ № 12 շարժական շարասյան և ջրային տնտեսության վարչության կուսկազմակերպություններում:

ՍՄԿԿ Կենտկոմը 1974 թ. դեկտեմբերի 25-ին հատուկ որոշում ընդունեց քաղաքային ու շրջանային կոմիտեներին առընթեր կուսակցական հանձնաժողովների դերի և ակտիվության բարձրացման մասին: Համապատասխան կուսակցական կոմիտեներին հանձնարարվեց համալրել այդ հանձնաժողովները սկզբունքային և փորձառու աշխատողներով, լայնորեն ներգրավել նրանց կուսանդամների և կուսթեկնածուների կողմից ՍՄԿԿ ծրագրի և կանոնադրության, կուսակցական կարգապահության ու էթիկայի խախտման վերաբերյալ ստացված ահազանգերի ստուգմանը: Այդ որոշման պահանջները կատարելու նպա-



տակով ՀԿԿ Կենտկոմը վերջին տարիներին բազմապիսի միջոցներ է ձեռնարկել, մասնավորապես, խորապես վերլուծել կուսհանձնաժողովների աշխատանքի արդյունքները, դրանք քանիցս դարձրել հատուկ քննարկման առարկա: Նույն ձևով գրեթե բոլոր քաղկոմ-շրջկոմները տարին մեկ անդրադառնում են կուսհանձնաժողովների գործունեությանը, բազմակողմանի քննարկում այն, օգնում հանձնաժողովներին նրանց աշխատանքի հետագա բարելավման գործում:

Կուսհանձնաժողովների գործունեությանը պարբերաբար անդրադառնում է հանրապետական և տեղական մամուլը, որը մեզ շատ բանով է օգնում՝ ապահովելու կուսակցական վերահսկողության հրապարակայնությունը, ընդլայնելու դրա ներգործության շրջանակները:

Չնայած այն բանին, որ կուսհանձնաժողովները լայնորեն օգտվում են արտահաստիքային ակտիվիստների օգնությունից ու աջակցությունից, այնուամենայնիվ, նրանց հնարավորությունները սահմանափակ են, ուստի և չպետք է հրապուրվեն մեծաքանակ ստուգումներով ու բազմաթիվ որոշումներ ընդունելով: Որոշիչն այստեղ ոչ թե քանակն է, այլ ստուգումների, ուսումնասիրությունների որակը, նրանց խորությունը, բարձրացվող հարցերի հասարակական կարևորությունը, թերությունները շտկելու կարողությունն ու հմտությունը:

Կուսակցական հանձնաժողովի առաջ քաշած յուրաքանչյուր հարց պետք է լինի նշանակալից երևույթ տվյալ կուսակցական կազմակերպության կյանքում, այն պետք է խոր հետք թողնի կոմունիստների, ողջ կոլեկտիվի հիշողության մեջ, խստապահանջության և միաժամանակ ուշադիր ու հարգալից վերաբերմունքի դաս հանդիսանա բոլորի համար:

Մեր մի շարք քաղկոմ-շրջկոմներ իրենց պլենումներում, բյուրոյի նիստերում պարբերաբար անդրադառնում են կուսշարքերի որակական աճի, կադրերի ընտրության, նրանց պատասխանատվության բարձրացման, կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման, վերահսկողության ու կատարման ստուգման, քննադատության և ինքնաքննադատության ծավալման, կոմունիստների քաղաքական ուսուցման, նրանց աշխատանքային և հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման հարցերին, հարցեր, որոնք անմիջականորեն բխում են ՍՄԿԿ կանոնադրության պահանջներից: Սակայն, ցավոք, առանձին կուսակցական կոմիտեներ տարիներ շարունակ չեն անդրադառնում կուսակցության ծրագրի և կանոնադրության պահանջների կատարման հարցերին, չեն հետաքրքրվում, թե սկզբնական կուսկազմակերպությունները ինչպես են վերահսկում այդ պահանջների կատարումը, այդ առնչությամբ հաշվետվություններ չեն քննարկում: Սա աններելի վրիպում է:

ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը, Կենտկոմի կուսակցական-կազմակերպական աշխատանքի և պրոպագանդայի ու ագիտացիայի բաժինների հետ միասին, 1979 թ. վերջերին ուսումնասիրեց ՍՄԿԿ կանոնադրության պահանջների անշեղ կենսագործման ոգով կոմունիստներին դաստիարակելու ասպարեզում Արարատի կուսշրջկոմի և շրջանի կուսակցական կազմակերպությունների կատարած աշխատանքը: ՀԿԿ Կենտկոմի բյուրոն բազմակողմանիորեն քննարկեց ստուգման արդյունքները և այդ առթիվ ընդունեց խիստ կարևոր որոշում: Արժեքավորվեց այն փաստը, որ Արարատի շրջանի աշխատավորները 1977 և 1978 թվականներին հաղթող են ճանաչվել համամիութենական սոցիալիստական մրցությունում և արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշին: Դա, անշուշտ, շրջանի աշխատավորության, կուսակցական, սովետական, տնտեսական կազմակերպությունների լարված և քրտնաջան աշխատանքի արդյունքն է:

Այդուհանդերձ, ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ շրջանի աշխատավորության ձեռք բերած հաջողությունները շատ ավելին կլինեին, եթե դրանք մշտապես ամրապնդվեին կուսակցական կազմակերպությունների ամենօրյա և հետևողական կազմակերպական ու գաղափարական-դաստիարակչական աշ-

*խստանքով, ճկուն ու մտածված կադրային քաղաքականությամբ, հստակորեն իրականացվող վերահսկողությամբ, կատարման ստուգման ճիշտ կազմակերպմամբ, աշխատանքի արդյունքների քննադատական վերլուծությամբ։ Պարզվեց, որ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հազվադեպ են անդրադառնում կոմունիստների կողմից կուսակցության կանոնադրության պահանջների կատարման հարցերին, պրակտիկա չեն դարձրել այդ առթիվ կոմունիստների հաշվետվությունների քննարկումը, իսկ առանձին դեպքերում սկզբունքային կուսակցական գնահատական չեն տալիս այն կոմունիստների վարքագծին, ովքեր խախտում են ՍՄԿԿ կանոնադրությունը, կուսակցական ու պետական կարգապահությունը, արատավորում կոմունիստի վեհ կոչումը։*

*Կուսշրջկոմի ապարատում, մի շարք սկզբնական կուսկազմակերպություններում վերահսկողության և կատարման ստուգման հստակ սիստեմ գոյություն չունի, ընդունված որոշումների մեծ մասը չի վերահսկվում և անկատար է մնում։ Շրջանի կոմունիստների 30 տոկոսից ավելին չունեն կուսակցական հանձնարարություններ, նրանցից ոչ բոլորն են ապահովում իրենց ավանգարդային դերը արտադրության մեջ և օրինակելի վարքագիծ դրսևորում հասարակական կյանքում։ Դեռևս թույլ է շրջանի կուսկազմակերպությունների պայքարը մեր հասարակությանը խորթ երևույթների , մասնավոր սեփականատիրական և սպառողական տրամադրությունների դրսևորումների, հանցագործությունների, սոցիալիստական սեփականության հափշտակումների, անտնտեսավարության և հավելագրումների դեմ։*

*Ընդունված որոշմամբ Կենտկոմի բյուրոն պարտավորեցրեց Արարատի կուսշրջկոմին՝ մշակել և իրականացնել նշված թերություններն ու սխալները շտկելու միջոցառումներ և հանձնարարեց շրջանի կուսակցական կազմակերպություններին՝ ուշադրությունը կենտրոնացնել կոմունիստների կողմից ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարման վերահսկողության, կուսշարքերի միասնության և միաձուլության հետագա ամրապնդման, բարձր կազմակերպվածության, կարգ ու կանոնի հաստատման վրա, կոմունիստներին դաստիարակել լենինյան կուսակցականության, սկզբունքայնության, թերությունների նկատմամբ անհաշտվողականության ոգով։*

*Ի պատիվ Արարատի շրջանի կուսկազմակերպությունների՝ հարկ է նշել, որ նրանք հարցի ուսումնասիրության իսկ ընթացքում ձեռնամուխ եղան սխալների ու թերությունների շտկմանը, իսկ շրջանային կոմիտեի պլենումը բազմակողմանիորեն քննարկեց այդ հարցը, մշակեց գործողությունների հստակ ծրագիր, որն այժմ հետևողականորեն իրականացվում է։*

*Կոմունիստների անհատական գործերի քննարկման պրակտիկան շատ բան է ասում սկզբնական կուսկազմակերպությունների, քաղաքային ու շրջանային կոմիտեների աշխատանքի ոճի, նրանց սկզբունքայնության ու պահանջկոտության, կոմունիստների նկատմամբ ցուցաբերած վերաբերմունքի մասին։ Այդ պրակտիկան ամենից առաջ վկայում է, որ ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումից հետո շատ բան է փոխվել։ Եթե նախկինում ՍՄԿԿ կանոնադրության պահանջներ չկատարող, կուսակցական ու պետական կարգապահությունը խախտող, պաշտոնական դիրքը չարաշահող, սոցիալիստական սեփականության նկատմամբ ոտնձգություններ կատարող, քրեական պատասխանատվության ենթարկված կոմունիստների նկատմամբ հաճախ դրսևորվում էր անսկզբունք և լիբերալ վերաբերմունք, այդ անվայել արարքներին մի շարք դեպքերում սկզբունքային կուսակցական գնահատական չէր տրվում, ապա իրերի փաստական վիճակն այժմ զգալիորեն փոխվել է։*

*Շատ սկզբնական կուսկազմակերպություններ, քաղաքային ու շրջանային կոմիտեներ այժմ կոմունիստների անհատական գործերը քննարկելիս խստիվ պահպանում են ՍՄԿԿ կանոնադրության պահանջները, նրանց ներկայացված մեղադրանքը հիմնավորում են բազմակողմանիորեն, հանգամանորեն վերլուծում կուսակցական ու պետական կարգապահության խախտումների պատճառները և, որպես կանոն, ընդունում սկզբունքային ու հիմնավորված որոշումներ։*



*Այդ աշխատանքների բարելավման գործում նշանակալի դեր խաղաց ՀԿԿ Կենտկոմի 1978 թ. մայիսի 10-ի՝ «Հանրապետության կուսակցական կազմակերպություններում կոմունիստների անհատական գործերի քննարկման ժամանակ ՍՄԿԿ կանոնադրության պահանջները պահպանելու մասին» որոշումը։ Ուսումնասիրությունները, սակայն, ցույց են տալիս, որ աշխատանքի բարոյահոգեբանական առումով այդ դժվարին և նուրբ բնագավառում թերություններն ու սխալները դեռևս շատ են։*

*ՍՄԿԿ կանոնադրության պահանջները չկատարող, կուսակցական ու պետական կարգապահությունը խախտող, կոմունիստի բարձր կոչումն արատավորող անձանց նկատմամբ լիբերալ և անսկզբունք վերաբերմունքի փաստերը չնայած զգալիորեն պակասել են, բայց և այնպես դրանք ամենևին հաղթահարված չեն։ Որոշ սկզբնական կուսկազմակերպություններ, քաղաքային ու շրջանային կոմիտեներ դեռևս շարունակում են թերությունների հետ հաշտվողականության, «խաղաղ գոյակցելու» անսկզբունք քաղաքականությունը, որը չափազանց վնասակար է։*

*Մի քանի ամիս առաջ ՀԿԿ Կենտկոմում դիմում էր ստացվել այն մասին, որ գյուղական շինարարության մինիստրության Կամո քաղաքի № 7 շինտրեստի շինարարական իրերի կոմբինատի դիրեկտոր, ՍՄԿԿ անդամ Վ. Խաչիկյանը չարաշահում է իր պաշտոնական դիրքը, դրսևորում մասնավոր սեփականատիրական ձգտումներ։ Այդ դիմումն ուղարկվեց ՀԿԿ Կամոյի շրջկոմին՝ այն քննարկելու և միջոցներ ձեռնարկելու առաջարկով։ Մեկուկես ամիս ձգձգելուց հետո կուսշրջկոմը ՀԿԿ Կենտկոմին ձևական պատասխան ուղարկեց՝ նշելով, որ նամակում հիշատակված առանձին փաստեր ճիշտ են։ Մինչդեռ կոմունիստի հարցը չքննարկվեց և նրա արարքին կուսակցական գնահատական չտրվեց։*

*ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսհանձնաժողովը Կենտկոմի շինարարության և քաղաքային տնտեսության բաժնի հետ տեղում ստուգեց նամակում նշված փաստերը և համոզվեց այն բանում, որ մեղադրանքները ճիշտ են։ Շինարարական իրերի կոմբինատի դիրեկտոր Վ. Խաչիկյանը դեռևս 1965 թ., կոլտնտեսության վարչության նախագահ աշխատելիս, Կամո քաղաքում ստացել է երեք սենյականոց հարմարավետ բնակարան։ 1972 թ. նա Երևան քաղաքում գնել է երեք սենյակից բաղկացած մասնավոր բնակարան՝ 86,3 քմ. ընդհանուր բնակելի մակերեսով։ Չբավարարվելով այդ ամենով՝ նա 1977 թ. Կամո քաղաքում գնում է մի կիսակառույց շենք իր հողամասով և, առանց առուծախը համապատասխան ձևով օրինականացնելու և առանց քաղաքային սովետի թույլտվության ու նախագծի, իր որդու՝ Ս. Խաչիկյանի, անվամբ կառուցում է երկհարկանի մի առանձին տուն՝ 196,2 քմ. ընդհանուր և 99,2 քմ. բնակելի մակերեսով։ Ստուգմամբ պարզվել է նաև, որ այդ բնակելի տան վրա օգտագործված շինանյութերի մի մասի ձեռքբերման վերաբերյալ համապատասխան փաստաթղթեր չկան։ Ավելին, հայր և որդի Խաչիկյանները 600 քմ. տնամերձ հողամասի փոխարեն զավթել են 1160 քմ. տարածություն և այն ցանկապատել։ Վ. Խաչիկյանը, մասնագիտությամբ լինելով անասնաբույծ-անասնաբույժ, 1968 թ. նշանակվել է կարի ֆաբրիկայի, 1979 թ.՝ տրիկոտաժի ֆաբրիկայի, իսկ 1975 թ.՝ շինարարական իրերի կոմբինատի դիրեկտոր և բարեխղճություն չի ցուցաբերել իր պարտականությունների կատարման մեջ։ 1974 թ., օրինակ, նրա ղեկավարած տրիկոտաժի ֆաբրիկայում տեղի է ունեցել երկու տոննա վիսկոզի թելի գողություն, սակայն սոցիալիստական սեփականության պահպանությունը չապահովելու համար նրան հայտարարվել է սոսկ նկատողություն, և նա դարձյալ մնացել է ղեկավար պոստում։*

*Երբ այս հարցը նախապատրաստվում էր ՀԿԿ Կենտկոմում քննարկելու, Կամոյի կուսշրջկոմի ղեկավար աշխատողները խնդրեցին ստուգման արդյունքներն ուղարկել իրենց՝ խոստանալով մեղավոր անձանց արարքին տալ պատշաճ կուսակցական գնահատական։ Խնդրանքը հարգվեց, սակայն կուսշրջկոմը մինչև վերջ հետևողական չգտնվեց և սկզբունքային գնահատական չտվեց պաշտոնական դիրքը չարաշահող և անօրինականություններ կատարող կոմունիստի արարքին ու նրա հովանավորների վերաբերմունքին։*

Վերջերս ՀԿԿ Կենտկոմի բյուրոն քննարկեց ժողովրդական դեպուտատների Նոյեմբերյանի շրջանային սովետի գործկոմի նախագահ, կոմունիստ Ս. Անտոնյանի վերաբերյալ ստացված ահազանգերը: Շահադիտական նպատակներով պաշտոնական դիրքը չարաշահելու, անտեսապես ունեզանալու համար բյուրոն նրան վտարեց կուսշարքերից և ազատեց զբաղեցրած պաշտոնից:

Անհանդուրժելին այն է, որ Ս. Անտոնյանը, փոխանակ ակտիվորեն մասնակցելու մեր կյանքի բացասական երևույթների դեմ համընդհանուր պայքարին, որը ծավալվեց ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումից հետո, դավաճանեց կոմունիստի կոչմանը, տարվեց մասնավոր սեփականատիրական ձգտումներով ու յուրայինների անձնական բարեկեցությունը իր համար կյանքի նպատակ դարձրեց: Այդ չարաշահումները տարիներ ի վեր կատարվել են ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի, գործադիր կոմիտեի սկզբնական կուսկազմակերպության, գործկոմում աշխատող կոմունիստների, շրջանի կուսակցական ակտիվի աչքի առջև, սակայն նրանցից և ոչ ոք իր պարտքը չի համարել ժամանակին կարգի հրավիրելու օրինազանցին:

Այդ դառը դասերից անհրաժեշտ է պատշաճ հետևություններ անել: Ամենևին չգերագնահատելով կատարված դրական աշխատանքը, հարկավոր է բոլոր ուժերն ու հնարավորությունները գործադրել՝ լիբերալիզմի և անսկզբունքայնության դրսևորումները մինչև վերջ հաղթահարելու համար: Հատկանշական է, որ քաղաքային ու շրջանային կուսակցական կազմակերպությունների վերջերս տեղի ունեցած կոնֆերանսներն անդրադարձան նաև այդ հարցերին և միջոցառումներ մշակեցին կուսակցական ղեկավարման լենինյան սկզբունքները հետևողականորեն կիրառելու, կոմունիստների կողմից իրենց կանոնադրական պարտականությունների կատարումն ապահովելու, ամենուրեք կարգապահությունն ամրապնդելու համար: Կոնֆերանսների մշակած միջոցառումներում կարմիր թելի պես անցնում է այն միտքը, որ պետք է ամեն ինչ անել՝ ամրապնդելու կուսակցության շարքերը, բարձրացնելու կուսկազմակերպությունների մարտունակությունը, ակտիվորեն պայքարելու լենինյան կուսակցության գծից կատարվող ամեն տեսակի շեղումների դեմ: Խնդիր դրվեց սկզբնական կուսկազմակերպությունների առջև՝ ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարները դիմավորել արժանավայել գործերով, ըստ ամենայնի բարձրացնել կոմունիստների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը:

Հարկ է չմոռանալ, որ ՍՄԿԿ յուրաքանչյուր համագումար մեծ ու պայծառ էջ է մեր կուսակցության պանծալի տարեգրության մեջ: Այդպիսին կլինի նաև առաջիկա XXVI համագումարը: Քիչ ժամանակ է մեզ բաժանում սովետական կոմունիստների մեծ համաժողովից: Յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր կուսկազմակերպություն պարտավոր է դեպի համագումար գնալ ոչ միայն բարձր արտադրական ցուցանիշներով ու նորանոր աշխատանքային սխրանքներով, այլև կուսակցական ազնիվ ու անաղարտ զգացումներով:

---

Քննարկում ենք ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը

# ԿԱԶՄԱԿԵՐՊՈՐԵՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑԵԼ ՏԵՂԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԸ

**Ս. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ վերակառուցումը խոշոր քաղաքատնտեսական խնդիր է, որի իրականացումն ամենուրեք գտնվում է մշտական վերահսկողության ներքո: Ընդ որում, լայն իրավունքներով են օժտվում կառավարման ստորին օղակները և ձեռնարկությունների (միավորումների) աշխատավորական կոլեկտիվները, որոնց նպատակասլաց գործունեությունը ողջ տնտեսական մեխանիզմի հաջող գործողության պարտադիր նախադրյալներից է: Տնտեսական մեխանիզմի վերակառուցման ընձեռած հնարավորությունները լիովին իրականացնելու համար պահանջվում է ավելի սերտորեն կապակցել կառավարման վերին օղակի մարմինների գործունեությունն աշխատավորական կոլեկտիվների, տեղական մարմինների գործարարության զարգացման հետ: ՍՍՀՄ Գերագույն սովետի ընդունած օրենքը՝ ժողովրդական դեպուտատների տեղական սովետների հիմնական լիազորությունների մասին, լայն իրավունքներ է ընձեռում իշխանության ստորին մարմիններին տնտեսության կառավարման ու պլանավորման գործում:

Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման վերաբերյալ ընդունված որոշումները միանգամայն նորովի են լուծում բոլոր մակարդակների մարմինների գործունեության շատ հարցեր, որոնք վերաբերում են էկոնոմիկայի գիտական կառավարմանն ու պլանավորմանը, դրանց կազմակերպական կառուցվածքի կատարելագործմանը, տնտհաշվարկային հարաբերությունների զարգացմանը և մասսաների ստեղծագործական ակտիվության ծավալմանը: Այդ միջոցառումները նախատեսված են երկարատև ժամանակաշրջանի և էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ գործոնների առավել լիակատար օգտագործման համար: Բայց տնտեսավարման ամենալավագույն մեխանիզմն անգամ չի կարող ինքնաբերաբար գործել: Այն կգործի և կտա առավելագույն արդյունք, եթե կառավարման բոլոր օղակների ղեկավարներն ու մասնագետները, բոլոր աշխատավորները կատարելապես տիրապետեն տնտեսավարման նոր մեթոդներին: Իսկ դրա համար պետք է ամենից առաջ սովորել ամենօրյա աշխատանքում բանիմաց կերպով օգտագործել պլանավորման և գնահատման նոր ցուցանիշներն ու չափանիշները, տնտեսական լծակներն ու խթանները: Չէ որ դրանք ուղղված են մեր էկոնոմիկայի զարգացման առանցքային խնդրի՝ ավելի նպատակասլաց ու հաստատակամ լուծմանը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքային ու պետական կարգապահության ամրապնդումը, աշխատանքի արտադրողականության հուսալի աճն ապահովելու միջոցով:

Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման միջոցառումները բարենպաստ պայմաններ են ստեղծում էկոնոմիկայի կառավարմանը ստեղծագործաբար մոտենալու համար։ Ամեն մի ղեկավարի ու մասնագետի պարտքն է լրիվ օգտագործել այդ հնարավորությունները՝ հանուն սովետական էկոնոմիկայի արդյունավետ զարգացման, ժողովրդի բարեկեցության աճի։

Բանն այն է, որ ժողովրդական տնտեսության որոշ տեղամասերում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի հետագա բարձրացման բնագավառում նկատելի առաջխաղացում չի կատարվել։ Ոչ բոլոր տեղերում է հաջողվել հաղթահարել իներցիայի ուժը, վճռականապես մինչև վերջ հասցնել տնտեսական մեխանիզմի շրջադարձը դեպի աշխատանքի որակ ու արտադրողականություն, ստանալ լավագույն վերջնական արդյունքներ՝ ժողովրդական տնտեսության մեջ հսկայական միջոցներ ու ջանքեր ներդնելուց։ Այստեղից էլ հենց առաջացել են անհամամասնություններ, դեֆիցիտներ, անբավարար ռեզերվներ։ Դա վերաբերում է հատկապես առևտրի ցանցն ընդհատումներով մուտք գործող այնպիսի ապրանքներին, որոնք, չգիտես թե ինչու, ընդունված է անվանել «մանրուքներ»։

Առևտրի ուղղակի պարտականությունը համարելով արտադրության վրա առավել ակտիվ ներազդելը, արդյունաբերությունից սպառողին իրոք հարկավոր ապրանքների ձեռքբերումը, ռեսուրսներով օպերատիվ կերպով մանևրումը, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1980 թ.) պլենումը պահանջեց գտնել անփութության և անպատասխանատվության հետևանքով առաջացած ամեն մի «դեֆիցիտի» կոնկրետ մեղավորներին և պատժել նրանց։ Դեռևս գործողության մեջ չեն դրված առկա բոլոր ռեզերվները, կատարելագործման կարիք ունի մասսայական սպառման շատ ապրանքների, հատկապես տնային աշխատանքը թեթևացնող իրերի տեսականին։ Դանդաղ է նորացվում և ընդլայնվում կուլտուր-կենցաղային ու տնտեսական գործածության ապրանքների տեսականին։ Անբավարար քանակությամբ են արտադրվում ամենօրյա պահանջարկ ունեցող այնպիսի ապրանքները, որոնց թողարկումը կարելի է էապես ընդլայնել արտադրական ու կենցաղային թափոնների և հումքի տեղական աղբյուրների առավել արդյունավետ օգտագործման հաշվին։ Դժբախտաբար, հազվագյուտ չեն այնպիսի դեպքերը, երբ հանրապետական մարմինները չեն օգտագործում տեղերում եղած ռեսուրսները ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը զարգացնելու համար և ձգտում են բնակչության պահանջմունքները բավարարել տնտեսական այլ շրջաններից դրանց ներմուծման հաշվին։

Կուսակցության Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում նշվեց, որ կառավարման ու պլանավորման մեխանիզմը, տնտեսավարման մեթոդները և կատարողական կարգապահությունն առայժմ չի հաջողվել բարձրացնել ժամանակակից պահանջների մակարդակին։ Այդ դիտողությունը ամբողջովին վերաբերում է նաև տեղական արդյունաբերությանը։ Եվ դա դժվարացնում է շրջադարձը դեպի արդյունավետությունը, տեղական արդյունաբերության փոխադրումը ինտենսիվ զարգացման ուղու վրա։ Դա է նաև մի շարք բնագավառներում պլանների թերակատարման, ձեռնարկությունների նեղ տեղերի կարևոր պատճառներից մեկը։ Ուստի խնդիր դրվեց, որպեսզի կուլտուր-կենցաղային ու տնտեսական գործածության ապրանքների արտադրությամբ առավել հանգամանորեն, իսկ գլխավորը՝ ձեռներեցությամբ զբաղվեն տեղական արդյունաբերությունը, ժողովրդական դեպուտատների սովետները և այլ տեղական կազմակերպություններ, հաստատակամորեն հնարավորություններ գտնելով այդ ապրանքների թողարկումն ավելացնելու համար և առավելագույնս օգտագործել ներարտադրական ռեզերվները։ Նրանց ուշադրությունը կենտրոնացվում է հատկապես բնակչության պահանջարկին համապատասխան ապրանքների տեսականու ընդլայնման և որակի բարելավման, նոր սպառողական հատկություններ ունեցող իրերի թողարկումը կազմակերպելու հարցերի վրա։

Սակայն այդ խնդրի լուծմանը խանգարում է նշված ապրանքների արտադրության փոշիացման, կրկնօրինակման, զուգահեռության ու գերատեսչական անջատվածության դեռևս շարունակվող անարդյունավետ պրակտիկան, որի մասին չնայած շատ է գրվել ու խոսվել, բայց այն հետզհետե խորանում է,



ընդունելով թե՛ թաքնված և թե բացահայտ ձևեր։ Ուստի, կարծում ենք, նպատակահարմար է ու հրատապ՝ դարձյալ անդրադառնալ տվյալ պրոբլեմի քննարկմանը ՍՄԿԿ Կենտկոմի տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման մասին որոշման և հոկտեմբերյան պլենումի փաստաթղթերի առնչությամբ, «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» նախագծի համաժողովրդական քննարկման կապակցությամբ։

Այդ միջոցառումներով խնդիր է դրված առաջարկություններ մշակել արդյունաբերության կառավարման կազմակերպական կառուցվածքի հետագա բարելավման մասին, դրանցում նախատեսելով գերատեսչական մասնատվածության հաղթահարում, ճյուղային ու տերիտորիալ պլանավորման և նպատակային ծրագրերի իրացման կազմակերպչական ձևերի կատարելագործում, որոնցից պետական մակարդակով և առաջնահերթ կերպով առաջիկա հնգամյակում լուծվելու են նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնման ու որակի բարելավման կոմպլեքսային ժողովրդատնտեսական նպատակային ծրագրով մշակված գիտատեխնիկական պրոբլեմները։ ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը պահանջեց այդ աշխատանքն ավարտել մինչև կուսակցության XXVI համագումարը։

Բանն այն է, որ տարբեր մինիստրությունների ու գերատեսչությունների ձեռնարկություններ կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային տնտեսական ապրանքների թողարկման բնագավառում հստակ պլանավորման ու հաշվառման, աշխատանքի կոորդինացման, միևնույն արտադրության մասնագիտացման ու միասնական ղեկավարման բացակայությունը հնարավորություն չի ընձեռում հասնելու ցանկալի արդյունքի։ Այստեղ նկատի ունենք ոչ թե համախառն արտադրանքի գումարները, այլ արտադրատեսակների օգտակարությունն ու բազմապիսիությունը, որոնք կարող են տալ ձեռնարկությունները և որոնց կարիքն ունի բնակչությունը։

Այդ կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը վերստին խնդիր դրեց պլանավորման մեջ լայնորեն օգտագործել նպատակային ծրագրերի մեթոդը։ Մասնավորապես առաջ քաշվեց այն հարցը, որպեսզի պարենային և ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը զարգացվի լավ կշռադատված, երկարաժամկետ ծրագրերի հիման վրա, որոնք ընդունակ լինեն միավորելու դրանց հետ առնչվող բոլոր ճյուղերի ջանքերը։ Եվ դա բնական է, որովհետև «Բ» խմբի ճյուղերի արագ վերելքը տնտեսական ու քաղաքական առաջնահերթ նշանակություն ունեցող խնդիր է։

Իրոք, ժողովրդի բարեկեցության բարձրացումը պահանջում է լուրջ տեղաշարժեր լայն սպառման ապրանքների արտադրության ասպարեզում, տեղաշարժեր, որոնք շոշափելիորեն ավելացնեին ինչպես այդ ապրանքների քանակը, այնպես էլ բարելավեին որակը, տեսականին։ Վերջապես, դա ուղղակի բխում է այն տնտեսական ստրատեգիայից, որը մշակվել է կուսակցության վերջին համագումարներում, ստրատեգիա, որը նախատեսում է ողջ էկոնոմիկայի շրջադարձ դեպի ժողովրդի բարեկեցության բարձրացման հետ առնչվող բազմապիսի խնդիրների լուծումը։

Ամեն մի այդպիսի ծրագիր իրենից պետք է ներկայացնի այնպիսի միջոցառումների հիմնավորված, ճշգրիտ հաշվարկների վրա հենվող պլան, որոնք նպատակամղված են վերջնական արդյունքին, այս կամ այն պրոբլեմի սպառիչ լուծմանը։ Կարևոր է, որ ծրագրում որոշվեն լուծվող խնդիրների փուլերն ու հերթականությունը, ինչպես նաև ունենան կառավարման այնպիսի համակարգ, որը հստակորեն սահմանի անձնական պատասխանատվություն աշխատանքի յուրաքանչյուր տեղամասի համար և տա անհրաժեշտ իրավունքներ։ Առանց այս ամենի, ինչպես դիպուկ ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, ծրագիրը ոչ թե ծրագիր է, այլ բարի ցանկությունների գումար։ Մի խոսքով, ինչպես պարենային, ագրոարդյունաբերական-առևտրական կոմպլեքսը, այնպես էլ ժողովրդական սպառման նոր ապրանքների արտադրության ավելացման նպատակային ծրագիրը պետք է թե՛ պլանավորվեն, թե՛ ֆինանսավորվեն, թե՛ կառավարվեն որպես միասնական ամբողջություն՝ ապահովելով վերջնական բարձր

արդյունքներ: Այդ կոմպլեքսային ծրագրերը նախապատրաստվելու են այն հաշվով, որ դրանք որպես օրգանական բաղկացուցիչ մաս մտնեն տասնմեկերորդ հնգամյա պլանի մեջ, ինչպես ասված է Հիմնական ուղղությունների նախագծում:

Նպատակահարմար է, օրինակ, միութենական-հանրապետական և միութենական մինիստրությունների (գերատեսչությունների) ձեռնարկությունները, որոնք թողարկում են կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային-տնտեսական ապրանքներ, իրենց վրա վերցնեն միայն տեխնիկապես, տեխնոլոգիապես ու բարդ կոնստրուկցիայի, այդ թվում և միանգամայն նոր ապրանքների թողարկումը: Հենց սրանք են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով և XXVI համագումարի հաստատմանը ներկայացվող Հիմնական ուղղություններով նախատեսված «ծանր արդյունաբերության ձեռնարկություններում ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ասպարեզում դրանց ազդեցության ոլորտի» հիմնավորված սահմանները:

Մինչդեռ այդ ձեռնարկությունները, դրա համար ունենալով որակյալ կադրեր, արտադրական, տեխնիկական ու այլ պայմաններ, հաճախ թողարկում են պարզունակ և հասարակ իրեր, այն էլ փոքր քանակությամբ: Բարդ կենցաղային տեխնիկայի արտադրությունն ընդլայնելու փոխարեն նրանք մեծ մասամբ պարզապես կրկնօրինակում են տեղական արդյունաբերության արտադրանքը: Այսպես, ներկայումս միութենական հանրապետությունների տեղական արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկությունների թողարկած կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային-տնտեսական ապրանքների ընդհանուր տեսակարար կշիռը դրանց արտադրության ծավալում կազմում է միայն 30 տոկոս, որը ամենևին էլ չի համապատասխանում տվյալ մինիստրությունների պրոֆիլին: Դա գերատեսչական անհամատեղությունների, պլանավորման ու կառավարման գիտական հիմունքներից շեղվելու, տնտեսական վոլյունտարիզմի ու սուբյեկտիվիզմի դրսևորումների առկայության, տվյալ ապրանքների արտադրական կազմակերպման օբյեկտիվ գործոնների անտեսման հետևանք է:

Դրա համոզիչ օրինակը կարող է ծառայել հետևյալ իրավիճակը: Ճենապակու-հախճապակու արդյունաբերությունը ամբողջ երկրի մասշտաբով գտնվում է թեթև արդյունաբերության համակարգում, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ շինանյութերի արդյունաբերության և տեղական արդյունաբերության մինիստրությունների տնօրինության ներքո: Ի դեպ, վերջիններս իրար կողքի, զուգահեռաբար զբաղվում են նաև բյուրեղապակյա իրերի ու ամանեղենի արտադրությամբ, որոնք ճենապակու-հախճապակու իրերի ու ամանեղենի հետ միասին մտնում են տեղական արդյունաբերության արտադրանքի անվանացանկի մեջ: Նույնը վերաբերում է ձեռքի գորգագործությանը, որը ժողովրդական գեղարվեստական արդյունագործության տիպիկ, ազգային-ավանդական ճյուղ է: Բայց նույն սուբյեկտիվ նկատառումներով, որոնք պայմանավորված են դարձյալ տարբեր կազմակերպությունների շահերով, մինչև հիմա «Հայգորգ» արտադրամիավորումը ենթարկվում է թեթև արդյունաբերության մինիստրությանը, թեպետ մյուս հանրապետություններում գորգագործական ձեռնարկությունները գտնվում են տեղական արդյունաբերության մինիստրությունների համակարգում:

Ինչ վերաբերում է երաժշտական գործիքներին, այդ թվում՝ դաշնամուրին, ապա դրանց արտադրության ամբողջ ծավալը բոլոր հանրապետություններում, բացի Հայաստանից, կենտրոնացված է տեղական արդյունաբերության սիստեմում: Մինչդեռ Երևանի դաշնամուրի ֆաբրիկան գտնվում է անտառային ու փայտամշակման արդյունաբերության մինիստրության սիստեմում: Ի դեպ, այդ մինիստրության արտադրության ծավալի 90 տոկոսից ավելին կահույք ու դաշնամուր է, որոնք ևս մտնում են տեղական արդյունաբերության արտադրանքի անվանացանկի մեջ:

Հանրահայտ է, որ միութենական-հանրապետական և մինչև անգամ միութենական մինիստրությունները ևս ունեն տեղական կարիքները բավարարող և տեղական հումքով ու թափոններով գործող արտադրություն: Դեռ ավելին, Հա-



յաստանում շինանյութերի, անտառային ու փայտամշակման, թեթև ու սննդի և արդյունաբերության այլ ճյուղերի միութենական-հանրապետական մինիստրությունները հիմնականում կառավարում են այնպիսի արտադրություններ, որոնք բավարարում են գերազանցապես տեղական կարիքները և գրեթե լրիվ կամ զգալի չափով խարսխված են տեղական հումքի ու թափոնների վրա: Մինչդեռ տեղական արդյունաբերության մինիստրության հումքային բազայի ընդհանուր ծավալում բուն տեղական հումքն ու թափոնները կազմում են միայն 7 տոկոս, իսկ տեղական շուկայում իրացվում է նրա ձեռնարկությունների թողարկած արտադրանքի հազիվ կեսը: Ուստի այդ տեսակետից տեղական արդյունաբերության մինիստրությունն ամենևին էլ չի տարբերվում սույն միութենական-հանրապետական մինիստրություններից:

Այստեղից տրամաբանորեն բխում է հետևյալ եզրակացությունը. կոմունիստական շինարարության արդի փուլում, երբ սովետական էկոնոմիկան դարձել է միասնական ժողովրդատնտեսական օրգանիզմ և զարգանում է միասնական, կոմպլեքսային հեռանկարային սոցիալ-տնտեսական պլանով, ներկայիս տեղական արդյունաբերությունը վերածվել է մասնագիտացված ճյուղի, թողարկելով առավելապես կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային-տնտեսական ապրանքներ:

Այսպես, 1975 թ. նկատմամբ, ամբողջությամբ վերցրած տեղական արդյունաբերության մինիստրության արտադրության ընդհանուր ծավալը տասներորդ հնգամյակի վերջում կազմել է 148,8 տոկոս, այդ թվում՝ արտադրամիջոցների արտադրությունը 115 տոկոս, իսկ սպառման առարկաների արտադրությունը 157,3 տոկոս, որից իրեն ներհատուկ արտադրատեսակներինը՝ 168 տոկոս: Տեղական արդյունաբերության արտադրական կառուցվածքում այդպիսի հարաբերակցությունը պայմանավորված է նրա առանձնահատկությամբ, որն արտահայտվում է սպառման առարկաների և հատկապես վերը նշված արտադրատեսակների արտադրության առաջանցիկ աճով: Դրա հետևանքով մինիստրության արտադրության ընդհանուր ծավալում «Ա» խմբի տեսակարար կշիռը 1975 թվականին 20 տոկոսից 1980-ին իջել է մինչև 15,4 տոկոսի, իսկ «Բ» խմբինը՝ համապատասխանաբար՝ 80 տոկոսից հասել է մինչև 84,5 տոկոսի:

Դա կատարվել է տեղական արդյունաբերության ներհատուկ ճյուղերի աճի արագ տեմպերի շնորհիվ: Օրինակ, դրանում քիմիական արդյունաբերությունն ու մետաղամշակումը հինգ տարում աճել են 1,6 անգամ, ապակու և ճենապակու-հախճապակու արդյունաբերությունը՝ 1,5, տեղական արդյունաբերության մյուս ճյուղերը, որոնք բացառապես թողարկում են սույն ապրանքները՝ 1,9 անգամ, այն դեպքում, երբ սև մետալուրգիան աճել է 1,3, իսկ թեթև արդյունաբերությունը՝ 1,4 անգամ: Համապատասխանաբար իջել են տեղական արդյունաբերության վերջին երկու ճյուղերի տեսակարար կշիռը նրա արտադրության ընդհանուր ծավալում: Այդ պրոգրեսիվ տենդենցը, որն սկսվել էր դեռևս նախորդ հնգամյակներում, լրիվ համապատասխանում է տեղական արդյունաբերության զարգացման հիմնական ուղղությունների վերաբերյալ կուսակցության ու կառավարության որոշումներին:

Տասներորդ հնգամյակում տեղական արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումների ծավալը կազմել է 38,3 մլն ռուբլի: Գործարկվել են 36,1 մլն ռուբլու արտադրական կարողություններ և 42,1 մլն ռուբլու հիմնական ֆոնդեր: Արտադրանքի աճը կազմել է 55 մլն ռուբլի, որը գլխավորապես ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման, գործող ձեռնարկությունների ընդլայնման ու վերակառուցման հաշվին:

Արդի փուլում տեղական արդյունաբերության առջև դրված է եռմիասնական խնդիր. ավելացնել արտադրանքի թողարկումը, առավելագույնս օգտագործելով տեղական հումքը, նյութերն ու երկրորդային ռեսուրսները, իրականացնել ձեռնարկությունների հետագա տեխնիկական վերազինում և մասնագիտացնել դրանք երաժշտական գործիքների, ժողովրդական գեղարվեստական արդյունագործության իրերի, հուշանվերների, կենցաղի, տնային տնտեսության, հանգստի, տուրիզմի, ֆիզկուլտուրայի ու սպորտի համար անհրաժեշտ

տարկաների արտադրության գծով՝ նպատակ ունենալով առավել լրիվ բավարարելու բնակչության պահանջարկը դրանց նկատմամբ:

Հաշվի առնելով տեղական արդյունաբերության ճյուղային ավանդական կառուցվածքը, այն հարկավոր է մասնագիտացնել տեխնիկական, տեխնոլոգիական, կոնստրուկցիայի և ֆունկցիոնալ տեսակետից ոչ բարդ տեսակի թեթև արդյունաբերության, կուլտուր-կենցաղային ու տնտեսական ապրանքների, գեղարվեստական իրերի և երաժշտական գործիքների արտադրության մարզում: Ընդ որում, դա նպատակահարմար է իրականացնել ինչպես նոր ձեռնարկություններ կառուցելով, այնպես էլ գործողների գերատեսչական մասնատվածությունը վերացնելու, խոշորացնելու ու միավորելու՝ արտադրատեսակների վերը նշված առարկայական խմբերի բազայի վրա, որոնք ֆունկցիոնալ, կոնստրուկցիայի, տեխնիկայի ու տեխնոլոգիայի առումով միասեռ են:

Ելնելով այդ օբյեկտիվ օրինաչափությունից, մեզ թվում է, հասունացել է տեղական արդյունաբերության կազմակերպական վերակառուցման հարցը. ժամանակն է արմատապես վերափոխել ու վերանվանել ներկայումս գոյություն ունեցող տեղական արդյունաբերության հանրապետական մինիստրությունները և դրանք դարձնել կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային տնտեսական ապրանքների արդյունաբերության միութենական-հանրապետական մինիստրություններ, կենտրոնացնելով նրանց ձեռքում տեխնիկական, տեխնոլոգիական, կոնստրուցիայի ու ֆունկցիոնալ առումով թեթև արդյունաբերության, կուլտուր-կենցաղային ու տնտեսական ոչ բարդ տեսակի ապրանքների, գեղարվեստական ու ոսկերչական իրերի, երաժշտական գործիքների և մանկական խաղալիքների արտադրությունը:

Դա լրիվ բխում է ինչպես աշխատանքի հասարակական բաժանման զարգացման օբյեկտիվ պրոցեսից, այնպես էլ արդյունաբերության կառավարման ու պլանավորման գործող տերիտորիալ-ճյուղային համակարգից: Մինիստրությունների նմանօրինակ միասնականացման շնորհիվ ընդհանուր միութենական կենտրոն կստեղծվի նաև այն ճյուղերի համար, որոնց կառավարումը առայժմ կազմակերպված է միայն հանրապետությունների մակարդակով, ինչպես ներկայիս տեղական արդյունաբերությունն է: ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը, առաջ քաշելով նաև տնտեսական ղեկավարման գործում ցենտրալիզմի ու դեմոկրատիզմի ճիշտ հարաբերակցության ապահովման հարցը, միանգամայն արդարացիորեն շեշտեց, որ երկրի էկոնոմիկան որպես միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս գործում է միջճյուղային և տերիտորիալ-արտադրական կապերի բարդ համակարգի հիման վրա, և, բնականաբար, միայն կենտրոնացված ղեկավարությունը կարող է արդյունավետ կառավարել այդ կոմպլեքսը, որպես միասնական ամբողջություն, հակադրվել գերատեսչական և տեղայնական միտումներին:

Տեղական արդյունաբերության ինքնուրույն ճյուղի վերածվելը փաստարկվում է նաև հետևյալ հանգամանքներով. վաղուց դիրեկտիվ, պլանային ու վիճակագրական փաստաթղթերում այն հոլովվում է որպես կուլտուր-կենցաղային ու տնտեսական ապրանքների արտադրության ինքնուրույն ճյուղ, իսկ երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլաններում հաստատվում են գեղարվեստական արդյունագործությունների արտադրանքի թողարկման առաջադրանքները՝ «Ժողովրդական գեղարվեստական արդյունագործությունների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թվականի հունվարի հայտնի որոշմանը համապատասխան: Դա առանձին կետով նշված է նաև Հիմնական ուղղությունների նախագծում, որտեղ ասված է՝ «Կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների թողարկումն ավելացնել առնվազն 1,4 անգամ, զգալիորեն բարձրացնել այդ ապրանքների որակը, մշտապես նորացնել և բարելավել դրանց տեսականին»:

Ի դեպ, «կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքներ» ընդունված տերմինից շեղումը պայմանավորված է հենց ժողովրդական գեղարվեստական արդյունագործությունների վերակենդանացմամբ և բուռն զարգացմամբ, որի առնչությամբ մամուլում և գիտական ուսումնասիրություններում ավելի ու ավելի է օգտագործվում «կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային-տնտեսա-



կան ապրանքներ» տերմինը: Հետևաբար, իմաստ կա այդ տերմինը դարձնել պաշտոնական նաև դիրեկտիվ, պլանային, վիճակագրական ու գերատեսչական փաստաթղթերում, և արտադրության այդ ճյուղն այսուհետև կոչել այսպես՝ «կուլտուր-գեղարվեստական և կենցաղային-տնտեսական ապրանքների արդյունաբերություն», համապատասխան ճշտում մտցնելով նաև Հիմնական ուղղություններում:

Ինչ վերաբերում է այդ ծրագրային փաստաթղթում սահմանված տեղական արդյունաբերության զարգացման հիմնական ուղղություններին, ապա դրանք ավելի հիմնավոր ու պարզորոշ շարադրման կարիք ունեն, քանի որ դրանում կոնկրետ չի նշված տեղական արդյունաբերության ճյուղային մասնագիտացումն այնպես, ինչպես դա արված է կուսակցության XXV համագումարի կողմից՝ տասներորդ հնգամյակի համար, որի գլխավոր կուրսը, ինչպես հայտնի է, շարունակվելու է նաև տասնմեկերորդ հնգամյակում և ավելի երկարաժամկետ հեռանկարում:

Հաշվի առնելով տեղական արդյունաբերության ճյուղային ավանդական կառուցվածքը, առաջարկում ենք Հիմնական ուղղություններում նրա խնդիրները շարադրել «կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների թողարկումը» կետի վերջում՝ հետևյալ խմբագրությամբ. «Տեղական արդյունաբերությունը վերափոխել կուլտուր-գեղարվեստական և կենցաղային-տնտեսական ապրանքների արտադրության ինքնուրույն ճյուղի, ապահովել նրա մեջ արտադրանքի ծավալի աճը մոտ 1,4 անգամ, առավելապես տեխնիկական, տեխնոլոգիական, կոնստրուկցիայի և ֆունկցիոնալ տեսակետից ոչ բարդ տեսակների բազմապիսի ու բարձր որակի թեթև արդյունաբերության, կուլտուր-կենցաղային ու տնտեսական ապրանքների, գեղարվեստական, ոսկերչական, ճենապակու, հախճապակու և բյուրեղապակու իրերի, մետաղյա ամանեղենի ու խոհանոցային պիտույքների, երաժշտական գործիքների ու մանկական խաղալիքների արտադրության ուղղությամբ մասնագիտացնելու և ինդուստրացնելու հաշվին՝ ժամանակակից նյութատեխնիկական բազայի, տեղական ու երկրորդային հումքային և աշխատանքային ռեսուրսների առավելագույն օգտագործման հնարավորությունների վրա»:

Այդպիսով, ներկա տեղական արդյունաբերությունը կվերափոխվի հանրային արտադրության լիիրավ, ինքնուրույն, մասնագիտացված ճյուղի և ձեռք կբերի ռացիոնալ ներճյուղային կառուցվածք, վերջ կդնի իր բազմադեմ պրոֆիլին, կարագացնի իր պրոգրեսիվ վերաճումը բարձր որակի կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային-տնտեսական ապրանքների արտադրության ժամանակակից ինդուստրիայի: Իսկ պլանային, մատակարարող, իրացնող և ֆինանսական մարմինները նրա նկատմամբ կունենան նույն վերաբերմունքը, ինչպիսին դրսևորում են արդյունաբերության բոլոր մնացած ճյուղերի նկատմամբ:

Այստեղից հարց է ծագում. ինչպե՞ս վարվել տեղական արդյունաբերության ձեռնարկությունների շահույթներից մասհանումների հաշվին տեղական բյուջեների եկամտային մասն անհրաժեշտ ֆինանսական միջոցներով ապահովելու հետ, եթե այն վերափոխվի նույնպիսի մասնագիտացված ճյուղի, ինչպես արդյունաբերության մնացած բոլոր ճյուղերը: Այդ հարցը, մեզ թվում է, պետք է լուծել ոչ թե լոկալ, այլ գլոբալ ձևով, ելնելով զարգացած սոցիալիստական հասարակության և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի անմիջական ստեղծման փուլում տնտեսական ղեկավարման գործում ժողովրդական դեպուտատների սովետների դերի բարձրացման օբյեկտիվ օրինաչափությունից՝ ՍՍՀՄ նոր սահմանադրության 146 և 147 հոդվածների համաձայն: Դա նշանակում է, որ արդեն հասունացել է անհրաժեշտությունը՝ ապահովելու տեղական բյուջեների եկամուտները ո՛չ միայն ներկայիս տեղական արդյունաբերության ձեռնարկությունների, այլև տեղերում գտնվող բոլոր արտադրական օբյեկտների շահույթներից մասհանումների հաշվին, անկախ դրանց գերատեսչական ենթակայությունից, ինչպես նախատեսված է ՍՍՀՄ Գերագույն սովետի ժողովրդական դեպուտատների մարզային, երկրամասային և օկրուգային սովետների հիմնական լիազորությունների մասին օրենքով:

Այդպիսով, ժողովրդական դեպուտատների սովետների տնտեսական գոր-

ծունեությունն է՛լ ավելի կնպաստի հասարակական արտադրության արդյու-
նավետության բարձրացմանը, կուսակցության նշած սոցիալական լայն ծրագրի
կատարմանը: Դրանով իսկ կարագացվի գերատեսչական անջատվածության,
զուգահեռության, կրկնօրինակման և ամեն կարգի անհամամասնության վե-
րացումը «հազար մանրուքների» ինդուստրիայի ոլորտում:
Ինչ վերաբերում է ոչ արդյունաբերական մինիստրություններին, գերա-
տեսչություններին, ստեղծագործական և այլ հասարակական կազմակերպու-
թյուններին, ապա անհրաժեշտ է նրանց ազատել արդյունաբերական գործու-
նեությունից և նպատակամղել իրենց բուն ծառայությունների ոլորտի արմա-
տական բարելավմանն ու բարձրացմանը:
Դրա հետ մեկտեղ, հարկ կա պլանային մարմիններում տեղական արդյու-
նաբերության կուլտուր-կենցաղային ապրանքների ու բնակչության սպասարկ-
ման բաժնից առանձնացնել տեղական արդյունաբերությունն ու կուլտուր-կեն-
ցաղային ապրանքները և դրանց բազայի վրա ստեղծել կուլտուր-գեղարվես-
տական ու կենցաղային-տնտեսական ապրանքների արտադրության պլանա-
վորման ինքնուրույն բաժին, իսկ բնակչության կենցաղսպասարկման պլանա-
վորման ֆունկցիան հանձնել բնակ-կոմունալ տնտեսության բաժնին, այն վե-
րանվանելով բնակ-կոմունալ-կենցաղային տնտեսության բաժին:
Նման միջոցառումը միանգամից կլուծի մի ամբողջ շարք պրոբլեմներ:
Նախ, այն կապահովի կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային-տնտե-
սական ապրանքների արտադրության պլանային առաջադրանքների լրիվ հա-
մաձայնեցվածությունը, թույլ կտա գործնականորեն պլանավորել դրանց պատ-
րաստումը տեղերում գտնվող բոլոր ձեռնարկություններում:
Այնուհետև, կոմպլեքսայնորեն կօգտագործվեն տեղական և երկրորդային
հումքային ռեզերվները, կբացառվեն պետական նյութական, ֆինանսական
ու աշխատանքային ռեսուրսների անտնտեսվար ծախսումները և չարաշա-
հումները: Ապա, կհաղթահարվեն տարբեր ճյուղերի կողմից միևնույն ար-
տադրանքի թողարկման կրկնօրինակումը և արտադրական կարողությունների
զուգահեռ ու չարդարացվող աճը, կարագացվեն բարձրորակ իրերի արտա-
դրության ավելացման տեմպերը և կհեշտացվի դրանց հաշվառման գործը:
Վերջապես, դա հնարավորություն կընձեռի վերջ դնելու տնայնագործու-
թյանն ու միանման ձեռնարկությունների գերատեսչական անջատվածությանը
և արդյունավետ լուծելու դրանց համակենտրոնացման, մասնագիտացման ու
ռացիոնալ տեղաբաշխման հարցերը, հաջողությամբ կազմակերպելու տնտ-
հաշվարկային արդյունաբերական, արտադրական, գիտաարտադրական, գի-
տատեխնիկական ու այլ միավորումներ և արմատապես վերակառուցելու ար-
դյունաբերության այդքան կարևոր ու առանձնահատուկ ճյուղի տնտեսական
ղեկավարման ողջ համակարգը:

---

# ԿՐԹՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՉԱՓԱՆԻՇՆԵՐԸ

**Ա. Օ. ՂԱԶԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ սոցիալ-տնտեսական պրո-
ցեսների պլանավորումը, ինչպես նաև կառավարման
կատարելագործումը զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի հանգուցային խըն-
դիրներից են: Եվ պատահական չէ այն հետաքրքրությունը, որը վերջին տարի-
ներս գիտական գրականությունը դրսևորում է ժողովրդական կրթության էկո-
նոմիկայի ու պլանավորման կատարելագործման հարցերի նկատմամբ:
Մեր նպատակն է վերլուծել հանրապետությունում ժողովրդական կրթու-
թյան պլանավորման կատարելագործման և կադրերի պատրաստման արդյու-
նավետության բարձրացման մի քանի հարցեր:
Եթե կրթության տերիտորիալ պլանավորման ու կանխատեսման խնդիր-
ները ողջ երկրի մասշտաբով բավականաչափ հետազոտված են, ապա նույնը,
ցավոք, չի կարելի ասել մեր հանրապետության մասին: Վերջին երեք տաս-
նամյակում հանրապետության ժողովրդական կրթության ցանցում սովորող-
ների թիվն աճել է ավելի քան 2,9 անգամ և 1979—1980 թթ. ուսումնական
տարվա սկզբին հասել մեկ միլիոն 134 հազարի: Ընդ որում, բուհերում սովո-
րողների թիվն ավելացել է շուրջ 3,9 անգամ:
Հայկական ՍՍՀ-ում հետպատերազմյան 34 տարիներին կառուցվել և շա-
հագործման են հանձնվել 645 հազար աշակերտական տեղով դպրոցական շեն-
քեր: Դրա շնորհիվ 1978—79 ուսումնական տարում առաջին հերթի պարապ-
մունքներում ընդգրկված էին հանրակրթական դպրոցներում սովորողների 85,6
տոկոսը: Զգալի տեղաշարժեր են կատարվել հատկապես հանրապետության
պրոֆտեխնիկական ուսումնական հաստատությունների ցանցի ընդլայնման և
համակարգի կատարելագործման ասպարեզում: 1950 թվականի համեմատ,
1979 թվականին պրոֆտեխնիկական ուսումնարաններում ու դպրոցներում սո-
վորողների թիվն ավելացել է 16,6 անգամ: Այժմ մեր հանրապետության շուրջ
100 պրոֆտեխնիկական ուսումնարաններում սովորում են ավելի քան 50 հա-
զար պատանիներ ու աղջիկներ, որոնց 80 տոկոսը կստանա միջնակարգ կըր-
թություն: Առաջիկայում պրոֆտեխնիկական բոլոր ուսումնարաններում ու դըպ-
րոցներում կպատրաստվեն միայն միջնակարգ կրթությամբ բանվորական
կադրեր:
Պատմական կարճ ժամանակահատվածում բնակչության կրթական մա-
կարդակով Հայկական ՍՍՀ-ն միութենական հանրապետությունների մեջ գրա-
վեց առաջնակարգ տեղերից մեկը: Այսպես, 1970 թ. յուրաքանչյուր 10 հազար
բնակչին ընկնում էր 214 ուսանող՝ Միության միջին ցուցանիշի 188-ի համե-
մատ: Վերջին մարդահամարների միջև ընկած տարիներին (1970—1979 թթ.)
ՍՍՀՄ բնակչությունն ավելացել է 9 տոկոսով, իսկ Հայկական ՍՍՀ բնակչու-
թյունը՝ 22 տոկոսով կամ մոտ 2,5 անգամով ավելի: Դրա հետևանքով 1978
թվականին, յուրաքանչյուր 10 հազար բնակչի հաշվով, հանրապետության բու-

հերում սովորողների թիվը կազմեց 192, Միության 195-ի համեմատ։ Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման քանակական և որակական աճի բարձր տեմպերին համապատասխան, բարձրացավ արտադրական և սպասարկման ոլորտներում մասնագիտական կադրերի հագեցվածության աստիճանը։ Բավական է ասել, որ հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետների ընդհանուր թիվը վերջին երկու տասնամյակներին աճել է մոտ 4 անգամ և կազմել ամբողջ բանվոր-ծառայողների թվի 24 տոկոսը։ Մեր հանրապետության յուրաքանչյուր 1000 աշխատողից 135-ն ունի բարձրագույն կրթություն։ Ընդ որում, դրանց զգալի մասը, ավելի ստույգ՝ 18 տոկոսը, ընդգրկված է կրթության ոլորտում։ Այս բնագավառում զբաղված աշխատանքային ռեսուրսների որակական մակարդակի մասին պատկերացում են տալիս հետևյալ տվյալները։ 1980 թվականի հունվարի 1-ի դրությամբ՝ հանրապետության դպրոցներում և տեխնիկումներում աշխատող մանկավարժների 76 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, բուհերի դասախոսների շուրջ 49 տոկոսը՝ դոկտորական և թեկնածուական աստիճաններ։

Ժողովրդական կրթության սոցիալ-տնտեսական պրոբլեմների վերաբերյալ կուսակցության ու կառավարության վերջին տարիների որոշումները, որոնք բխում են լենինյան այն ցուցումներից, թե կոմունիզմի կառուցումը հնարավոր չէ առանց գիտատեխնիկական առաջընթացի, առանց կուլտուրայի ու կրթության բուռն վերելքի, նախանշում են ժողովրդական կրթության համակարգի հետագա զարգացման, կառավարման և պլանավորման մեթոդների կատարելագործման ուղիները։ Այդ առումով կարևոր է հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թվականի «Բարձրագույն դպրոցի հետագա զարգացման և մասնագետների պատրաստման որակի բարձրացման մասին» որոշումը, որտեղ խնդիր է դրվում բարելավել մասնագետների պատրաստման պլանավորումը, նրանց բաշխումը կատարել ուսումնական հաստատություններն ավարտելուց մեկ-երեք տարի առաջ։

Ժողովրդական կրթությունը և կադրերի պատրաստումն ու պլանավորումն անընդմեջ պրոցես է, որի յուրաքանչյուր ցիկլը սովորաբար տևում է 10—15 և ավելի տարիներ։ Այդ ընթացքում ժողովրդական տնտեսության մեջ կատարվող կառուցվածքային, քանակական և որակական տեղաշարժերը թելադրում են տևական ժամանակաշրջանի համար կրթության զարգացման պլանավորման անհրաժեշտությունը։ Եթե հարցը քննարկենք այս առումով, ապա ակնհայտ կդառնա, որ կրթության ցանցի, հատկապես միջին ու բարձր որակավորում ունեցող մասնագետների պատրաստումը պլանավորելու համար հնգամյակի շրջանակները նեղ են. անհրաժեշտ է հաշվի առնել ո՛չ միայն ժողովրդական տնտեսության այսօրվա պահանջներն ու մակարդակը, այլև հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարները, ռեգիոնալ ու դեմոգրաֆիկ գործոնները։

Բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության ընթացիկ և հեռանկարային պլաններում կարևոր է մասնագետ կադրերի լրացուցիչ պահանջի ճիշտ որոշումը։ Կադրերի պատրաստման և տեղաբաշխման տերիտորիալ պլանավորման ժամանակ անհրաժեշտ է կոորդինացնել և բալանսավորել միութենական հանրապետությունների, մինիստրությունների և գերատեսչությունների, քաղաքների, շրջանների և ճյուղերի պահանջները, ելնելով որոշակի մասնագետներով դրանց հագեցվածության ներկայիս մակարդակից, զարգացման հեռանկարներից ու կառուցվածքային տեղաշարժերից։ Այդ կապակցությամբ, ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարներին համապատասխան, անհրաժեշտ է կրթության միասնական կոմպլեքսային պլանների և հաշվեկշիռների մշակում՝ սկսած նախադպրոցական հիմնարկություններից մինչև բարձրագույն ուսումնական հաստատությունները։

Ժողովրդական կրթության և մասնագետների պատրաստման պլանավորումը կատարելագործելու կարևոր ուղղություններից են ուսումնական հաստատությունների զարգացման, մասնագիտացման և տեղաբաշխման, մասնագետների նկատմամբ ժողովրդական տնտեսության հեռանկարային պահանջի որոշման նորմատիվային և հաշվեկշռային մեթոդների լայն կիրառումն ու հետագա կատարելագործումը։ Ինքնին բարդ այդ հարցի լուծումն ավելի է բարդանում նրանով, որ երկրում չկա շատ մասնագիտությունների համար կադրերի պահանջը որոշելու գիտականորեն հիմնավորված մեթոդիկա։ Բանն այն է, որ ժողովրդական կրթության զարգացման և մասնագետների պատրաստման պլանի ցուցանիշների համակարգը կազմավորվել է շատ տարիներ առաջ և գրեթե չի կատարելագործվել, որի հետևանքով պլանի առանձին բաժիններում բնեղեն և արժեքային ցուցանիշներն իրար հետ անբավարար են կապակցվում և համաձայնեցվում։

Ժողովրդական կրթության զարգացման պլանում ներկայումս մշակվում են այնպիսի հաստատվող ցուցանիշներ, ինչպիսիք են՝ ուսումնական հաստատություններում գործարկվող տեղերի քանակը, սովորողների ընդհանուր թիվը, ընդունելություն, շրջանավարտներ և բազմաթիվ այլ ցուցանիշներ։ Ընդ որում, ֆինանսական պլանավորման մեջ հաստատվող և հաշվարկային ցուցանիշների ընդգրկման շրջանակներն ավելի լայն են, որը հնարավորություն չի ընձեռում իրար հետ կապակցելու ծախսերի առանձին տեսակները և որոշելու դրանց տնտեսական արդյունավետությունը։ Օրինակ, դպրոցներում ծախսերը պլանավորվում են մեկ դասարանի հաշվով, իսկ բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ մեկ ուսանողի հաշվով։ Կարծում ենք, ժողովրդական կրթության զարգացման պլանում, որպես հաստատվող կարևոր ցուցանիշ, նպատակահարմար է թողնել միայն սովորողների ընդհանուր թիվը, որը հիմք կհանդիսանա մյուս ցուցանիշների հաշվարկման և պլանավորման համար։

Ժողովրդական տնտեսության համար կադրերի ընդհանուր պահանջը հաշվարկելիս հարկ է ելնել այնպիսի ցուցանիշից, որը հնարավորություն կընձեռի բնութագրելու այս կամ այն ճյուղի կամ տերիտորիայի՝ մասնագետ կադրերով ապահովվածության ոչ միայն փաստացի, այլև հեռանկարային մակարդակը։ Այդպիսի ցուցանիշ կարող է ծառայել արտադրական ոլորտի ճյուղերում յուրաքանչյուր 1000 աշխատողին, իսկ սպասարկման ոլորտում՝ 1000 բնակչին ընկնող մասնագետների թիվը կամ հագեցվածության գործակիցը։ Ընդ որում, մասնագետների հեռանկարային պահանջը պլանավորելիս նյութական և ոչ նյութական արտադրության ոլորտներում կիրառվում են տարբեր մեթոդներ և նորմատիվներ։ Արդյունաբերության, գյուղատնտեսության, կապիտալ շինարարության, տրանսպորտի և նյութական արտադրության ոլորտի մյուս ճյուղերի համար մասնագետների հեռանկարային պահանջը պայմանավորված է առաջին հերթին գիտատեխնիկական առաջընթացի, արտադրության և աշխատողների ընդհանուր թվի աճի տեմպերով։ Կարևոր նշանակություն ունեն արտադրության ճյուղային կառուցվածքի փոփոխությունները։ Հայտնի է, որ հանրապետության տեխնիկական առաջընթացը որոշող արդյունաբերության այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են հաստոցաշինությունը, սարքաշինությունը, էլեկտրատեխնիկական և քիմիական արդյունաբերությունը, ռադիոէլեկտրոնիկան և այլն, ինժեներատեխնիկական աշխատողների հագեցվածության մակարդակը բարձր է։ Ուստի հեռանկարում արդյունաբերության կառուցվածքում դրանց տեսակարար կշռի մեծացումը և կպահանջի պատրաստել համապատասխան մասնագիտություն ունեցող կադրեր։

Հայկական ՍՍՀ արդյունաբերության մեջ զբաղված բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն ունեցող ինժեներատեխնիկական աշխատողների ընդհանուր թիվը 1977 թվականին կազմել է ամբողջ արդյունաբերության բանվոր-ծառայողների թվի մոտ 10 տոկոսը։

Կրթության, առողջապահության և սպասարկման ոլորտի այլ ճյուղերի համար կադրերի պահանջի որոշման կարևոր ցուցանիշ են բնակչության ընդհանուր թիվը և աճի տեմպերը։ Ներկայումս մեր հանրապետության տարբեր քաղաքներ ու շրջաններ ունեն բարձրագույն կրթությամբ կադրերի ապահովածության տարբեր մակարդակ։ Դեռևս 1975 թվականին, յուրաքանչյուր 10 հա-

զար բնակչի հաշվով, Երևանն ուներ 3,5 անգամ ավելի շատ բարձրագույն կըր-
թությամբ մասնագետներ, քան հանրապետության մյուս քաղաքներն ու շըր-
ջանները: Յուրաքանչյուր 10 հազար բնակչի հաշվով մայրաքաղաքում կար
բարձրագույն կրթությամբ 816 մասնագետ, իսկ մյուս քաղաքներում ու շրջան-
ներում՝ 232: Վերջին երկու տասնամյակների ընթացքում Հայկական ՍՍՀ ժողո-
վըրդական տնտեսության ինդուստրիալ ճյուղերի արագ աճի շնորհիվ մե-
ծացավ պահանջը տնտեսագետների նկատմամբ:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Պլանավորումը բարե-
լավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձ-
րացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մա-
սին» 1979 թվականի որոշման կենսագործումը պահանջում է առավել մեծ
ուշադրություն նվիրել հատկապես լայն պրոֆիլի տնտեսագիտական կադրերի
պատրաստման և ռացիոնալ օգտագործման հարցին: Եթե 1960 թվականին Հա-
յաստանի ժողովրդական տնտեսությունը ստացել է բարձրագույն կրթությամբ
266 տնտեսագետ, ապա 1979 թվականին այդ թիվն աճեց 4,5 անգամ և հասավ
1194-ի:

Տնտեսագիտական որակյալ կադրերի պատրաստման կարևորությունը պայ-
մանավորված է նրանով, որ ներկայումս տնտեսագիտական գիտելիքների ծա-
վալը կրկնապատկվում է 5—10 տարին մեկ՝ ընդհանուր գիտելիքների կրկնա-
պատկման 7—15 տարվա համեմատ: Միաժամանակ տեղի է ունենում նախկի-
նում կուտակված գիտելիքների արժեզրկում՝ տարեկան մոտ 10 տոկոսի չափով:
Չնայած դրան, հանրապետության ժողովրդական տնտեսության կառավարման
և պլանավորման ապարատն ավելի լավ հագեցած է ինժեներական կադրերով,
քան տնտեսագիտական կադրերով: Քաղաքային ու շրջանային կառավարման
և պլանավորման օղակների համար բարձրագույն կրթությամբ տնտեսագետներ
չեն պատրաստվում: Մինչդեռ հասարակական աշխատանքի արտադրողակա-
նության անշեղ աճը և բնակչության սպասարկման ոլորտի զարգացման արագ
տեմպերը պահանջում են լուրջ ուշադրություն նվիրել հատկապես այդ բնա-
գավառի համար տնտեսագիտական բարձրորակ կադրերի պատրաստման և
տեղաբաշխման խնդրին: Մեր կարծիքով, անհրաժեշտ է Երևանի ժողովրդական
տնտեսության ինստիտուտում ինժեներ-տնտեսագետներ պատրաստել սպա-
սարկման ոլորտի պլանավորման և կառավարման պրոֆիլին համապատաս-
խան: Ավելորդ չի լինի նշել, որ դեռևս այդ ինստիտուտի կազմակերպման մա-
սին որոշմամբ (1975 թ.) նախատեսվում էր հաջորդ ուսումնական տարվանից
կադրեր պատրաստել քաղաքային տնտեսության կառավարման կազմակերպ-
ման և պլանավորման մասնագիտությամբ:

Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված մասնագետները, որպես կա-
նոն, կատարում են ինժեներատեխնիկական, գիտամանկավարժական, կառա-
վարման և պլանավորման ֆունկցիա: Աշխատանքի բնույթն ու բարդությունը
այն գործոններն են, որոնք որոշում են, թե ամեն մի կոնկրետ դեպքում մաս-
նագիտական ինչպիսի որակավորմամբ կատարող է պահանջվում բարձրագույն
մասնագիտական, միջնակարգ-մասնագիտական կամ նույնիսկ ուղղակի միջ-
նակարգ կրթությամբ: Այդ իսկ պատճառով ժողովրդական տնտեսության հա-
մար կարևոր նշանակություն ունի բարձրագույն և միջին որակավորում ունեցող
մասնագետների պատրաստման ու օգտագործման միջև ճիշտ հարաբերակցու-
թյան սահմանումը: Ժողովրդական տնտեսության այս կամ այն ոլորտում
բարձրագույն կրթությամբ մասնագետներին նպատակահարմար է օգտագործել
գլխավորապես այնպիսի պաշտոններում և տեղամասերում, որտեղ կատարող-
ներից պահանջվում է տեխնիկական, տնտեսական, կառավարման և սոցիա-
լական հարցերի ինքնուրույն լուծում:

Հարկ է նշել, որ ներկայումս հանրապետության ժողովրդական տնտեսու-
թյան առանձին ճյուղերում բարձրագույն և միջին որակավորում ունեցող մաս-
նագետների պատրաստման ու օգտագործման ասպարեզում նկատվում է որո-
շակի անհամամասնություն: Վիճակագրական տվյալների համաձայն, հետպա-
տերազմյան տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ



զբաղված բարձրագույն կրթությամբ մասնագետների աճի տեմպերը անհամե-
մատ ավելի բարձր են եղել, քան միջնակարգ մասնագիտականինը: Այսպես,
1941—1978 թվականներին բարձրագույն կրթության մասնագետների թիվն աճել
է 20 անգամ, մինչդեռ միջնակարգ-մասնագիտական կադրերինը՝ մոտ 10 ան-
գամ: Ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղեր ունեն բարձրագույն և միջ-
նակարգ-մասնագիտական կրթությամբ կադրերի հագեցվածության և հարա-
բերակցության տարբեր մակարդակ: Տնտեսության կառավարման բարձրագույն
օղակներում, ասենք՝ մինիստրություններում և գերատեսչություններում, այդ
հարաբերակցությունը, բնականաբար, փոփոխվում է հօգուտ բարձրագույն կըր-
թությամբ մասնագետների: Մինչդեռ արդյունաբերության, շինարարության,
գյուղատնտեսության, տրանսպորտի և բնակչության սպասարկման ոլորտի շատ
ճյուղերում նորմալ կարելի է համարել այն վիճակը, երբ բարձրագույն կրթու-
թյամբ յուրաքանչյուր աշխատողին ընկնում է միջնակարգ-մասնագիտական
կրթությամբ 3—4 մասնագետ: Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության
մեջ ներկայումս երկուսը մեկի հարաբերակցություն գոյություն ունի միայն
առողջապահության ու ֆիզկուլտուրայի և թեթև արդյունաբերության ճյուղե-
րում, իսկ մյուս ճյուղերում, ինչպես նաև շինարարության ու գյուղատնտեսու-
թյան մեջ միջնակարգ-մասնագիտական կրթություն ունեցողների տեսակարար
կշիռը խիստ ցածր է: Միջին հաշվով, հանրապետության արդյունաբերության
մեջ զբաղված բարձրագույն կրթությամբ յուրաքանչյուր մասնագետին ընկնում
է միջնակարգ-մասնագիտական կրթությամբ 1,3 մասնագետ, շինարարությու-
նում՝ 0,8, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 1,1 մասնագետ:

Խնդիրն, այսպիսով, այն է, որ կրթության զարգացման հեռանկարները
պլանավորելիս ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում բարձրացվեն
միջին որակավորում ունեցող մասնագետների պատրաստման տեմպերը:

Ներկայումս, երբ կուսակցությունը վիթխարի նշանակություն է տալիս
երկրի հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման
հարցին, ավելի ակնհայտ է դառնում ժողովրդական կրթության արդյունավե-
տության որոշման և գնահատման մեթոդների անհրաժեշտությունը: Ինչպես
գիտենք, ժողովրդական կրթությունը հասարակական արտադրության արդյու-
նավետության բարձրացման վրա ներազդում է, նախ, էկոնոմիկայի ոլորտնե-
րում զբաղված աշխատողների որակավորման բարձրացմամբ և գիտելիքների
ու փորձի կուտակմամբ, երկրորդ, կրթության համակարգի զարգացման համար
ներդրված նյութական, դրամական ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ
օգտագործման, կառավարման ու պլանավորման մեթոդների կատարելագործ-
ման միջոցով:

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն առնչվում են տնտեսական և
սոցիալական պրոցեսների պլանավորման, կառավարման և կազմակերպման
հետ: Կրթությունը նույնպես անմիջականորեն շաղկապված է աշխատանքային
ռեսուրսների վերարտադրության պլանավորման հետ:

Կրթության «արտադրանքը» մարդկանց մասնագիտական գիտելիքների և
կարողությունների կուտակման պրոցես է, որն անհրաժեշտ է հասարակական
որոշակի ֆունկցիա կատարելու համար: Ինչպես ժողովրդական տնտեսության
ամեն մի արտադրանք, այնպես էլ կրթության «արտադրանքը», ունի արժեք,
որը չափվում է այդ հիմնարկությունների պահպանման և աշխատանքային ռե-
սուրսների վերարտադրության վրա կատարվող հասարակական ծախսումներով:
Կրթության համակարգի զարգացման վրա կատարվող ծախսերը նույնպես բա-
ժանվում են երկու մասի՝ միանվագ և ընթացիկ: Ժողովրդական կրթության
միանվագ ծախսերը պլանավորվում են կապիտալ ներդրումների ձևով և ավե-
լացնում են հիմնական ֆոնդերի արժեքը, իսկ ընթացիկ շահագործման և պահ-
պանման ծախսերը պլանավորվում են ուսումնական հաստատությունների տա-
րեկան նախահաշիվներում և չեն ավելացնում հիմնական ֆոնդերի արժեքը:
Այդպիսի ծախսերի թվին են դասվում բուհերի պրոֆեսորադասախոսական և
սպասարկման անձնակազմի աշխատավարձը, կրթաթոշակները, ուսումնական
և օժանդակ շենքերի, գրադարանների, հանրակացարանների ընթացիկ պահ-
պանման ծախսերը, ուսումնական ձեռնարկների և դասագրքերի հրատարակ-

ման, վարչակառավարչական և այլ ծախսերը: Հետևաբար, ուսման տեսակարար ծախսերի պլանավորումը ժողովրդական կրթության համակարգի արդյունավետության բարձրացման կարևոր տարրերից է:

Ժողովրդական կրթության կառուցվածքային տեղաշարժերի՝ որակյալ մանկավարժների առկայության, հերթափոխայնության և խտության գործակցի իջեցման, ուսուցման առաջավոր ձևերի ներդրման շնորհիվ վերջին տասնամյակների ընթացքում ավելացել են հանրապետության ժողովրդական կրթության տեսակարար ծախսերը: Եթե 1950 թվականին, մեկ ուսանողի հաշվով, միջին տարեկան ծախսը կազմել է 580 ռուբլի, ապա վերջին տարիներին այն անցնում է 1000 ռուբլուց:

Հայտնի է, որ ժողովրդական կրթության մեջ ներդրված միջոցների փոխհատուցումը հասարակությունը ստանում է երկար տարիների ընթացքում: Կրթության համակարգում կարևոր նշանակություն ունեն հատկապես բարձրագույն կրթության ճիշտ պլանավորումն ու կազմակերպումը, որտեղ մեկ ուսանողի վրա կատարած տարեկան ծախսերը համարժեք են դպրոցական հինգ աշակերտի հատկացված ծախսերին՝ միասին վերցրած:

Վերջին տասնամյակներին զգալի տեղաշարժեր են կատարվել ուսուցման ձևերի միջև ճիշտ հարաբերակցություն սահմանելու ասպարեզում: Բարձրացել է արտադրությունից չկտրված ուսուցման տեսակարար կշիռը: Այսպես, 1950 թվականին բուհերի ցերեկային բաժիններն ավարտած մասնագետների թիվը մեզ մոտ կազմել է մոտ 90 տոկոս, անցյալ հնգամյակի տարիներին այն իջել է մինչև 65 տոկոսի: Ընդ որում, այնպիսի մասնագիտությամբ, ինչպիսին տնտեսագիտությունն է, ցերեկային ուսուցման տեսակարար կշիռը չի գերազանցում 60 տոկոսից:

Սակայն ժողովրդական կրթության մեջ կատարվող կառուցվածքային նման տեղաշարժերը երբեմն բացասաբար են ազդում կադրերի պատրաստման որակական մակարդակի վրա: Մեծ ուշադրություն հատկացնելով կադրերի պատրաստման միայն քանակական կողմին, ժողովրդական տնտեսությունը զգալի միջոցներ է կորցնում նրանց ցածր որակի պատճառով: Հաշվարկները ցույց են տալիս, որ բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում երեկոյան և հեռակա ուսուցումը մոտ երկու անգամ ավելի էժան է, քան ցերեկային ուսուցումը: Բացի այդ, երեկոյան և հեռակա ուսուցման դեպքում ուսանողները կրթություն ստանալու հետ մեկտեղ շարունակում են աշխատել: Ինչպես տեսնում ենք, եթե կրթության արդյունավետությունը դիտենք միայն նրա տնտեսական տեսանկյունից, այսինքն՝ հաշվի առնենք միայն նրա արժեքը, ապա երեկոյան և հեռակա կրթության արդյունավետությունը գերադասելի է: Սակայն կրթության արդյունավետությունը որոշելիս միայն տնտեսական նկատառումները բավական չեն, անհրաժեշտ է հաշվի առնել նաև այլ կարևոր հանգամանքներ:

Ուսուցման այդ ձևերի հետագա կատարելագործումը պետական կարևորություն ունեցող խնդիր է և պատահական չէ, որ երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման նոր հնգամյակի Հիմնական ուղղությունների նախագծում առանձնակի տեղ է տրված այդ հարցին:

Փորձը վկայում է, որ ուսանողն ավելի լավ արդյունքի կարող է հասնել միայն այն դեպքում, եթե նա իր ողջ ժամանակը տրամադրում է ուսմանը և այդ է պատճառը, որ ցերեկային ուսման բաժիններում ուսանողների առաջադիմությունը, որպես կանոն, ավելի բարձր է: Բացի այդ, երեկոյան և հեռակա ուսուցման բաժիններից ուսանողների մաղման տեսակարար կշիռը բավականին մեծ է, ընդ որում, այդ բաժիններից մեծ մասամբ հեռանում են այն ուսանողները, որոնց ընտրած մասնագիտությունը չի համապատասխանում հիմնական աշխատանքի բնույթին: Երեկոյան և հեռակա ուսուցման արդյունավետությունը կարելի է բարձրացնել այն դեպքում, եթե բուհեր հիմնականում ընդունվեն միայն տվյալ մասնագիտությամբ պրակտիկ փորձ ունեցող անձինք:

Ժողովրդական տնտեսությունը մեծ վնասներ է կրում ուսումնական հաստատություններում մասնագետ կադրերի պատրաստումն ու շրջանավարտների տեղաբաշխումը ոչ ճիշտ պլանավորելու հետևանքով: Ահա թե ինչու հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ, կադրերով բարձր հագեցվածության պայմաններում, կարևոր նշանակություն է ձեռք բերում նրանց պլանաչափ և ռացիոնալ օգտագործման պրոբլեմը: Երբեմն ավելի մեծ կարևորություն է տրվում արտադրամիջոցների նյութաիրային արժեքների ռացիոնալ օգտագործմանը, մոռանալով, որ աշխատանքային ռեսուրսների, առավել ևս մասնագետ կադրերի պլանաչափ ու արդյունավետ օգտագործումը տնտեսական և սոցիալական աճի այն կարևոր գործոնն է, որով պայմանավորված է արտադրապրոցեսի ռացիոնալ կազմակերպման և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման մակարդակը:

Բուհերի և տեխնիկումների պատրաստած մասնագետների բաշխման առկա կարգը չի խթանում ուսման առաջադիմության բարձրացմանը: Որակյալ և առաջին կարգի դիպլոմավոր մասնագետները երբեմն ազատ դիպլոմ են ստանում կամ ավելի ցածր աշխատանքի են նշանակվում, քան, ասենք, ուսումնական հաստատությունները մի կերպ ավարտած մասնագետները: Կարծում ենք, որ աշխատանքի տեղավորելիս անհրաժեշտ է հաշվի առնել շրջանավարտի գիտելիքների մակարդակը:

Բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթությամբ կադրերի պատրաստմանը հատկացվող ծախսերը, ինչպես գիտենք, ներկայումս հաշվի չեն առնվում և չեն պլանավորվում ձեռնարկությունների, միավորումների, մինիստրությունների և գերատեսչությունների արտադրական շահագործման պլաններում, վերջիններիս ֆինանսատնտեսական գործունեությունը չի կապակցվում բուհերում և տեխնիկումներում մասնագետ կադրերի պատրաստման որակական ու քանակական ցուցանիշների հետ: Եվ քանի որ կադրերի պատրաստման պլանավորման և կազմակերպման ամբողջ աշխատանքները կենտրոնացված են, իսկ դրամական միջոցները ֆինանսավորվում են պետական բյուջեի հաշվին, ապա մինիստրություններն ու գերատեսչությունները, ձեռնարկություններն ու կազմակերպությունները շահագրգռված չեն դրանց որակական և քանակական ցուցանիշների կատարման համար:

Այսպիսով, կադրերի պատրաստման և ժողովրդական կրթության մեջ ներդրված միջոցների օգտագործման արդյունավետության որոշման գիտականորեն հիմնավորված մեթոդները հնարավորություն կընձեռեն սահմանելու տրնտհաշվարկային հարաբերություններ ուսումնական հաստատությունների և մինիստրությունների ու գերատեսչությունների միջև: Այդ դեպքում վերջիններս հանդես կգան որպես պատվիրատու կազմակերպություններ, որոնց պատվերների ու ֆինանսավորման համաձայն ուսումնական հաստատությունները կիրականացնեն մասնագետների պատրաստումը: Ընդ որում, կադրերի պատրաստման, պլանավորման ու տեղաբաշխման այս ձևը խթան կհանդիսանա ո՛չ միայն ուսուցման որակը բարելավելու և միջոցներն արդյունավետ օգտագործելու համար, այլև կնպաստի բուհերի նյութատեխնիկական բազայի ամրապընդմանն ու մասնագետների ուսումնաարտադրական պրակտիկայի արդյունավետ անցկացմանը:

Երկրում լուրջ որոնումներ են կատարվում մասնագետների պատրաստման արդյունավետությունը բարձրացնելու նպատակով: Այդ կարևոր հարցի ճիշտ լուծմամբ է մեծապես պայմանավորված մեր ամբողջ աշխատանքի արդյունավետության հետագա բարձրացումը:

Եվ միանգամայն օրինաչափ է, որ «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականը ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների» մասին կուսակցության XXVI համագումարին ներկայացվող ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում սոցիալական պրոբլեմների համակարգում նախատեսված է կատարելագործել բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության սիստեմը և կադրերի պատրաստման ձևերն ու մեթոդները:

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՍՊԱՌՄԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՖՈՆԴԻ ԴԵՐԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

**Ս. Հ. ՍՈՂՈՄՈՆՅԱՆ**
ՀՍՍՀ գյուղմինիստրության գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ԳՀԻ բաժնի վարիչ
**Ա. Հ. ՀԱՅԿՅԱՆ**
Ավագ գիտաշխատող

ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԱԿԱՆ և հոգևոր բոլոր բարիքները ստեղծվում են աշխատանքով: Իսկ սոցիալիստական հասարակարգի յուրաքանչյուր անդամի պահանջմունքների բավարարման աստիճանը որոշվում է նախ և առաջ նրա աշխատանքային ներդրումով: Մեր հասարակության յուրաքանչյուր քաղաքացու առջև լայն ասպարեզ է բացված իր պահանջմունքների առավել լրիվ բավարարման համար: Ստեղծված են անհրաժեշտ պայմաններ՝ զարգացնելու նրա ունակությունները, բարձրացնելու աշխատանքի և կենցաղի կուլտուրան հանուն հասարակության բարօրության: Սակայն ըստ աշխատանքի բաշխումը, հանդիսանալով արտադրության զարգացման կարևորագույն խթանը և աշխատավորների բարեկեցության բարձրացման հիմնական աղբյուրը, դեռևս չի վերացնում մարդկանց նյութական ապահովվածության անհավասարությունը, որը պայմանավորված է նրանց ֆիզիկական ու հոգևոր ընդունակությունների և ընտանեկան դրության տարբերությամբ: Սոցիալիստական հասարակությունը միջոցառումների կոմպլեքս է իրականացնում նման անհավասարության մեղմացման և աստիճանաբար վերացման համար: Այդ նպատակով միջոցների կարևոր աղբյուր են սպառման հասարակական ֆոնդերը, որոնք հասարակության կամ առանձին ձեռնարկության (այդ թվում և կոլտնտեսության) նոր ստեղծած արժեքի մի մասն են՝ ուղղված աշխատավորների նյութական ու կուլտուրական բարեկեցության բարձրացմանը, անկախ ծախսված աշխատանքի քանակից և որակից:

Աշխատանքի վարձատրության և սպառման հասարակական ֆոնդերի միասնությունն այն է, որ դրանք կոչված են ապահովելու բանվորական ուժի վերարտադրությունը և պայմաններ ստեղծելու մարդկանց բազմակողմանի զարգացման համար: Նշված ֆոնդերի տարբերությունը նրանում է, որ սպառման հասարակական ֆոնդերը արտահայտվում են անվճար կամ արտոնյալ ծառայությունների ձևով: Եթե սպառման անհատական ձևը (հիմնական և լրացուցիչ վարձատրություն) կոլտնտեսականների եկամուտներն են, որոնց մեծությունը պայմանավորված է առանձին աշխատողների ներդրած աշխատանքի քանակով ու որակով, ապա սպառման հասարակական ֆոնդերից կատարվող վճարումները և արտոնությունները բավարարում են ինչպես աշխատունակ, այնպես էլ ոչ աշխատունակ կոլտնտեսականների պահանջմունքները:

Սպառման հասարակական ֆոնդերը նպաստում են ոչ միայն կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացմանը, այլև հիմք են ծառայում նրանց հոգեկան պահանջմունքները բավարարելու համար, իսկ վարձատրությունը հնարավորություն է ընձեռում ճիշտ զուգակցելու ներդրված աշ-



խատանքի քանակն ու որակը և միաժամանակ պակասեցնելու կոլտնտեսականների ու նրանց ընտանիքների ռեալ եկամուտների միջև եղած տարբերությունը: Այլ կերպ ասած, սպառման հասարակական ֆոնդերի աճը ըստ աշխատանքի բաշխումից աստիճանաբար ըստ պահանջմունքների բաշխման անցնելու կարևոր լծակ է:

Ուստի, միանգամայն օրինաչափ է այն կարևոր տեղը, որ հատկացված է այդ խնդրին «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների» նախագծում: Այդ փաստաթղթում խնդիր է դրվում կոլտնտեսություններում ապահովել աշխատանքի վարձատրության համեմատությամբ սպառման հասարակական ֆոնդերի մոտավորապես հավասար աճ: Նախատեսվում է հանրային տնտեսությունից կոլտնտեսականների եկամուտները միջին հաշվով ավելացնել 20—22 տոկոսով, իսկ հասարակական սպառման ֆոնդերի աճը՝ 20 տոկոսով:

Մեր կարծիքով, ելնելով հարցի կարևորությունից, ճիշտ կլինի Հիմնական ուղղություններում առավել հստակորեն շեշտել կոլտնտեսությունների սպառման հասարակական ֆոնդերի դերի բարձրացման անհրաժեշտությունը:

Այդ ֆոնդերը կազմավորվում են համաժողովրդական ֆոնդերից, կոլտնտեսությունների միջոցներից (որոնք հատկացվում են կենտրոնացված կարգով), ինչպես նաև անմիջականորեն տնտեսությունում ստեղծված ներկոլտնտեսային ֆոնդերից:

Համաժողովրդական ֆոնդերի հաշվին կոլտնտեսականներն ստանում են կրթություն, օգտվում են առողջապահության ծառայությունից, կուլտուր-կենցաղային սպասարկումից և այլն: Այդ ֆոնդերը կազմավորվում են կենտրոնացված կարգով պետական բյուջեից և վճարվում են կոլտնտեսականներին նույն կարգով, ինչպես բանվորներին և ծառայողներին:

Կոլտնտեսային կարգի կարևորագույն նվաճումներից մեկը կոլտնտեսականների սոցիալական ապահովության կենտրոնացված միութենական ֆոնդի կազմավորումն է: Մինչև 1964 թ. «Կոլտնտեսության անդամների կենսաթոշակների և նպաստների մասին» օրենքի ընդունումը կոլտնտեսականների սոցիալական ապահովության սիստեմը հիմնվում էր միայն առանձին կոլտնտեսությունների ֆոնդերի վրա: Թոշակի չափը պայմանավորված էր կոլտնտեսության տնտեսական վիճակով և սահմանվում էր կոլտնտեսականների ընդհանուր ժողովի որոշմամբ: Դա հասցրեց այն բանին, որ տնտեսապես թույլ զարգացած կոլտնտեսությունները թոշակ նշանակում էին չնչին թվով անձանց, ընդ որում թոշակի չափն ու ստացման պայմանները հաճախակի փոփոխվում էին: Կենտրոնացված միութենական ֆոնդի ստեղծումը հնարավորություն ընձեռեց սահմանելու կոլտնտեսականների թոշակավորման միասնական սիստեմ կոլտնտեսությունների և պետական բյուջեից կատարված հատկացումների հաշվին: Նախատեսված է, որ այդ ֆոնդին կոլտնտեսությունները հատկացնում են նախորդ տարում ստացված համախառն եկամտի 5 տոկոսի չափով միջոցներ: Այսպիսով, կոլտնտեսականների թոշակավորման ապահովման հիմնական հոգսը պետությունը վերցրել է իր վրա:

Կոլտնտեսությունների օրինակելի կանոնադրությունում գրված է, որ «Կոլտնտեսությունը սահմանված կարգով միջոցներ է մասհանում կոլտնտեսականների սոցիալական ապահովության միութենական կենտրոնացված ֆոնդի և կոլտնտեսականների սոցիալական ապահովագրության միութենական կենտրոնացված ֆոնդի համար: Մինչև կոլտնտեսականների համամիութենական III համագումարը սոցիալական ապահովությունից, որն իրագործվում է պետական բյուջեի հաշվին, օգտվում էին միայն կոլտնտեսության նախագահը, մասնագետները և մեխանիզատորները, իսկ մնացած կոլտնտեսականները՝ այն սոցիալական ապահովության արտոնություններից, որն իրականացվում էր ի հաշիվ ներկոլտնտեսային սպառման ֆոնդերի:

Սոցիալական ապահովության կենտրոնացված միութենական ֆոնդը կազմավորվում է կոլտնտեսականների տվյալ տարվա աշխատանքի վարձատրու-

թյան ֆոնդի 2,5 տոկոսի չափով։ 1970 թ. ապրիլի 1-ից կենտրոնացված ֆոնդի
հաշվին կոլտնտեսության ժամանակավոր անաշխատունակ անդամներին տըր-
վում են նպաստներ, ինչպես նաև սանատորիայի, հանգստյան տան, տուրիս-
տական և պիոներական ճամբարների ուղեգրեր։

Կոլտնտեսություններում սպառման հասարակական ֆոնդերի ավելացման
հիմնական պայմանը համախառն եկամտի արագ աճի ապահովումն է և դրա
ճիշտ բաշխումը։ Այսպես, հանրապետության կոլտնտեսություններում 1979
թվականին, 1965 թ. համեմատությամբ, համախառն եկամուտը, 100 հեկտար
գյուղատնտեսական օգտագործելի հողերի հաշվով, ավելացել է 2,5, սպառ-
ման ֆոնդը՝ 2,6, կուտակման ֆոնդը՝ 2,3, իսկ սպառման հասարակական ֆոն-
դերը՝ մոտ 8,5 անգամ։

Հանրապետության կոլտնտեսություններում սպառման հասարակական
ֆոնդերի բաղկացուցիչ մասերը ևս աճել են անհավասար։ Վերջին տարիներին
զգալիորեն ավելացել են կենտրոնացված միութենական սոցիալական ֆոնդե-
րին կատարվող հատկացումները։ Այսպես, 1979 թվականին, 1965 թ. համե-
մատությամբ, այդ ֆոնդերին կատարվող հատկացումները, 100 հեկտար գյու-
ղատնտեսական օգտագործելի հողերի հաշվով, ավելացել են շուրջ 6 անգամ,
իսկ միջին տարեկան մեկ աշխատողի և մեկ մարդ-օրվա հաշվով՝ 4,4 անգամ։
ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումից հետո ընկած ժամանա-
կաշրջանում նշանակալի չափով աճել են նաև ներտնտեսային հասարակական
սպառման ֆոնդերը։ Այսպես, 1979 թվականին, 1965 թ. համեմատությամբ,
այդ ֆոնդերը միջին տարեկան մեկ աշխատողի հաշվով, աճել են 15,1 անգամ։
Սակայն, բացարձակ արտահայտությամբ, ներտնտեսային սպառման հասա-
րակական ֆոնդերը դեռևս փոքր են։ 1979 թվականին հանրապետության կոլ-
տնտեսություններում միջին տարեկան մեկ աշխատողի հաշվով այդ ֆոնդերի
գումարը կազմել է ընդամենը 109 ռուբլի, Արարատյան հարթավայրում՝ 193,
Շիրակի գոտում՝ 54, հյուսիս-արևելյան գոտում՝ 42 ռուբլի։

Ներտնտեսային սպառման ֆոնդերի մակարդակը մեզ մոտ ցածր է նաև
կոլտնտեսականի ընտանիքի մեկ անդամի հաշվով։ Չնայած 1965 թ. 1,6 ռուբ-
լու փոխարեն 1979 թ. այն կազմել է 19,1 ռուբլի, սակայն այն պակաս է Միու-
թյան կոլտնտեսությունների ներտնտեսային սպառման ֆոնդերի գումարից,
որը միջին հաշվով հասնում է 40 ռուբլու։

Ներտնտեսային սպառման հասարակական ֆոնդերի չափերը համեմա-
տաբար բարձր են Արարատի, Մասիսի, Արտաշատի շրջաններում, որտեղ
դրանք կազմել են 248—366 ռուբլի։

Սպառման հասարակական ֆոնդերի զգալի աճի շնորհիվ որոշ չափով բա-
րելավվել է նաև դրանց կառուցվածքը կոլտնտեսություններում։ Այդ ֆոնդերում
աստիճանաբար պակասում է սոցիալական կենտրոնացված ֆոնդերի բաժինը
և ավելանում ներտնտեսային սպառման հասարակական ֆոնդերի տեսակարար
կշիռը։ Այսպես, հանրապետության կոլտնտեսություններում սպառման ֆոն-
դերի մեջ ներտնտեսային ֆոնդերը կազմել են 19,5, իսկ 1979 թվականին՝ 45,1
տոկոս, Արարատյան հարթավայրում համապատասխանաբար՝ 26 և 52,2, նա-
խալեռնային գոտում՝ 11,7 և 38,7, հյուսիս-արևելյան գոտում՝ 11,1 և 26,4
տոկոս։

Չնայած դրական որոշ փոփոխություններին, սպառման հասարակական
ֆոնդերի կառուցվածքը դեռևս ռացիոնալ համարել չի կարելի։ Այդ տեսակե-
տից վիճակն առանձնապես վատ է Արթիկի, Սիսիանի, Սպիտակի, Մարտունու,
Նաիրիի շրջանների կոլտնտեսություններում, որտեղ ներտնտեսային սպառման
ֆոնդերը կազմել են սպառման հասարակական ֆոնդերի 3—17 տոկոսը։ Դա
բացատրվում է կենտրոնացված միութենական ֆոնդերի ավելի արագ աճով,
ինչպես նաև կոլտնտեսությունների մի մասում աշխատանքի արտադրողակա-
նության ցածր մակարդակով, որը հնարավորություն չի ընձեռում անհրաժեշտ
միջոցներ հատկացնելու ներտնտեսային սպառման հասարակական ֆոնդերին։
Կան նաև կոլտնտեսություններ, որոնք աշխատանքի արտադրողականության
բարձր մակարդակի պայմաններում, միջոցներ չեն հատկացնում կամ աննշան



հատկացումներ են կատարում ներտնտեսային հասարակական ֆոնդերին։
Դա սխալ պրակտիկա է։ Անհրաժեշտ է բոլոր կոլտնտեսություններում այդ
ֆոնդերի միջոցներն ավելացնել առնվազն աշխատանքի արտադրողականու-
թյան աճին համապատասխան չափով, ինչպես նախատեսված է «ՍՍՀՄ սո-
ցիալ-տնտեսական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թ. ըն-
կած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում»։

Կատարված հետազոտություններից պարզվում է, որ սպառման հասարա-
կական ֆոնդերով ապահովված են այն կոլտնտեսությունները, որոնց համա-
խառն եկամտի մակարդակը հնարավորություն է տալիս ոչ միայն կազմավո-
րելու աշխատանքի վարձատրության անհրաժեշտ ֆոնդ, այլև մշտապես ավե-
լացնելու զուտ եկամուտը։ Դա երևում է Արարատյան հարթավայրի կոլտնտե-
սությունների օրինակով, երբ մենք համադրում ենք սպառման հասարակական
ֆոնդերի մակարդակը՝ պայմանավորված զուտ եկամտի չափերով։ Այստեղ
զուտ եկամտի աճման հետ մեկտեղ մեծանում են սպառման հասարակական
ֆոնդերին կատարվող հատկացումների բացարձակ չափերը։ Այսպես, ավելի
շատ եկամուտ ստացող կոլտնտեսություններում միջին տարեկան մեկ կոլ-
տնտեսականի հաշվով արտադրված զուտ եկամտի չափերը 7,5 անգամ ավելի
բարձր են, քան ցածր եկամտաբեր տնտեսություններում։ Այս դեպքում հասա-
րակական ֆոնդերի բացարձակ չափերը բարձր են մոտ 3,3 անգամ։

Այսպիսով, սպառման հասարակական ֆոնդերի չափերը յուրաքանչյուր
կոլտնտեսությունում պայմանավորված են նրա տնտեսական հնարավորու-
թյուններով։ Հենց դա էլ ներկոլտնտեսային սպառման ֆոնդերի առանձնա-
հատկությունն է, քանի որ այդ ֆոնդերի առաջացման աղբյուրը տվյալ կոլեկ-
տիվի աշխատողների ստեղծած համախառն եկամուտն է։

Հասարակական ֆոնդերի աճի, կոլտնտեսությունները տնտեսապես ամ-
րապնդվելու հետ մեկտեղ փոխվում է այդ ֆոնդի կառուցվածքը։ Ընդ որում,
այն կոլտնտեսությունում, որտեղ բարձր է համախառն եկամտի և աշխատանքի
վարձատրության մակարդակը, որպես կանոն, այդ ֆոնդերին հատկացնում են
ավելի շատ միջոցներ, քան տնտեսապես թույլ տնտեսությունները։ Սակայն
դեռևս կան շատ տնտեսություններ, որտեղ աշխատանքի վարձատրության
մակարդակի բարձրացումը իրականացվում է ի հաշիվ սպառման հասարա-
կական ֆոնդերի դանդաղ աճի։ Փորձը վկայում է, որ զարգացման տարբեր
մակարդակ ունեցող կոլտնտեսությունների միատեսակ պահանջմունքների բա-
վարարման համար անհրաժեշտ է, որ համախառն եկամտից այդ ֆոնդերին
կատարվող հատկացումները լինեն տարբեր։

Անհրաժեշտ է նշել, որ զուտ եկամտից կատարվող հատկացումների հաշ-
վարկման և հասարակական սպառման ֆոնդերի կազմավորման կարգը կա-
տարելագործման կարիք ունի։ Օրինակ, տնտեսապես չի հիմնավորված այն
պրակտիկան, երբ արտադրանքի ծախսերի մեջ մտցնում ենք միութենական
սոցիալական ապահովության և սոցիալական ապահովագրման համար հատ-
կացումների գումարը։ Սոցիալական բնույթով այդ ծախսումները չեն հանդի-
սանում կոնկրետ աշխատանքի համար կատարվող վարձատրություն, այդ
պատճառով էլ չպետք է վերագրվեն արտադրության ծախսումներին։ Սոցիա-
լական ապահովության և սոցիալական ապահովագրության կենտրոնացված
միութենական ֆոնդերի ընդգրկելը զուտ եկամտի կազմի մեջ՝ հնարավորու-
թյուն կընձեռի ավելի ճիշտ հաշվարկելու արտադրանքի ինքնարժեքի և արտա-
դրության շահութաբերության ցուցանիշները։

Ինչպես հայտնի է, ներտնտեսային սպառման հասարակական ֆոնդերը
ներառում են երկու խումբ՝ կոլտնտեսականների սոցիալական ապահովության
ու օգնության և կուլտուր-կենցաղային ֆոնդերը։ Սակայն, որպես կանոն,
սպառման հասարակական ֆոնդերի մեջ է դասվում նաև կոլտնտեսությունում
կազմավորված կոլտնտեսականների և մասնագետների նյութական խրախուս-
ման ֆոնդը։ Մինչդեռ, ավելի ճիշտ կլիներ այն մտցնել անհատական սպառ-
ման ֆոնդի մեջ, քանի որ սպառման հասարակական ֆոնդերը բաշխվում են
ըստ պահանջմունքների, իսկ նյութական խրախուսման ֆոնդը տրվում է

առանձին կոլտնտեսականներին և կամ ստորաբաժանումներին՝ պայմանավորված նրանց արտադրական գործունեության արդյունքներով։

Սոցիալական ապահովությունը կոլտնտեսություններում, ի տարբերություն կենտրոնացվածից, անմիջականորեն իրականացվում է ո՛չ միայն դրամական ձևով, այլև բնեղենով։ Պետք է նշել, որ վերջին տարիներին հանրապետության կոլտնտեսություններում բնեղեն վարձատրության տեսակարար կշիռը թոշակավորման ապահովության ֆոնդում զգալիորեն իջել է, իսկ դրամական մասը համապատասխանաբար մեծացել։ Եթե 1965 թ. հանրապետության կոլտնտեսությունների թոշակավորման ֆոնդում բնեղեն վճարումները կազմել են 18 տոկոս, ապա 1979 թ. դրանք իջել են մինչև 7 տոկոսի։

Հաշվի առնելով հանրապետության կոլտնտեսությունների առանձնահատկությունները, հավանաբար անհրաժեշտություն չկա կոլտնտեսականների թոշակավորման ապահովության ֆոնդից լիովին վերացնելու բնեղեն վճարումները, քանի որ գյուղում ոչ զարգացած առևտրի պայմաններում մեծահասակ թոշակառու-կոլտնտեսականները հիմնական գյուղատնտեսական մթերքներ կարող են ստանալ անմիջապես կոլտնտեսությունից, որովհետև նրանցից շատերն ի վիճակի չեն վարելու անձնական օժանդակ տնտեսությունը։ Բացի դրանից, թոշակառու-կոլտնտեսականներին անհրաժեշտ է հանրային տնտեսությունից հատկացնել խոտ, ծղոտ և այլ կերեր նրանց սեփական մթերատու անասունների պահպանման համար։

Նյութական օգնության և սոցիալական ապահովության ֆոնդը կոլտնտեսություններում գոյություն ունի վաղուց։ Այդ ֆոնդի միջոցներից կոլտնտեսությունը կարող է իր անդամներին լրացուցիչ վճարումներ կատարել և անհատական թոշակ նշանակել։ Այդ ֆոնդի միջոցներն օգտագործվում են նաև ժամանակավոր անաշխատունակներին, հղի կանանց, կարիքավորներին, ծերերին օգնություն ցույց տալու, ինչպես նաև առողջարանների, հանգստյան տների պահպանման համար։

Պետք է նկատել, որ թեև կոլտնտեսականների նյութական օգնության և ապահովության ֆոնդը 1965—1979 թթ. ընթացքում կոլտնտեսային ծխի յուրաքանչյուր անդամի հաշվով ավելացել է շուրջ 20 տոկոսով, բայց դրա հետ մեկտեղ սպառման հասարակական ֆոնդի մեջ իջել է այդ ֆոնդի տեսակարար կշիռը և 1979 թ. կազմել է 3,1 տոկոս՝ 1965 թ. 30,8 տոկոսի փոխարեն։ Դա պայմանավորված է նրանով, որ ներկայումս անաշխատունակ կոլտնտեսականներին օգնություն է ցույց տրվում կենտրոնացված ֆոնդերի հաշվին։

Ներկայումս այդ ֆոնդերի միջոցների հաշվին օգնություն ստանում են շատ քիչ կոլտնտեսականներ, որոնց թիվը աստիճանաբար կրճատվում է։ Այսպես, 1965 թվականին օգնություն ստացողները կազմել են միջին տարեկան աշխատողների 5,5, 1970-ին՝ 3,3, 1979-ին՝ 2,9 տոկոսը։ Նյութական օգնություն ստացողների տեսակարար կշիռը ցածր է Վայոց ձորի, Արարատյան հարթավայրի, Սևանի ավազանի կոլտնտեսություններում։

Բացասական երևույթ պետք է համարել այն, որ կոլտնտեսությունների մեծ մասում կոլտնտեսականներին ժամանակավոր անաշխատունակության, կանանց հղիության ու ծննդաբերության լրացուցիչ նպաստներ չեն տրվում, կամ միջոցներ չեն հատկացվում հանգստյան տան, առողջարանի, տուրիստական ուղեգրեր ձեռք բերելու համար։ Շատ փոքր է այդ ֆոնդի միջոցների հաշվին կոլտնտեսականներին տրված օգնության գումարը։ Այսպես, հանրապետությունում 1965 թվականին օգնություն ստացած մեկ կոլտնտեսականին տարվա ընթացքում տրվել է 47, 1970-ին՝ 61 և 1979-ին 96 ռուբլի։

Նյութական օգնության և սոցիալական ապահովության ֆոնդի տեսակարար կշիռը համեմատաբար բարձր է վարձատրության ցածր մակարդակ ունեցող կոլտնտեսություններում։ Վարձատրության մակարդակի բարձրացման հետ մեկտեղ կրճատվում է օգնության կարիք ունեցողների թիվը։ Սակայն դա չի նշանակում, որ վարձատրության բարձր մակարդակի պայմաններում այդ



ֆոնդը կորցնում է իր դերը։ Այսպես, 1979 թվականին Շահումյանի շրջանում օգնություն է ստացել միջին տարեկան աշխատողների մոտ 5 տոկոսը, իսկ տրված գումարը կազմել է 179 ռուբլի, Էջմիածնի շրջանում մոտ 7 հազարից օգնություն են ստացել 134-ը՝ միջին հաշվով 157 ռուբլու չափով։ Անիի շրջանում օգնություն են ստացել միջին տարեկան աշխատողների շուրջ 10 տոկոսը։ Այդ շրջանների օրինակը ցույց է տալիս, որ կոլտնտեսականների սոցիալական ապահովության ու նյութական օգնության ֆոնդը կարևոր նշանակություն ունի անգամ վարձատրության բարձր մակարդակ ունեցող տնտեսություններում։

Հետևապես, այդ ֆոնդը ո՛չ միայն չի կորցրել իր դերը, այլև կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացման և սոցիալական մի շարք կարիքների ապահովման կարևոր աղբյուր է։

Ներկոլտնտեսային սպառման հասարակական ֆոնդերի մեջ առանձնահատուկ տեղ ունի (մոտ 21 տոկոս) կուլտուր-կենցաղային միջոցառումների ֆոնդը։ Դրա հաշվին են կատարվում մանկական ու կուլտուր-լուսավորական հիմնարկությունների պահպանման, կուլտուր-մասսայական աշխատանքների անցկացման և կադրերի պատրաստման ծախսումները։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կոլտնտեսությունները տարեցտարի ավելի շատ միջոցներ են հատկացնում կուլտուր-կենցաղային կարիքների բավարարմանը։ Եթե 1965 թ. կոլտնտեսականների ընտանիքի մեկ անդամի հաշվով ծախսվել է 1,1, 1970-ին՝ 2,2, ապա 1979-ին՝ մոտ 4,1 ռուբլի։ Այդ ֆոնդի հաշվին ավելի մեծ ծախսումներ են կատարում Արտաշատի, Արարատի, Հոկտեմբերյանի, Ախուրյանի շրջանների կոլտնտեսությունները, մինչդեռ Ամասիայի, Արթիկի, Մարտունու, Ապարանի շրջանների կոլտնտեսությունները այդ նպատակով աննշան հատկացումներ են կատարել։

Սխալ են վարվում այն կոլտնտեսությունները, որոնք տնտեսապես զարգացած լինելով, կուլտուր-կենցաղային ֆոնդին անհրաժեշտ միջոցներ չեն տրամադրում։ Չնչին գումարներ առանձնացնելով այդ ֆոնդին, կոլտնտեսությունները փաստորեն չեն կարողանում ստեղծել մշտական կամ սեզոնային մանկապարտեզներ, ապահովել կուլտուր-լուսավորական հիմնարկությունների նորմալ աշխատանքը։ Կուլտուր-կենցաղային միջոցառումների ֆոնդում շատ ցածր է մանկական հիմնարկությունների պահպանման նպատակով կատարվող ծախսումների տեսակարար կշիռը, որը կազմում է այդ ֆոնդի ընդամենը 7 տոկոսը։ Բավական է ասել, որ 1979 թ. հանրապետության 310 կոլտնտեսություններից միայն 34-ն է ունեցել մշտական, իսկ 20-ը՝ սեզոնային մանկապարտեզներ։

Ընդ որում, դրանց թիվը ոչ միայն չի ավելանում, այլև կրճատվում է։ Դա հատկապես վերաբերում է սեզոնային մանկապարտեզներին, երբ անհրաժեշտ է գյուղատնտեսական աշխատանքների լարված շրջանում փոքր երեխաներ ունեցող կանանց ընդգրկել աշխատանքի մեջ։ Եթե 1965 թ. հանրապետության կոլտնտեսություններում սեզոնային մանկապարտեզներ են ունեցել կոլտնտեսությունների 35, ապա՝ 1979 թ. 6,5 տոկոսը։ Ուստի կոլտնտեսությունները պետք է ավելի շատ միջոցներ հատկացնեն մսուր-մանկապարտեզների հարմարավետ շենքեր կառուցելու համար։ Սակայն ոչ բոլոր կոլտնտեսություններն են ի վիճակի կատարելու այդ խնդիրը։ Տնտեսապես հզոր և խոշոր կոլտնտեսությունները կարող են ստեղծել մանկական, կուլտուր-կենցաղային հիմնարկություններ, իսկ փոքր տնտեսություններն այդ նպատակով պետք է միավորվեն և ստեղծեն համատեղ օգտագործման այդպիսի օբյեկտներ։

Ներտնտեսային հասարակական ֆոնդերի մեջ, ինչպես նշվեց, իր ուրույն տեղն ունի նյութական խրախուսման ֆոնդը, որին միջոցներ են հատկացվում զուտ եկամտից, տնտեսության հնարավորություններից և աշխատողներին նյութական խրախուսանք տալու անհրաժեշտությունից ելնելով։ Նյութական խրախուսման ֆոնդը աշխատանքի վարձատրության ներկա սիստեմը դարձ-

նում է ավելի ճկուն: Շատ կարևոր է, որպեսզի ճիշտ հարաբերակցություն սահմանվի նյութական խրախուսման և աշխատանքի վարձատրության ֆոնդերի միջև: Առաջավոր շատ կոլտնտեսությունների փորձը ապացուցում է, որ այդ ֆոնդի բարձր արդյունավետություն կարելի է ապահովել այն դեպքում, եթե այն օգտագործվում է ներտնտեսային սոցիալիստական մրցության մեջ հաղթողներին պարգևատրելու, շատ կարևոր և հրատապ աշխատանքների կատարման, տնտեսական բարձր ցուցանիշների համար անհատներին խրախուսելու նպատակով: Կոլտնտեսականների և մասնագետների նյութական խթանման ֆոնդը կարող է ծառայել նաև որպես ռեզերվ: Պարտադիր չէ այն լրիվ օգտագործել մեկ տարում: Անբարենպաստ եղանակների պայմաններում նյութական խրախուսման ֆոնդի միջոցները կարևոր աղբյուր կհանդիսանան պլանավորված աշխատանքի վարձատրության մակարդակի պակասը լրացնելու համար:

Կոլտնտեսություններում սպառման հասարակական ֆոնդերի ճիշտ կազմավորումը և արդյունավետ օգտագործումը կարևոր պայման են գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման, արտադրության արդյունավետության բարձրացման համար: Այն նաև աշխատավորների բարեկեցության հետագա բարձրացման ուղիներից է:

---

# ԿՈԼԵԿՏԻՎԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԱՎՈՐՄԱՆ ՉԱՓԱՆԻՇՆԵՐԸ

Ռ. Հ. ՄԵԼՈՒՄՅԱՆ

Կոլեկտիվի գործունեության արժեքավորման չափանիշների համակողմանի ու խոր ուսումնասիրությունը, հատկապես արդի պայմաններում, երբ կուսակցությունը պահանջում է կոլեկտիվի գործունեության արժեքավորման հարցում ամբողջական, կոմպլեքսային մոտեցում, խիստ կարևոր նշանակություն է ստանում: Հարցի կարևորության մասին է վկայում Լ. Ի. Բրեժնևի խոսքերն այն մասին, որ «...կատարելագործման կարիք ունի ցուցանիշների ամբողջ սիստեմը, որոնք ընկած են մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների գործունեության գնահատման, նախ և առաջ՝ նրանց աշխատանքի արդյունավետության ու որակի հիմքում»: (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 89): Այնուհետև, անդրադառնալով մարդկանց ու հասարակության կյանքում կոլեկտիվի չափազանց կարևոր դերին, Լ. Ի. Բրեժնևը նկատել է, որ նրանում «քաղաքականության ու էկոնոմիկայի «մեծ» հասկացությունները թարգմանվում են պրակտիկայի լեզվով, որտեղ մարդկանց մեջ շատ բանով ձևավորվում է վերաբերմունքը կյանքի նկատմամբ, հասարակության նկատմամբ» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 6, էջ 421):

Գրականության մեջ դեռևս անբավարար են ուսումնասիրված կոլեկտիվի գործունեության արդյունավետության չափանիշները, հիմնականում շեշտը դրվել է ձեռնարկության արտադրական գործունեության հարցերի վրա: Մինչդեռ այժմ շատ կարևոր է կոլեկտիվի գործունեության արժեքավորման չափանիշների ամբողջական համակարգի մշակումը, վերջինիս մեջ նրա առանձին բաղադրամասերի ներքին կապակցության բացահայտումը:

Նման փորձ արվում է Սոցիալական պլանավորման տեսությունն ու պրակտիկան ուսումնասիրության մեջ (Н. И. Лапин, Э. М. Коржева, Н. Ф. Наумова, Теория и практика социального планирования, М., 1975, стр. 145—147): Այստեղ քննարկվում են կոլեկտիվի ոչ միայն արտադրական-տնտեսական, այլև սոցիալական-դաստիարակչական, կառավարչական և հոգեբանական գործունեության արդյունավետության որոշման, նրա չափանիշների հարցերը, սակայն չեն արվում սոցիոլոգիական եզրահանգումներ, առաջարկներ:

Հիմնականում կա կոլեկտիվի գործունեության արժեքավորման 2 եղանակ: Առաջին դեպքում խոսքը կոլեկտիվի առանձին ֆունկցիաների իրականացման արդյունավետության չափանիշների մասին է, իսկ երկրորդ դեպքում՝ նրա ընդհանուր սոցիալական ֆունկցիայի, այսինքն՝ տվյալ հասարակական հարաբերությունների համարժեք վերարտադրության, նրանց պահպանման ու կատարելագործման, հասարակական հարաբերությունների ու արժեքների անհատականացման, անհատի և հասարակության ռեալ կապերի ու հարաբերությունների իրականացման արդյունավետության չափանիշների մասին: Ձևայած կոլեկտիվը բազմաֆունկցիոնալ միավոր է, բայց և այնպես նրա համար էականը, կարևորը մեկ ֆունկցիան է: Օրինակ, գործարանի կամ կոլտնտեսության կոլեկտիվը, ինչ խոսք, օժտված է տարբեր ֆունկցիաներով, մինչդեռ դրանցում էականը նյութական արժեքների արտադրության ֆունկցիան է: Այս հանգամանքն էլ շատ հաճախ օբյեկտիվ հիմք է ծառայում նրա բացարձականացման համար: Ճիշտ է, այժմ արդեն պլանավորվում և պետականորեն

ուսումնասիրություններում պատշաճ ուշադրություն չի հատկացվում բուն արտադրական պրոցեսի, հասարակական հարաբերությունների կազմակերպական սկզբունքների դաստիարակչական լայն հնարավորություններին։

Կոլեկտիվը մարդկային գործունեության բոլոր ձևերի նախնական ու ռեալ սուբյեկտն է, հետևաբար հասարակական հարաբերությունների արտադրության ու վերարտադրության պրոցեսը առանց կոլեկտիվ գործունեության պատկերացնել հնարավոր չէ։ Այստեղից կոլեկտիվի ընդհանուր սոցիալական ֆունկցիան, մեր պատկերացմամբ, հասարակական հարաբերությունների արտադրության ու վերարտադրության ֆունկցիան է։ Նման մոտեցումը արդարացվում ու հիմնավորվում է նրանով, որ այդ ընդհանուր ֆունկցիան վերանված ձևով պարունակում է կոլեկտիվի, այսպես կոչված, մասնավոր ֆունկցիաները։ Այսպես, կոլեկտիվի տնտեսական, քաղաքական, դաստիարակչական և մյուս մասնավոր ֆունկցիաների վերջնական իմաստը սոցիալիզմի պայմաններում սոցիալիստական հասարակական հարաբերությունների արտադրման ու վերարտադրման ապահովումն է։ Դժվար չէ նկատել, որ կոլեկտիվի ընդհանուր սոցիալական ֆունկցիան նրա մասնավոր ֆունկցիաների խտեղրացված, ընդհանրացված արտահայտությունն է, բայց ոչ նրանց մեխանիկական գումարը։ Այսպիսով, մասնավոր ֆունկցիաների արդյունավետության չափանիշները կարող են օգտագործվել որոշելու համար նաև նրա ընդհանուր սոցիալական ֆունկցիայի արդյունավետությունը։ Ինչպես վկայում է պրակտիկան, առանձին կոլեկտիվներ հաջողությամբ իրականացնելով զուտ արտադրատնտեսական խնդիրներ, չեն ապահովում նրանց ընդհանուր սոցիալական ֆունկցիայի արդյունավետության պատշաճ մակարդակը։ Ցածր է այդ կոլեկտիվների մյուս կոնկրետ ֆունկցիաների արդյունավետությունը։

Կոլեկտիվում հասարակականը վերածվում է անհատականի, իսկ վերջինս՝ հասարակականի։ Կարևոր է կոլեկտիվի ընդհանուր սոցիալական ֆունկցիան, ինչպես հասարակության գործառնության ու զարգացման, այնպես էլ անհատի առաջընթացի համար։ Ըստ էության, այդ չափանիշները օրգանապես կապակցված են իրար, պայմանավորում են մեկը մյուսին, արտահայտելով հասարակական պրոցեսի երկու անհրաժեշտ կողմերը՝ մի կողմից նրա կայունությունը, որակական որոշակիությունը, իսկ մյուս կողմից՝ նրա շարժունությունն ու փոփոխականությունը։ Առաջին չափանիշը կոլեկտիվի գործունեության մեջ հասարակական հարաբերությունների համարժեք վերարտադրությունն է, իսկ երկրորդը՝ այդ վերարտադրության վերընթաց կամ, ինչպես վկայում են այլ հեղինակներ, ընդլայնված բնույթն է։ Հասարակական հարաբերությունների համարժեք վերարտադրման ռեալ, կոնկրետ մարդկային իմաստը նրանց անհատականացումն է։ Հետևաբար, խոսքը վերաբերում է այն իրողությանը, երբ առանձին դեպքերում կոլեկտիվի որոշ անդամներ դուրս են մնում հասարակական հարաբերությունների ու արժույթների անհատականացման շրջանակներից կամ դրանք կոնկրետ մարդկային իմաստ չեն ստանում։ Նման իրավիճակը սովորաբար հանգեցնում է ո՛չ միայն տվյալ անհատների անհատական կեցության դեֆորմացիայի, այլև վերջինիս միջոցով նաև նրանց հոգեբանության և գիտակցության դեֆորմացիայի՝ դրանով իսկ լուրջ վնաս հասցնելով գլխավորապես մարդկանց սոցիալական ակտիվությանը, նրանց գաղափարական դաստիարակությանը։ Անհատական ու խմբային մակարդակի վրա հասարակական հարաբերությունների ու արժույթների ոչ համարժեք վերարտադրության օրինակներ կարող են ծառայել բյուրոկրատիզմի ու քաշքշուկի, պաշտոնական դիրքի չարաշահման, նյութական ու հոգևոր արժեքների անարդարացի բաշխման, հասարակական հարստության հափշտակման, կաշառակերության, սպեկուլյացիայի դեպքերը և այլն։ Պարզ է, որ սոցիալականորեն վտանգավոր նման երևույթների հիմքը առանձին կոլեկտիվներում ստեղծվող սոցիալ-հոգեբանական որոշակի մթնոլորտն է, ոչ ձևական նորմերի ու սկզբունքների որոշակի համակարգի ստեղծումը։ Եվ չնայած դրանք անմիջական վտանգ չեն ներկայացնում հասարակական ամբողջի համար, ի վիճակի չեն սպառնալու հասարակական հարաբերությունների համարժեք վերարտադրությանը սոցիալական լայն մասշտաբներով, սակայն կարող են դեֆորմացնել



այդ պրոցեսը՝ առանձին անհատների ու նախնական խմբերի սահմանում։ Ասենք, սոցիալիստական հասարակության օրենքների մարդասիրական և արդարացի բնույթը կարող է խեղաթյուրված ձևով ընկալել ու արժեքավորել կոլեկտիվի այն անդամը, որին անարդարացիորեն են ազատում աշխատանքից կամ բանսարկությամբ մեղադրում չկատարած հանցանքների մեջ և այլն։ Նման դեպքերը, որոնք, ցավոք, հազվադեպ բացառություններ չեն կազմում, առաջին հերթին բացասական ազդեցություն են թողնում հենց կոլեկտիվի արտադրական և մյուս մասնավոր ֆունկցիաների հաջող իրագործման վրա և դրանով իսկ նաև հասարակական ամբողջի վրա, քանի որ կոլեկտիվը այդ ամբողջի նախնական բջիջն է կազմում։ Մյուս կողմից, չպետք է մոռանալ, որ սոցիալիզմի համար հասարակական հարաբերությունների ու արժույթների ընդհանրական համարժեք վերարտադրությունը բավարար չէ։ Դրա բնույթից ու էությունից բխում է այդ հարաբերություններին ու արժույթներին յուրաքանչյուր անհատին հաղորդակցելու, դրանք այդ անհատի կենսագործունեության ներքին ու արտաքին պայմանը դարձնելու անհրաժեշտությունը։ Միայն սոցիալիզմի օրոք է մարդը դառնում հասարակական զարգացման նպատակն ու միջոցը։ Այստեղ հասարակական հարաբերությունների ու արժույթների համարժեք վերարտադրության մեջ շահագրգռված են ողջ հասարակությունը, նրա յուրաքանչյուր անդամը։ Հետևաբար, հասարակական հարաբերությունների ու արժույթների անհատականացման խնդիրը յուրաքանչյուրի կյանքի ու գործունեության պայման դարձնելը, դրանց անհատական իմաստավորումը համապետական ու համահասարակական ընդհանուր նպատակն են։ Նման պայմաններում սոցիալական հարաբերությունների ու արժույթների դեֆորմացման թեկուզ և առանձին, ոչ տիպական դեպքերը հասարակական զգալի հետևանք են ունենում։ Կոլեկտիվի գործունեությունը ո՛չ միայն նյութական արժեքների ստեղծման, այլև հասարակական հարաբերությունների ու արժույթների արտադրության ու վերարտադրության, կոնկրետ անհատների արտադրության ու վերարտադրության պրոցես է։

Այս հարցերը եղել և մնում են մեր կուսակցության և կառավարության ուշադրության կենտրոնում։ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարին ներկայացվող՝ «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում շեշտված է. «Հոգատարություն ցուցաբերել աշխատողների աշխատանքի ու կենցաղի պայմանները բարելավելու, յուրաքանչյուր կոլեկտիվում ստեղծագործական իրադրություն և սոցիալ-հոգեբանական առողջ կլիմա ստեղծելու, միավորումներում, ձեռնարկություններում, հիմնարկություններում և մյուս կազմակերպություններում պրոֆեսիոնալ վարպետությունը բարձրացնելու, կուլտուրական պահանջմունքները բավարարելու..., աշխատողներին աշխատանքի նկատմամբ գիտակցական, ստեղծագործական վերաբերմունքի, արտադրական ու հասարակական բարձր ակտիվության ոգով դաստիարակելու գործում»։

Սոցիալիզմի օրոք յուրաքանչյուր կոլեկտիվ օժտված է որոշակի անհատականությամբ ու ակտիվությամբ, նախաձեռնելու ազատ ընտրության և ստեղծագործելու կարողությամբ։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում, որի բնորոշ հատկանիշներից մեկը սոցիալ-տնտեսական, իրավաքաղաքական և այլ խնդիրների կոմպլեքսային լուծումն է և աշխատավորական կոլեկտիվների ֆունկցիաների ընդլայնումն ու դերի աճը, այդ խնդիրների իրագործման մեջ կոլեկտիվի գործունեության արժեքավորման մասնավոր չափանիշների կողքին շեշտված ձևով հանդես է գալիս այդ գործունեության արժեքավորման ընդհանուր սոցիոլոգիական չափանիշի առանձնացման և ուսումնասիրման անհրաժեշտությունը։ Նման չափանիշի դերում, մեր կարծիքով, հանդես են գալիս կոլեկտիվի գործունեության մեջ հասարակական հարաբերությունների վերարտադրման համարժեքության աստիճանն ու վերընթաց բնույթը։ Այդ չափանիշի համակողմանի ուսումնասիրությունն ու իմաստավորումը կոլեկտիվի ընդհանուր սոցիոլոգիական վերլուծության կարևոր բնագավառներից են։

---

# ՌԵԶԵՐՎՆԵՐԸ ԳՈՐԾԻ ԴՆԵԼՈՒ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

**Բ. Ս. ԳԱԼՈՒՍՏՅԱՆ**
Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման
կուսկոմիտեի քարտուղար
**Պ. Ա. ՊԱՊՅԱՆ**
«Կիրովեց» թերթի աշխատակից

*ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ զարգացման հիմնական ուղղությունների նախագիծը դնելով համաժողովրդական քննարկման, կուսակցության Կենտկոմը պետական կարևորագույն հարցերը ժողովրդի հետ համատեղ լուծելու հիանալի օրինակ է տալիս։ Մեր երկրի հետագա բարգավաճման ու հզորացման այդ ծրագիրն արժանացավ նաև «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման կուսակցական կազմակերպության և աշխատավորական կոլեկտիվի ջերմ հավանությանն ու սևեռուն ուշադրությանը։ Կուսկոմիտեն քաղլուսկաբինետի ու ողջ ակտիվի հետ բազմակողմանի աշխատանք ծավալեց Հիմնական ուղղությունների նախագծի մասսայականացման և քննարկման կամպանիան հաջողությամբ անցկացնելու համար։ Մեր նպատակն էր կուսակցության մշակած պլանները հասցնել կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի, յուրաքանչյուր կոմունիստի, նրանց ուշադրության կենտրոնում պահել հատկապես այն խնդիրները, որոնք առնչվում են մեր գիտաարտադրական միավորման արտադրության և կոլեկտիվի սոցիալական զարգացման հետ։ Հոգ է տարվել, որպեսզի արտադրամասերի, բաժանմունքների, հերթափոխությունների ու բրիգադների բոլոր կոլեկտիվները հստակ պատկերացնեն իրենց անելիքները այդ վիթխարի պլանների իրականացման գործում։*

*Նախագծի պրոպագանդումն ու մասսայականացումը բարձր մակարդակով անցկացնելու նպատակով անցկացվեցին թեմատիկ սեմինար պարապմունքներ, որոնց մասնակցեցին պրոպագանդիստները, ագիտկոլեկտիվների ղեկավարները, «Գիտելիք» ընկերության սկզբնական կազմակերպության դասախոսները և բոլոր այն ակտիվիստները, ովքեր կարող էին նախագծի շուրջ զեկուցումներով հանդես գալ արտադրամասերի, բաժանմունքների, հերթափոխությունների ու բրիգադների կոլեկտիվների առջև։*

*Հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի շուրջ առաջին զրույցները կազմակերպեցինք հերթափոխություններում ու բրիգադներում։ Այդ փաստաթուղթը մամուլում հրապարակվելուց հետո երկու օրվա ընթացքում անցկացվեցին 225 ագիտացիոն զրույցներ։ Քաղինֆորմատորներն ու ագիտատորները մեկնաբանում էին նախագծի էությունը, նշում դրա կարևորությունն ու նշանակությունը, այն առնչում միավորման կոնկրետ խնդիրների հետ։ Հատկապես հետաքրքրական էին փորձնական գործարանի, քացախաթթվի ու կաուչուկի համալիրների քաղինֆորմատորներ Ս. Հակոբյանի, Յու. Հարությունյանի, Հ. Վարդանյանի, Մ. Սարգսյանի, Ս. Հակոբյանի, Մ. Ավետիսյանի և ուրիշների անցկացրած զրույցները։*

*Արտադրամասերի ու արտադրությունների կոլեկտիվների առջև, ավելի մեծ լսարաններում նախագծի շուրջ թեմատիկ զեկուցումներով հանդես եկան «Գիտելիք» ընկերության սկզբնական կազմակերպության դասախոսներ, միավորման գլխավոր դիրեկտոր Բ. Մուրադյանը, քիմիական գործարանի դիրեկտոր Ա. Հարությունյանը, գլխավոր ինժեներ Ա. Համբարձումյանը, արհկոմի նախագահ Յու. Սարաֆյանը, գլխավոր տնտեսագետ Ա. Միրումյանը, միավորման գլխավոր դիրեկտորի գիտական գծով տեղակալ Գ. Մարտիրոսյանը և մյուս դասախոսները։*

*Միավորման 69 սկզբնական կուսկազմակերպությունների քաղաքական ուսուցման սիստեմի բոլոր խմբերում ու տեսական սեմինարներում մեկական պարապմունք պարտադիր կարգով նվիրվեց նախագծի ուսումնասիրությանը։ Քաղուսուցման սիստեմում նախագծի ուսումնասիրությունը դրա մասսայականացման ու պրոպագանդման աշխատանքի եզրափակիչ փուլն էր, սակայն ոչ վերջնականը։ Նախագիծը պետք է քննարկվեր արտադրամասերի, արտադրությունների, ավելի խոշոր ստորաբաժանումների կուսակցական, արհմիութենական, ԼԿԵՄ սկզբնական կազմակերպությունների, կուսակցական-տնտեսական ակտիվների ժողովներում։*

*Քննարկման մասսայականությունը ցույց տալու համար բավական է ասել, որ պլանավորվեցին ու անցկացվեցին կուսակցական ժողովներ 69 սկզբնական կազմակերպություններում, բոլոր արտադրամասերի արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններում։ Այդ քննարկումները ղեկավարում ու հսկում էր կուսկոմիտեն։ Հարցի նախապատրաստման համար ստեղծված հանձնաժողովներում ներգրավվեցին ՍՄԿԿ 318 անդամներ և անկուսակցական ակտիվիստներ՝ բանվորներ, ծառայողներ, ինժեներատեխնիկական աշխատողներ, գիտնականներ։ Նախագծի առաջադրած խնդիրների առնչությամբ ժողովներում մեկ անգամ ևս վերանայվեցին ունեցած հնարավորություններն ու ռեզերվները և ՍՄԿԿ XXVI համագումարի պատվին ընդունած սոցիալիստական պարտավորությունները։ Ամեն մի կոլեկտիվ ու անհատ աշխատող կարղանում էր կոնկրետացնել նոր հնգամյակի իր անելիքները և դրանց հիման վրա ստանձնում սոցմրցության լրացուցիչ պարտավորություններ։*

*Բանվոր կոմունիստ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Վաչիկ Ազիզյանն էր գլխավորում կաուչուկի արտադրության՝ նախագծի քննարկմանը նվիրված կուսժողովի հարցը նախապատրաստող հանձնաժողովը։ Կոմունիստ-դեպուտատը լավ գիտի արտադրության տեխնոլոգիան, դրա նեղ տեղերն ու այն ռեզերվները, որոնք պետք է կյանքի կոչվեն, օգտագործվեն առաջիկա հնգամյակի տարիներին։ Նա ոչ միայն բարեխղճությամբ նախապատրաստեց հարցը, այլև ակտիվորեն մասնակցեց ժողովում դրա քննարկմանը։*

*— Մենք հումքի, էլեկտրաէներգիայի, գոլորշու և օժանդակ նյութերի խնայողության լավ փորձ ենք կուտակել անցած հնգամյակում,— իր ելույթում ասաց ապարատավար Վ. Ազիզյանը և կոնկրետ փաստերով ցույց տվեց, որ իրենց մոտ դեռևս կան չօգտագործված շատ ռեզերվներ։ Այդ ռեզերվները նա տեսնում է ապարատավարներ Ռաֆիկ Ղալումյանի, Նիկոլայ Տրուզյանի, Ստեփան Վարդանյանի աշխատանքի առաջավոր փորձի մեջ։ Նրանց փորձը մասսայականացնելու դեպքում արտադրամասը կարող է տարեկան տնտեսել մի քանի տասնյակ տոննա հիմնական հումք, մեծ քանակությամբ ջերմային ու էլեկտրական էներգիա, արհեստական ցրտություն։— Միջոցների մեծ խնայողություններ կունենանք նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ,— շարունակեց ապարատավարը։ Եվ ասածը հիմնավորեց իր կատարած հաշվարկներով. նյութական զգալի միջոցները կարելի կլինի խնայել արտադրական մնացուկների կրճատման, հոսքային գծերի արդյունավետության բարձրացման, նույն ծախսերով ավելի շատ արտադրանք ստանալու հաշվին։*

*Զեկուցողը՝ արտադրական համալիրի պետ Ջ. Առաքելյանը, հանգամանորեն խոսեց նոր հնգամյակում արտադրանքի թողարկման ծավալի ավելացման, առաջիկա տարիներին գործարկվելիք նոր, ավելի ժամանակակից հզոր արտադրամասերի տեխնոլոգիական առաջավոր եղանակների արմատավորման մասին։ Նա կոլեկտիվի ուշադրությունը սևեռեց կաուչուկի որակի*

բարձրացման վրա, շեշտելով, որ նախագծում առաջ է քաշվում բնականին մոտ կաուչուկների արտադրությունն ավելացնելու հարցը։

Ժողովի մասնակիցները, հավանություն տալով գիտության և արտադրության կապերի ամրապնդման վերաբերյալ նախագծի պահանջին, պատրաստակամություն հայտնեցին ակտիվորեն մասնակցել գիտական ու հետազոտական աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու գործին։

— Կաուչուկագործների մեր բրիգադը,— ասաց 1—11բ արտադրամասի ապարատավար, սոցիալիստական աշխատանքի հերոս, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Սուրեն Պետրոսյանը,— տասներորդ հնգամյակի իր պլանը կատարեց երեք տարում։ Մենք ունենք բոլոր հնարավորությունները նման տեմպերը պահպանելու նաև տասնմեկերորդ հնգամյակում։ Մենք լիահույս ենք, որ այս հնգամյակի պլանը ևս կկատարենք երեք տարում։

Միավորման գիտական կենտրոնի՝ պոլիմերների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի լատեքսների սեկտորը գլխավորում է ֆիզիկամաթեմատիկական գիտությունների թեկնածու Ալբերտ Գևորգյանը։ Նա գտնում է, որ գիտություն-արտադրություն ցիկլի կրճատման հարցը հաջողությամբ լուծելու համար կոլեկտիվը պարտավոր է մշակել ժամանակակից պահանջներին համապատասխանող տեխնոլոգիական եղանակներ և հեշտացնել արտադրության մեջ դրանց ներդնելու գործը։ Նման փորձ արդեն կա. անցած հնգամյակում ինստիտուտում մշակվել և արտադրական կիրառություն են ստացել նաիրիտների ու լատեքսների 15 տեսակներ, որոնք մեծ պահանջարկ ունեն ժողովրդական տնտեսության մեջ։ Հատկանշական է, որ դրանց մի մասի զանգվածային թողարկումը երկրին տալիս է տարեկան ավելի քան վեց միլիոն ռուբլու օգուտ։

Վարչության աշխատողների կուսժողովում տեխնիկական առաջընթացի խնդիրների մասին խոսեց միավորման ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքների բյուրոյի պետ Մ. Միքայելյանը։ Մեծ է եղել անցած հնգամյակում ռացիոնալիզատորների և գյուտարարների ներդրումը։ Նրանց ներկայացրած 2528 առաջարկություններից միայն 1831-ի ներդրումից ձեռնարկությունն ստանում է տարեկան 5 միլիոն 300 հազար ռուբլու օգուտ։ Նախատեսվում է առաջիկա հնգամյակում ռացիոնալիզատորների և գյուտարարների թիվն ավելացնել 350-ով, նրանց գործը թեթևացնելու նպատակով ավելի ընդլայնել կոնսուլտացիոն բյուրոների քանակը, մշակել ու մասսայականացնել նոր թեմատիկ պլան, որտեղ 1200 նորարարներից ամեն մեկը կարողանա գտնել իրեն հետաքրքրող հարցերը, մշակել ստեղծագործական աշխատանքի իր անհատական հնգամյա պլանը։

Արտադրական համալիրների, արտադրամասերի, լաբորատորիաների կուսակցական սկզբնական կազմակերպությունների ժողովներում մտքերի փոխանակությանը ակտիվորեն մասնակցել են շուրջ 380 կոմունիստներ, շատերը հանդես են եկել նաև արժեքավոր դիտողություններով ու առաջարկություններով։ Կաուչուկի արտադրության կոմունիստները խնդիր են դրել գիտական ու հետազոտական աշխատանքներում ներգրավել արտադրության լավագույն մասնագետներին։ Դա նրանք հիմնավորել են պոլիմերների գիտահետազոտական ինստիտուտի և կաուչուկի արտադրության կոլեկտիվների համագործակցության ու արդյունավետ կապերի վերջին տարիների փորձով։

Ինժեներական աշխատանքի հարուստ փորձ ունեցող քիմիկոս, ՍՄԿԿ անդամ Ազատ Փափուչյանը գտնում է, որ թույլ է բնական կաուչուկին փոխարինող սինթետիկ կաուչուկների արտադրությունն ավելացնելու վերաբերյալ նախագծի պահանջը։ Այնտեղ պետք է առաջ քաշել նաև բնականին մոտ նոր կաուչուկների ստեղծման մասին խնդիրը, որն այժմ փաստորեն միավորման կոլեկտիվի համար և՛ պլան է, և՛ աշխատանքի ծրագիր։ Ցանկալի է,որ այդ ամենը վավերացվի Հիմնական ուղղություններում։

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման Հիմնական ուղղությունների նախագծի քննարկումը բուռն խանդավառություն է առաջացրել արտադրության բոլոր օղակներում։ Մեր կոլեկտիվը մեծ եռանդով է սկսել նոր հնգամյակի պլանների կատարման համար մղվող պայքարը։ Դրա վկայությունն այս օրերին դրսևորվող արտադրական վերելքն է և ծնունդ առած հայրենասիրական նախաձեռնությունները։ Երիտասարդ է բութադիենից քլորոպրենի ստացման արտադրական համալիրի կոլեկտիվը։ Այստեղ առաջին աշխատանքներն են տարվում նոր եղանակով քլորոպրենի ստացման պրոցեսներն արմատավորելու համար։ Կոմունիստները պարտավորվեցին երեք ամսով կրճատել այդ պրոցեսները յուրացնելու և նախագծային կարողությամբ արտադրությունը գործարկելու ժամկետները։ Նրանք կոչ արեցին կաուչուկի արտադրության համալիրի կոլեկտիվին՝ գործադրել բոլոր միջոցները նոր քլորոպրենով նաիրիտների ու լատեքսների ստացման տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման համար, որը նոր հնգամյակի պլանների կատարման ամենակարևոր պայմաններից մեկն է։

Հիմնական ուղղությունների նախագծից բխող այս առաջին նախաձեռնության մասին ինֆորմացիայի բոլոր միջոցներով հայտնվեց միավորման բոլոր օղակներին, խնդիր դրվեց հետևել երիտասարդ կոլեկտիվի օրինակին, վերանայել եղած հնարավորություններն ու ստանձնել նոր պարտավորություններ։ Թեթև բենզինից քացախաթթվի ստացման համալիրի կուսկազմակերպության ժողովը որոշեց մրցություն ծավալել՝ մինչև համագումար պլանից դուրս 200 տոննա քացախաթթու, մրջնաթթու և պրոպինական թթու թողարկելու համար։

Միավորման փորձնական գործարանի կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում ՍՄԿԿ անդամ Համլետ Ռաֆյանը իր ելույթում առաջ քաշեց ամբողջ գործարանում համախառն արտադրանքի երկու ամսվա պլանը ՍՄԿԿ XXVI համագումարի բացման օրը՝ փետրվարի 23-ին, կատարելու մասին խնդիրը։ Առաջարկն ընդունվեց միաձայն։ Այս նախաձեռնությունը նույնպես մասսայականացվեց միավորման բոլոր արտադրամասերում ու բաժանմունքներում։ Ս. Մ. Կիրովի անվան քիմիական գործարանի 1—5, 1—8բ արտադրամասերի կոլեկտիվներն առաջինն արձագանքեցին փորձնական գործարանի կոմունիստների նախաձեռնությանը և իրենց առջև խնդիր դրեցին քիմիապես մաքուր ռեակտիվ աղաթթվի և էթինոլային լաքի թողարկման երկու ամսվա պլանը կատարել համագումարի բացման օրը։

Համագումարի բացման օրը երկու ամսվա պլանը կատարելու մասին պարտավորություններ ստանձնեցին նաև 2—1, 2—2, 2—7, 2—8, 2—12, չափող-ստուգող սարքերի արտադրամասերի, էլեկտրալաբորատորիայի, չոր սառույցի ու հեղուկ ածխաթթվի բաժանմունքների կոլեկտիվները։ Համագումարն արժանավայել գործերով դիմավորելու համար ծավալված մրցության մեջ արդեն ակտիվորեն ներգրավվել են միավորման ավելի քան երկու հազար աշխատողներ։

---

## Մեր գրականության երախտավորները

# ԲԱՆԱՍՏԵՂԾԸ ԵՎ ՔԱՂԱՔԱՑԻՆ

(Նաիրի Զարյանի ծննդյան 80-ամյակի առթիվ)

**Ս. Կ. ԴԱՐՈՆՅԱՆ**

*Մնալ շարքի մեջ իմ ժողովրդի,*
*Ուղեկցել նրան դեպի լույս հեռուն,*
*Իմ երազներից թողնել մի կաթիլ*
*Նրա հոգևոր գանձարաններում:*
*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*



ԻՐ ԵԼՈՒՅԹՆԵՐԻՑ ՄԵԿՈՒՄ Նաիրի Զարյանն ասել է. «Իմ ճանապարհը չի եղել հարթ և զարդարած միայն ծաղիկներով... Բայց բոլոր դեպքերում ես ինձ զգացել եմ իբրև իմ ժողովրդի զինվորը»: Նաիրի Զարյանը սովետահայ այն պոետներից է, որոնց կյանքն ու գործունեությունն անբաժանելի են հարազատ ժողովրդի, երկրի ճակատագրից, դարի կենսագրությունից, որի հասակակիցն էր նա: Նրբազգացորեն նա որսում էր այն նորը, որ ծնվում էր կյանքում, արտահայտում այն ինչպես իր անձնականը, վերապրածը, պոեզիայի մեջ ներդնում իր սրտի ողջ ջերմությունը:

Զարյան-գրողի հումանիզմի ակունքները հինավուրց Վան քաղաքից ոչ հեռու գտնվող Խառակոնիս գյուղի հետ կապված հույզերն ու տպավորություններն են: Ժողովրդի հետ ապրելով նրա ողբերգությունը՝ Ն. Զարյանը երկար ժամանակ չէր կարողանում վերագտնել հոգեկան հավասարակշռությունը, որն անդրադառնում էր երիտասարդ պոետի աշխարհայացքի ձևավորման ու ստեղծագործության վրա: Միաժամանակ թշվառությունն ու աղքատությունը, կամայականությունն ու բռնությունը, որոնց վկան էր ինքը, ո՛չ միայն խռովում էին նրա հոգին, այլև համակում ատելությամբ դահիճների հանդեպ, ծնում կարեկցանք բոլոր անօթևանների նկատմամբ, տոգորում ժողովրդի հանդեպ անսահման սիրով, տագնապով՝ դժբախտության ու տառապանքների անդունդը նետված հայրենիքի ճակատագրի համար:

Վահան Տերյանը, որի ստեղծագործությունն այնպես մոտ էր երիտասարդ Զարյանի տրամադրություններին ու նրա վաղ շրջանի քնարերգությանը, իր «Նորից իմ ճամփան գնում է հեռուն...» բանաստեղծության մեջ՝ Երկիր Նաիրի շարքից, այն ողբերգական օրերին անհուն ցավով գրում էր.

*Նորից ես անտուն, նորից հեռավոր,*
*նորից անանուն,*



*Եվ իմ հոգու մեջ, և շուրջս՝ նորից աղետ*
*ու վտանգ...*

Նույն խոհերն էին համակել և տասնհինգամյա Նաիրի Զարյանին, որ բոլոր հարազատներին կորցրած, հազարավոր գաղթականների հետ եկել, հասել էր Կովկաս: Սակայն նրա ոդիսականը դեռ չէր ավարտվել: Ավելի քան հինգ տարի նա ապրեց Դիլիջանի ու Երևանի մանկատներում: Նրա հետ էին և իր մտերիմ ընկերները՝ ապագա գրող Գուրգեն Մահարին և ֆիզիոլոգ գիտնական, ակադեմիկոս Էզրաս Հասրաթյանը: Իր կյանքի այս շրջանը Ն. Զարյանը հետագայում նկարագրել է *Պարոն Պետրոսը և իր նախարարները* (1958) ինքնակենսագրական վեպում, ուր արտացոլված է երիտասարդ սերնդի աշխարհայացքի ձևավորման բարդ, ներքին հակասություններով լի պրոցեսը Հայաստանի ողբերգական վիճակի պայմաններում և ազգայնական շմոլքի մթնոլորտում, որն արհեստականորեն բորբոքում էին ժողովրդի հայրենասիրական զգացմունքները չարաշահող դաշնակները: Վեպի հերոսի՝ Արամ Անանյանի հետ միասին երիտասարդ Զարյանը վերապրել է իր ռոմանտիկական պատրանքների խորտակումը, հաղթահարել իր կասկածներն ու հոռետեսությունը, հասել միակ ճիշտ ճանապարհի ըմբռնման— հայրենիքի ազատագրումը հնարավոր է միայն սոցիալիստական հեղափոխության միջոցով և լենինյան գաղափարներով լուսավորված հեղափոխական Ռուսաստանի օգնությամբ:

Ամեն գրող իր ճանապարհի սկզբին ունեցել է հանդիպումներ, որոնք կարևոր դեր են խաղացել նրա ստեղծագործական կենսագրության մեջ: Նաիրի Զարյանի կյանքում այդպիսին է եղել հանդիպումը մեր դարաշրջանի մեծ պոետ Եղիշե Չարենցի հետ 1919 թ., երբ *Ամբոխները խելագարված* հեղափոխական պոեմի հեղինակը գալիս է Հայաստան և ծավալում բոլշևիկյան պրոպագանդա: Հիշելով այդ հանդիպումը՝ Ն. Զարյանը հետագայում գրել է. «...1918—1919 թվականներին իր հեղափոխական պոեմներով հանդես եկավ Եղիշե Չարենցը: Նրա պոեմները ուրույն նշանակություն ունեցան դաշնակիզմի տիրապետության օրոք ամքած հայ գրականության համար: Չարենցի ստեղծագործությունն այդ շրջանում հեղափոխական մի տարերային պոռթկում էր» («Գրական սերունդ», 1935, № 3—4, էջ 7): Ինչպես պատմում էր Զարյանը, Չարենցն իրեն խորհուրդ է տվել գտնել իր համար մի կեղծանուն: Երիտասարդ պոետին ևս իր անունը՝ Հայաստան, «չափից դուրս մեծազոչ» էր թվում, իսկ Եղիազարյան ազգանունը՝ անբարեհնչուն, և նա իր համար ընտրեց նոր գրական անուն՝ Նաիրի Զարյան:

ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ իշխանության վերջնական հաղթանակից հետո Նաիրի Զարյանի կյանքն ու գործունեությունն ընթացան նոր հունով: 20-ական թվականները նրա համար դարձան հոգևոր առնականացման և հանրապետության գրական-հասարակական ակտիվ կյանքի տարիներ, սոցիալիստական արվեստի գաղափարական-էսթետիկական ըմբռնումների յուրացման շրջան, իրականության արտացոլման նորանոր ձևերի որոնման ժամանակներ:

Նաիրի Զարյանը, ձգտելով առավել խորությամբ հասկանալ երկրի սոցիալիստական վերափոխությունները, ուսումնասիրում է մարքսիստական գրականությունը: Զարյանը հափշտակությամբ է ընթերցել Վ. Ի. Լենինի *Պետություն և հեղափոխություն* գիրքը՝ հայերեն, Վահան Տերյանի թարգմանությամբ և Ալ. Մյասնիկյանի առաջաբանով: Այն լույս էր տեսել 1921 թվականին, Մոսկվայում: Հիշելով, թե ինչպիսի տպավորություն է գործել իր վրա լենինյան նշանավոր աշխատությունը, Ն. Զարյանը գրել է. «Ինձ համար դա հոգեցունց տոն էր: Իմ հոգու հայացքի առջև գծագրվեց նոր և զարմանալիորեն մոտիկ աշխարհը, որի ուղին ինձ անհայտ էր, և ես քայլում էի, խարխափելով մթության մեջ: Ասես վարդագույն մշուշի միջով ես տեսա մարդկության պատմության ընթացքը և ապագայի լուսապայծառ ուրվանկարը»:

Շուտով Ն. Զարյանի բանաստեղծությունները նկատեց Ալ. Մյասնիկյանը, հովանավորեց երիտասարդ պոետին իր ճանապարհի սկզբին, սովետահայ պոեզիայի կազմավորման արշալույսին: «Մուրճ» ամսագրի առաջին համարի լույսընծայմանը նվիրված հոդվածում (1922 թ.) Մյասնիկյանն առանձնացրել է Ն. Զարյանի *Շիրակի դաշտերում* բանաստեղծությունը, համարելով այն հաջողվածներից մեկը պրոլետարական գրողների՝ ամսագրում հրապարակված ստեղծագործություններից: Նա նշել է նաև ժամանակակից Հայաստանը ճըշմարտացի արտացոլելու հեղինակի ձգտումը:

Այդ օրերից մինչև իր կյանքի վերջը Նաիրի Զարյանը հավատարիմ է մնացել իր ստեղծագործության գլխավոր թեմային՝ արդիականության թեմային: Նա ապրել է սովետական մարդկանց աշխատանքային սխրագործությունների, մասսայական խանդավառության մթնոլորտում և ձգտել է համաքայլ ընթանալ ժամանակի հետ, լինել սոցիալիստական նորի երգիչը:

Ալեքսանդր Բլոկն իր ժամանակակիցներին

կոչ էր անում «Ունկնդրել հեղափոխությանը», իսկ պոետի հոգին համեմատում էր ընդունիչի հետ, որն օդից ներծծում էր էլեկտրականության ողջ ուժը։ Ն. Զարյանն «ունկնդրում էր սոցիալիզմին», նրա ձայները, նրա ռիթմերը...

Բանաստեղծությունների առաջին ժողովածուում արդեն՝ Ջրանցքի կապույտ երկրում (1926) Ն. Զարյանը ջանում է ըմբռնել ժամանակի այրող խնդիրները, ներկայացնել նորի ծիլերը սոցիալիզմ կառուցող հանրապետությունում։ Ժողովածուն լույս տեսավ Շիրակի՝ Վ. Ի. Լենինի անվան ոռոգիչ ջրանցքի, կառուցումից փոքր-ինչ անց։ Շիր-կանալն այն ժամանակ Հայաստանի խոշորագույն հիդրոկառույցն էր։ Ն. Զարյանի Շիրակի դաշտերում բանաստեղծությունն արձագանքներից մեկն էր արևահար, քարքարոտ երկրի ծարավը հագեցնելու մասին երազող ժողովրդի կյանքի այս պատմական իրադարձության։ Շիրակի ջրանցքը պոետի պատկերացմամբ խորհրդանիշն էր բանվորների ու գյուղացիների անխախտ դաշինքի հաստատման, հասարակական նոր, երկրի հին կենսակարգը դուրս մղող հարաբերությունների հաղթանակի մարմնացումը։

20-ական թվականներին Նաիրի Զարյանն զգալի հաջողությունների է հասնում իրականության էպիկական պատկերման ասպարեզում։ Նա գրում է պոեմներ, որոնցում դրսևորվում է նրա՝ էպիկական պոետի տաղանդը։ Ժամանակի պահանջն էր այդ— իրականության էպիկական պատկերում, պատմական ոչ վաղ անցյալի հետաքրքրական խոշոր իրադարձությունների ընդգրկում, ժողովրդական զանգվածների զարթոնքի ու ստեղծագործական չտեսնված վերելքի ցուցահանում։

Ա. Վ. Լունաչարսկին Նոր կուլտուրայի առաջին քարերը զեկուցման մեջ (1925), ելնելով դարաշրջանի պահանջներից, գրական երիտասարդությանը կոչ էր անում՝ ստեղծել գրականության էպիկական ձևեր. «...Մեր նոր էպոսի ամեն մի նոր փորձ,— ասել է նա,— կլինի մի մեծ քար նոր արվեստի կերտման գործում»։

Սովետահայ գրականության մեջ առաջիններից մեկն էր Նաիրի Զարյանը, որ դիմեց հեղափոխության և Հայաստանում քաղաքացիական կռիվների թեմային (Նոյեմբերյան օրեrին, Դուք կգաք նորից, Տրիբունը, Ապստամբություն, Տաթևի ժայռից պոեմները)։ Պատմական իրադարձությունների բնույթն ինքը նպաստում էր հերոսականի էության ուժգնացմանը նրա պոեզիայում։ Ժողովրդական լայն զանգվածների մասնակցությունն այդ իրադարձություններին Ն. Զարյանի ստեղծագործությունների հաղորդում էր էպիկական հնչեղություն։ Ընդ որում, նա հենվում էր Ալ. Բլոկի և Վ. Մայակովսկու, Հ. Հակոբյանի և Ե. Չարենցի ստեղծած հեղափոխական էպոսի փորձի վրա։

Հեղափոխության և քաղաքացիական պատերազմի մասին գրած ստեղծագործություններում ընդհանրացված է երկրի ժողովուրդների հերոսական պայքարի փորձը. դրանք դաստիարակում էին ընթերցողին սովետական հայրենասիրության ոգով, համակում սոցիալիստական իդեալների նկատմամբ հավատով։

Միաժամանակ, ներկայացնելով ոչ հեռավոր անցյալի՝ հեղափոխական ռոմանտիկայով տոգորված իրադարձությունները՝ Նաիրի Զարյանը ձեռնամուխ եղավ խաղաղ ստեղծագործ աշխատանքի էպիկական պատկերմանը։ 30-ական թվականների սկզբին հանրապետությունում սկսված կոլեկտիվացման օրերին իսկ նա գրում է Ռուշանի քարափը պոեմը, որը դարձավ սովետահայ պոեզիայի դասական գործերից մեկը։ Երկու թեմա— հերոսի՝ Ալեքսանի ճակատագիրը և լեռներում ծվարած գյուղի ճակատագիրն են կազմում պոեմի սյուժեի զարգացման հիմքը։ Ժողովրդի և անձնական ճակատագրերի բարդ միահյուսմամբ ստեղծվում է Ն. Զարյանի պոեմի դրամատիկական, հոգեբանորեն հագեցված մթնոլորտը։

Ժամանակակիցների վկայությամբ, հանձինս Ռուշանի քարափի հերոսների, նրանք տեսնում էին իրենք իրենց՝ պոեմի իրական նախատիպերին։ Սակայն հեղինակի համար հատկապես թանկ էր Եղիշե Չարենցի կարծիքը։ Չարենցը բարձր էր գնահատել Ռուշանի քարափը։ Իմ մասին ինքնակենսագրական ակնարկում այս առիթով Ն. Զարյանը գրել է.

«1931 թվականին Չարենցն ինձ ասաց.

— Ես պատրաստվում եմ հրապարակային զեկուցում կարդալու, ուզում եմ հանդես գալ սուբյեկտիվիզմի դեմ՝ պոեզիայում։ Որպես նորի օրինակ բերելու եմ քո Ռուշանի քարափը պոեմը։

Ես ջանացի հուզմունքս զսպել։ Չարենցի կարծիքը ինձ համար վճռական նշանակություն ուներ» (Советские писатели. Автобиографии, т. 3, Москва, 1966, стр. 272—277):

Ռուշանի քարափը Նաիրի Զարյանի լավագույն ստեղծագործություններից է։ Այն շրջադարձային է ո՛չ միայն պոետի ստեղծագործության, այլև ողջ սովետահայ գրականության մեջ և մեծ դեր է խաղացել պոեմի ժանրի հետագա զարգացման ոլորտում։ 1935 թ., Ս. Գորոդեցկու թարգմանությամբ, Ռուշանի քարափը լույս տեսավ Մոսկվայում։ Նաիրի Զարյանի առաջին խոշոր ստեղծագործությունն էր այն, որ դուրս եկավ հանրապետության սահմաններից։

ԵՐԵՍՈՒՆԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐ. ամենաբարդ ու հակասալի շրջաններից մեկը սովետական բազմազգ գրականության, որտեղ արտացոլվում էին բուն իրականության բարդությունները ու հակասությունները։ Սովետական հասարակության պատմության մեջ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ տեղի ունեցող սոցիալական բազայի վճռական բեկման, տնտեսական ու հոգևոր կյանքի արմատական փոփոխությունների տարիներ էին դրանք։

30-ական թվականների սկիզբը կուսակցության պայքարի ժամանակաշրջանն էր՝ երկրի գրողների ուժերը միասնական ստեղծագործական մեթոդի՝ սոցիալիստական ռեալիզմի պլատֆորմի վրա համախմբելու համար։ Վերհիշելով այդ ժամանակները՝ Ն. Զարյանը գրել է. «Կյանքը բոլոր գրողների առջև դրել էր նոր, մեծ խնդիրներ։ Բնական է, գրական մի ամբողջ շարք տեսական, նաև գործնական պրոբլեմների շուրջը մեր մեջ վեճեր բորբոքվեցին... Իհարկե, այդտեղ ծայրահեղությունները անխուսափելի էին. ճշմարտությանը հասնելու համար ժամանակ, կարծիքների գործնական փոխանակման հանգիստ մթնոլորտ էր պետք» (Իմ մասին)։

Բնութագրելով 30-ական թվականների պոեզիան՝ Ալ. Սուրկովը այն ժամանակվա իր ելույթներից մեկում խոսել է «էսթետիկական սկզբունքների և քաղաքական նպատակահարմարության համատեղման» դժվարության մասին։ Այդ պրոբլեմը հառնել էր և Նաիրի Զարյանի՝ իբրև քնարերգուի առաջ։ Նա հասկանում էր, որ լիրիկան՝ ժամանակի դյուրազգաց քնարը, պահանջում է զգացմունքների բոլորանվիրություն, հակառակ դեպքում այն չի հուզի ընթերցողի սիրտը։ Ուստի և պատահական չէ, որ այն տարիներին բանաստեղծի ստեղծագործություններում այդքան մեծ տեղ են գրավում նրա խոհերն արվեստի, հասարակական կյանքում դրա դերի մասին։ Ն. Զարյանը գրում է բանաստեղծությունների շարք՝ նվիրված Ֆիրդուսուն, Գյոթեին, Բեթհովենին, Պուշկինին՝ համաշխարհային արվեստի «հավերժական գագաթներին», որոնցից հայ պոետը սովորում էր համատեղել քաղաքացիությունն ու վարպետությունը։ Եվ նա առաջադրում է իր գեղագիտական պահանջը.

*Լցրու հոգիդ հույզով, խոհով,*
*Եվ հորդառատ երգըդ երգիր*
*Ամռան պես շոգ, աշնան պես հով...*
*Եվ, հավատա՛, երգդ ապահով՝*
*Դարերի հետ տեղ կհասնի։*

Մ. Նալբանդյանի քաղաքացիական քնարերգությունից՝ Հ. Հակոբյանի հեղափոխական պոեզիան, Ե. Չարենցից՝ Ա. Բլոկ և Վ. Մայակովսկի, այդպիսին է անցած ճանապարհը Ն. Զարյանի, որի քնարերգության մեջ հիանալիորեն միահյուսվել են ազգային և ռուսական քաղաքացիական պոեզիայի արտահայտչաձևերը։ Զարյանի 30-ական թվականների ոգեշունչ հռետորական քնարերգության մեջ փոթորկում են եռանդը, խանդավառությունը, բուռն զգացմունքները, որոնք ծնվել էին կյանքի մեջ պոետի ակտիվ ներխուժումից, ժամանակն ամենայն սրությամբ ընկալելուց, «Դեպի կոմունիզմ դժվարագույն երթի խնդությունը» (Վ. Մայակովսկի) դրոշմելու ձգտմամբ։ Այստեղից և՝ Զարյանի այն տարիների բանաստեղծություններում զվարթ ինտոնացիաների, հանդիսավոր, վեհ նոտաների գերակշռությունը։ Նրա տաղանդն իր բնույթով հակված էր դեպի հրապարակախոսությունը։ Նա պոետագիտատոր էր և հպարտանում էր դրանով։ Նրա բանաստեղծություններում զգացվում է ժամանակի քայլքը, տրոփում է կյանքի զարկերակը, դրանք լի են հանուն սոցիալիզմի, ստեղծագործական աշխատանքի մղվող պայքարի պաթոսով։ Միաժամանակ Զարյանի պոեզիան քնարական է և հուզիչ։ Նա կարողացել է պարզ, ցայտուն կերպով ընթերցողին հասցնել խորապես քաղաքական, հրատապ միտքը, չթաքցնելով իրեն համակած բուռն պոռթկումը։ Ճիշտ է, պոետի ձայնը երբեմն խլացրել են վերամբարձությունը, «թմբուկների ձայնը» և այդպիսի բանաստեղծությունները չեն դիմացել ժամանակի փորձությանը։ Բայց դրանք չեն որոշել Նաիրի Զարյանի քաղաքացիական պաթոսով ներթափանցված պոեզիայի գլխավոր ուղղությունը։ Այս առումով ուշագրավ է Վերածնունդ պաթետիկ ներբողը (1937), այդ կրքոտ հիմնը հայրենիքին, որը մոխրից ու ավերակներից ժողովրդի կամքով, արիությամբ ու եռանդով նոր կյանքի է կոչվել, ժողովուրդ, որ գիտակցել է իր վճռական ուժը հասարակության զարգացման ոլորտում։ Ողջ բանաստեղծության լեյտմոտիվը վեր՝ դեպի արևը ձգտող ծաղկի քնարական կերպարն է, որը խորհրդանշում է թշնամիների սրի շաչն ու շառաչին դիմացող և պայքարով իր երջանկությունը նվաճած հայ ժողովրդի կենսունակությունն ու կենսասիրությունը։

Նաիրի Զարյանը հասկանում էր, որ իր հայրենիքի վերակենդանացումը հնարավոր դարձավ լենինյան վեհ գաղափարների կենսագործման շնորհիվ։ Ուստի և օրինաչափ է նրա անդրադառնալը լենինյան թեմային՝ սովետական բազմազգ գրականության այդ առաջա-

տար թեմային: Նրա լավագույն բանաստեղծություններում հառնում է առաջնորդի կերպարը՝ «ոչ միտինգային, ոչ պլակատ» (Ե. Չարենց), այլ պատմական կոնկրետությամբ, հասնելով պոետական խոր ընդհանրացման.

*Լենին, դու կյանքն ես հարակեզ,*
*Դու պատմությունն ես մարդկային,*
*Որ շառաչում է հորդ գետի պես,*
*Դեպի օվկիանն ապագայի:*

*Եվ քանի դեռ կանգ չի առել*
*Կյանքի ընթացքը կենսահորդ,*
*Դու կփայլես որպես արև,*
*Որպես ուղի և առաջնորդ:*

30-ական թվականների վերջին, 40-ականի սկզբին Զարյանը գրում է մանկության ու պատանեկության օրերին նվիրված մի շարք հուզիչ, քնարական (Հայրենի տուն, Ես չեմ ունեցել անհոգ մանկություն), ինչպես և սիրային բանաստեղծություններ, որոնք հետագայում ընդգրկվել են Քեզ հետ միասին շարքի մեջ:

30-ական թվականներին Ն. Զարյանն զբաղվում է և թարգմանությամբ: Թերևս Սովետական Հայաստանի պոետներից ոչ ոք այնքան շատ չի թարգմանել, որքան Զարյանը: Թարգմանությունները նա համարում էր ժողովուրդների հոգևոր հաղորդակցման և փոխմերձեցման զորեղ միջոց: Նրան հատկապես հրապուրում էին ռուսական դասական և ժամանակակից ականավոր պոետները: Ն. Զարյանը հայերեն է թարգմանել Պուշկինի, Լերմոնտովի, Նեկրասովի, Բրյուսովի, Եսենինի, Մայակովսկու, Բագրիցկու, Պրոկոֆևի, Լուգովսկու բանաստեղծություններն ու պոեմները:

Նաիրի Զարյանն ինտերնացիոնալիստ գրողի վառ օրինակ է: Սովետական շատ ականավոր գրողների բարեկամն էր նա և նամակագրական կապ ուներ նրանց հետ՝ Ա. Նովիկով-Պրիբոյ, Ա. Ֆադեև, Ա. Տվարդովսկի, Ի. Էրենբուրգ, Մ. Ռիլսկի, Յա. Կուպալա, Ս. Վուրղուն, Մ. Աուէզով... պոետի անձնական գրադարանում խնամքով պահպանվում են տասնյակ գրքեր՝ նրանց ընծայագրերով:

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ առաջին օրերից Նաիրի Զարյանը, ինչպես և սովետական բոլոր գրողները, իր գրչով ծառայում է ֆաշիստական հորդաներից սոցիալիստական հայրենիքի պաշտպանության գործին: Շատ փայլուն էջեր է գրել նա պատերազմական տարիների պոետական տարեգրքում: Իրար հետևից լույս էին տեսնում նրա բանաստեղծությունների ու պոեմների ժողովածուները. Մարտակոչ, Վրեժ, Շիկացած հոգով, Լսե՛ք, դարեր: Վերնագրերն իրենք են խոսում իրենց մասին: Այդ, հիրավի, կրակի մեջ ծնված, կրակի փորձությամբ անցած պոեզիա էր՝ առնական, ճշմարտացի, սրտեր թունդ հանող, ծանր օրերում կոփված:

Այդ ահեղ տարիներին Զարյանը գրեց հայկական պոեզիայի լավագույն ստեղծագործությունը պատերազմի մասին՝ Զայն հայրենական պոեմը (1943) և հայ գրականության մեջ պատմական թեմայով գրված լավագույն գործը՝ Արա Գեղեցիկ ողբերգությունը (1944):

Պատերազմական տարիների սովետական պոեզիային բնորոշ էր հայրենասիրության, ազգային հպարտության գերզգացումը. ֆաշիզմն սպառնում էր մեր ժողովուրդների բուն գոյությանը, բարբարոսաբար ոչնչացնում կուլտուրայի հուշարձանները, պղծում ազգային սրբությունները: Ահա ինչու Ն. Զարյանի Զայն հայրենական պոեմը հնչեց իբրև հայրենասեր պոետի՝ հայրենիքը, նրա հինավուրց կուլտուրան թշնամու ներխուժումից պաշտպանելու կրքոտ կոչ: Պատմականի և արդիականի օրգանական սինթեզն է իրոք համաժողովրդական ճանաչում գտած այս պոեմի գեղարվեստական կառուցվածքի հիմքը: Այն կարդում էին ռազմաճակատում, խարույկի շուրջը՝ դադարի պահին արտագրվում, տարածվում էր այն խրամատներում... Հիմա էլ, տարիներ անց, ընթերցողն զգում է կրակի բոցն ու վառոդի հոտը, լսում հերոսական օրերի անլռելի բաբախյունը...

Պատերազմի տարիներին սովետական գրողները հեռավոր անցյալի իրադարձությունների վիթխարի հեղեղում ընտրում էին առավել հրատապ թեմաներ ու իրենց ժողովրդական ոգով ու պատմական լավատեսությամբ դարաշրջանին համահնչուն նշանավոր հերոսներ: Ն. Զարյանի Արա Գեղեցիկը այդպիսի ստեղծագործություններից է:

Բնորոշելով ողբերգության էությունը՝ Ա. Ս. Պուշկինը հարցրել է. «Ինչն է զարգանում ողբերգության մեջ: Ո՞րն է նրա նպատակը»: Եվ պատասխանել է. «Մարդը և ժողովուրդը: Ժողովրդի ճակատագիրը»: Պուշկինի փորձի վրա էլ, ամենից առաջ, հենվել է Ն. Զարյանը՝ Արա Գեղեցիկ-ում ցույց տալով մարդու ճակատագրի պայմանավորվածությունը ժողովրդի ճակատագրով, հեղինակն այդ մասին ուղղակի հայտարարում է. «...«Պոլտավա», «Բորիս Գոդունով» և մյուս պուշկինյան երկերը օգնեցին ինձ՝ գտնելու իմ որոշ պոեմների և դրամատիկական աշխատությունների ոճը և կոմպոզիցիան»:

Ի տարբերություն իր բոլոր նախորդների, Ն. Զարյանն առաջինը Արա Գեղեցիկի և Շա-



միրամի առասպելը դրեց պատմական հիմքի վրա, հաղորդեց նրան խոր հայրենասիրական գաղափար: Եվ այս առումով Արա Գեղեցիկը կատարյալ ռեալիստական, պուշկինյան ժանրի ոգով գրված ժողովրդական ողբերգություն է: Պատմության խորքերում Ն. Զարյանը որոնեց և գտավ այնպիսի պրոբլեմներ, որոնք մոտ ու հասկանալի էին մեր ժամանակներին: Պատմության պոեզիան նրան հուզում էր այն չափով, որչափով այն կարող էր հուզել մեր դարաշրջանի մարդուն: Եվ այդ լավ էր զգում Ավետիք Իսահակյանը: 1943 թվականի սեպտեմբերի 23-ի իր նամակում նա գրել է Զարյանին. «Լավ ես անում, շատ լավ, որ գրում ես «Արա Գեղեցիկը»: Լավ կստացվի... Եթե, մանավանդ, որ ոգեորված ես խոսում, ուրեմն ապրում ես դրանով»:

ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ Նաիրի Զարյանը մնաց սովետահայ գրականության աջթևայինը: Մոտ երկու տասնամյակ, 30-ական թվականների կեսից 50-ականների կեսը, նա տոն է տվել ո՛չ միայն մեր պոեզիային, այլև արձակին ու դրամատուրգիային: Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ հայ գրողներից գրեթե ոչ ոք ողջ գրական պրոցեսի վրա չի ունեցել այնպիսի վիթխարի ազդեցություն, ինչպիսին Զարյանը: Միաժամանակ Ն. Զարյանը գրական ստեղծագործական աշխատանքը համատեղում էր հասարակական ակտիվ գործունեության հետ: Խաղաղության պաշտպանության սովետական կոմիտեի հիմնադրման օրվանից նրա անդամն էր և մինչև կյանքի վերջը ղեկավարում էր Խաղաղության պաշտպանության հայկական կոմիտեն: Նա բազմիցս ընտրվել է խաղաղության պաշտպանության միջազգային կոնգրեսների պատվիրակ և իր ակտիվ ու անխոնջ աշխատանքի համար արժանացել «Խաղաղության մարտիկ» ոսկե մեդալին:

Նաիրի Զարյանի հետպատերազմյան պոեզիայի թեման թշնամու դեմ հաղթանակ տարած սովետական ժողովրդի ստեղծագործ աշխատանքն է, պայքարը խաղաղության համար, ընդդեմ նոր համաշխարհային պատերազմի փորձի: Ժամանակի պոետական վավերագիր հանդիսացավ նրա բանաստեղծությունների Խաղաղություն շարքը (1950—1959): Այն սկսվում է քրեստոմատիական դարձած, հանրահայտ Խաղաղության աղավնին բանաստեղծությամբ:

Այսօր ևս, կարդալով այն, թվում է, թե Խաղաղության համաշխարհային կոնգրեսի դահլիճում, ուր տեղի է ունեցել այդ սրտաշարժ իրադարձությունը, վերակենդանանում է Բեռլինի Տրեպտով-պարկի հուշարձանը— սովետական զինվորը՝ մի ձեռքին սուր, մյուսով ամուր գրկած փոքրիկ երեխային: Հույն աղջնակի կերպարը Ն. Զարյանի բանաստեղծության մեջ դառնում է խորհրդանիշը ողջ կենդանի, երիտասարդականի, ծաղկողի ու գեղեցկի, այն ամենի, հանուն ինչի մարդիկ պաշտպանում են խաղաղությունն այս մոլորակի:

Զարյանի հետպատերազմյան, ինչպես և 30-ական թվականների, ստեղծագործության մեջ զգալի տեղ է գրավում գյուղի թեման: Զարմանալի ոչինչ չկա այն բանում, որ չի նվազել նրա հետաքրքրությունը հողի աշխատավորի հանդեպ. գյուղի մարդկանց աշխատանքի պոեզիան միշտ էլ հուզել է գրողին:

Նաիրի Զարյանը գրողների այն սերնդից է, որոնց անվան հետ մենք կապում ենք կոլտնտեսային կյանքի առաջին փուլն արտացոլող սովետական բազմազգ գրականության առավել նշանակալից գեղարվեստական նվաճումները: 1947 թվականին իր առաջին գրքի լույս ընծայումից տասը տարի անց, նա ավարտում է Հացավան վեպը: Ն. Զարյանի այս վեպը նշանավոր գործ է ո՛չ միայն հեղինակի ստեղծագործության, այլև ողջ հայ գրականության համար: Այստեղ, ինչպես նշվել է «Պրավդա»-ի 1951 թ. մայիսի 13-ի համարում, Ն. Զարյանին «հաջողվել է ստեղծել կոլտնտեսային գյուղի աշխատավորների՝ սովետական հայրենասերների արտահայտիչ կերպարներ: Վեպի գլխավոր հերոսի՝ բոլշևիկի, կոլտնտեսության նախագահ Լևոն Լամբարյանի կերպարը թերևս ամենահաջողվածն է հայ գրականության՝ կոլտնտեսային գյուղացիության կյանքին նվիրված ստեղծագործությունների մեջ»:

Ռուշանի քարափի համեմատությամբ, Հացավանում խորացված է կերպարների հոգեբանական մշակումը: Վեպի հերոսները գրավում են հենց նրանով, որ ներկայացված են իբրև կենդանի մարդիկ՝ իրենց ողջ բարդությամբ, հակասություններով ու ներքին պայքարով: Այստեղից էլ՝ վեպի հորդուն զգացմունքներով տոգորված մթնոլորտն ստեղծող իրադարձությունների լարված դրամատիզմը, և հենց սրանում էլ դրսևորվել է Զարյան-վիպասանի վարպետությունը:

Հացավանի լույս տեսնելուց մինչև օրս այն իրավամբ համեմատվում է Մ. Շոլոխովի Հերկած Խոպանի հետ: Ըստ էության Ն. Զարյանն իրականացրել է շոլոխովյան ռեալիզմի սկզբունքները ժողովրդի՝ իբրև պատմություն կերտողի, կյանքը պատկերելիս: Հացավանը թարգմանված է շատ լեզուներով՝ ռուսերեն, ուկրաիներեն, վրացերեն, ուզբեկերեն, լեհերեն, բուլղարերեն, չեխերեն ու սլովակերեն:

Հետպատերազմյան տարիներին առանձնակի դրսևորվեց և Զարյան-դրամատուրգի տաղանդը: Դժվար է պատկերացնել ժամանակակից թեմատիկայով հայ դրամատուրգիայի ու թատրոնի զարգացումը առանց Ն. Զարյանի Աղբյուրի մոտ **(1949)** և Փոթորկաշտ **(1952)** կատակերգությունների: Հասարակ անուն է դարձել դրանցում կերտված Բալաբեկի երգիծական կերպարը: Եվ ինչն է հատկանշականը. Զարյանի կատակերգությունները ստեղծվում էին այնպիսի ժամանակաշրջանում, երբ դեռևս զգալի էր «անկոնֆլիկտայնության տեսությունը»: Դրամատուրգի ծառայությունն այն է, որ նա չէր համահարթում կյանքի հակասությունները և իր ծաղրի սուր ծայրն ուղղում էր սովետական հասարակության առաջընթացը խոչընդոտող բացասական երևույթների դեմ:

Ռուս նշանավոր պոետ Իոսիֆ Ուտկինը մի անգամ ասել է. «Քնարերգությունը պոետական արվեստի առավել անմիջական ժանրն է... քաղաքական բանաստեղծության մեջ պոետն ու իրականությունը կանգնում են իրար դեմհանդիման»: Դրանով է բնորոշվում և Նաիրի Զարյանի բանաստեղծությունների վերջին ժողովածուն՝ Սպասում եմ քեզ վերնագրով **(1968)**, որը Սասնա Դավիթ վիպակի **(1966)** հետ միասին **1972** թվականին, հետմահու արժանացել է Հայկական ՍՍՀ պետական մրցանակի:

Քնարական նրբագույն ու իմաստուն խոհեր են ամփոփված Սպասում եմ քեզ ժողովածուում: Հատկապես հետաքրքրական է ճապոնական պոեզիայի, «թանկա» և «հոքքու» ժանրերով գրված կարճ բանաստեղծությունների շարքը: Կարդում ես Ն. Զարյանի՝ փիլիսոփայական խոր մտորումներով լի պոետական այս մանրերգերը և ակամա համեմատում դրանք Հովհաննես Թումանյանի՝ նույնպես կյանքի վերջում գրած քառյակների հետ: Ասես Նաիրի Զարյանը որոշել է կյանքի վերջում դատարկել իր սրտում ողջ կուտակվածը: Սպասում եմ քեզ-ը պոետական մի ինքնատիպ կտակ է:

Նաիրի Զարյանն աչքի էր ընկնում արտակարգ կենսասիրությամբ և ստեղծագործական եռանդով: Նույնիսկ գամված անկողնուն, նա շարունակում էր աշխատել: Նա հասցրեց գրել Երկրորդ կյանք ինքնակենսագրական վեպի առաջին գիրքը, որն ընդգրկում է մանկության ու պատանեկության տարիները: Գրքի առաջաբանում Ն. Զարյանը գրել է. «Ես ուզում եմ հյուսել իմ կյանքի սև ու սպիտակ թելերից կազմված պարանը, որ թերևս պետք լինի մեր պատմության քարավանի ուղտապաններին»:

Կոմունիստ գրող և քաղաքացի Նաիրի Զարյանն իր հաստատուն տեղն ունի սովետահայ գրականության պատմության մեջ:

---


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ.** (գլխավոր խմբագիր), **ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.** (պատասխանատու քարտուղար), **ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.** (գլխավոր խմբագրի տեղակալ), **ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ. ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ.**

Адрес редакции: 375033. Ереван-33 ул. Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 25.12.80—10.1.81: Ստորագրված է տպագրության 22.1.81: ՎՖ 04513. Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16.132: Պատվեր 2945*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փող. № 28:*

Типография издательства ЦК КП Армении. 375009, Ереван-9, ул. Исаакяна 28.




## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ— Լենինյան փաստաթղթեր Հայաստանի մասին: *«Հայաստան» հրատ., 1980:*

Վ. ՊԱՐՍԱՄՅԱՆ— Վ. Ի. Լենինը և հայ ժողովրդի ազատությունը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Ռ. ՎԱՆԵՍՅԱՆ— ՍՄԿԿ XXV համագումարը սոցիալիստական ապրելակերպի հետագա զարգացման ու կատարելագործման մասին: *ԵՊՀ հրատ., 1980:*

Ա. ՋԱՆԻՆՅԱՆ— Սոցիալիստական հասարակական հարաբերությունների զարգացումը գյուղում արդի էտապում: *«Հայաստան հրատ., 1980:*

Ժամանակակից հայոց լեզվի բացատրական բառարան: *Հ. 4: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Ա. ԳԼՈՒԽՈՎ— Դարերի միջով անցնող գրքեր: *«Հայաստան» հրատ., 1980:*

Գ. ՍԵՎԱՆ— Սփյուռքահայ գրականության պատմության ուրվագծեր *(1920—1945): Ե., ԳԱ հրատ., 1980:*

Ք. ՏԵՐ-ԴԱՎԹՅԱՆ— 11—15-րդ դդ. հայ վարքագրությունը: *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Հ. ՄԱՐԳԱՐՅԱՆ— Հյուսիսային Հայաստանի և Վրաստանի ԺԲ դարի պատմության մի քանի հարցեր: *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ— Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորումը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Կ. ՉԱՉԱՆԻ— Եղբայրական հայ ժողովրդի ընտանիքում: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Բ. ԱՆԱՍՏԱՍՅԱՆ— Աշակերտների աշխատունակության գործոնները: *Ե., «Լույս» հրատ., 1980:*

Н. ТИХОНОВ — **По ленинским заветам, по пути Октября.** М., Политиздат, 1980.

В. ДОБРОХОДОВ— **Разработка В. И. Лениным научных основ партийной пропаганды.** М., «Высш. школа», 1980.

К. СУВОРОВ — **Всемирно-историческое значение опыта КПСС.** М., «Мысль», 1980.

В. ЗЛОБИН — **Второй съезд РСДРП.** Историография. Изд. МГУ, 1980.

В. КОНДРАТЬЕВ — **Большевики в борьбе за власть Советов в Москве.** М., «Знание», 1980.

В. ГЕРБАЧ — **КПСС — организатор сотрудничества рабочего класса со старой технической интеллигенцией.** Изд. МГУ, 1980.

Э. ШКЛЯР — **КПСС — ленинская партия последовательного интернационализма.** М., «Знание», 1980.

А. ЕРМОЛАЕВ — **Для народа, на службе народу.** М., «Сов. Россия», 1980.

Ю. КРАСИН — **Международное коммунистическое движение как предмет изучения.** М., «Мысль», 1980.

В. ВИНОГРАДОВА, В. МОРДАСОВ, А. ПОПОВ — **Развитие познавательной активности.** М., Политиздат, 1980.

И. ХАЧАТРЯН — **Борьба КПСС за развитие сельского хозяйства.** 1946—1965 гг. Изд. «Айастан», 1980.

А. БЕЛЯКОВА — **Организаторская работа сельских партийных организаций.** М., Политиздат, 1980.

Г. АБРАМЯН — **Компартия Армении и повышение культурно-технического уровня рабочего класса.** Изд. «Знание» Арм. ССР, 1980.

С. ТЕР-АВАКИМОВА — **Армяно-русские отношения в период подготовки Персидского похода.** Изд. «Айастан», 1980.

Е. АКОПДЖАНЯН — **Диалектика национального и интернационального в искусстве.** Изд. «Айастан», 1980.

Н. КАГРАМАНОВ — **Драматургия народов СССР на армянской сцене (1876—1976 гг.).** Изд. «Айастан», 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783
ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՃԱՌԱԳԱՅԹՄԱՄԲ ԱՆՑԿԱՑՎԱԾ ՈՒՂԻ

*Հետզհետե ընդլայնվում է լազերի կիրառման բնագավառը: Ճառագայթի որոշ հատկանիշներ այնպիսի հնարավորություններ են ընձեռում, որոնք այսօր ֆանտաստիկ են թվում:*

*ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ֆիզիկայի ինստիտուտի աշխատակից Գ. Ասկարյանը հիմնավորեց լազերային ճառագայթի օգնությամբ տարածության վրա նյութերի փոխանցելու հնարավորությունը: Ահա թե ինչպես. լազերի բռնկումից հետո ճառագայթի ճանապարհին օդի խտությունը նվազում է հարյուրավոր անգամ, հետևապես լազերի օգնությամբ կարելի է ստեղծել յուրատեսակ վակումային խողովակատար: Եթե այդ խողովակի մեջ մրղվի գաղանման վիճակում նյութի ամպիկ, ապա դրա ատոմները կպահպանվեն լուսային «խողովակատարի» սահմաններում և ջերմային շարժման արագությունների ազդեցության տակ կփոխադրվեն նախանշված ուղղությամբ:*

*Սովետական գիտնականների համարձակ ենթադրությունը վերջերս ապացուցվել է ամերիկացի կոլեգաների կատարած գիտափորձերով. թեև դրա ընթացքում հաջողվել է ընդամենը 20—30 սանտիմետր տեղափոխել աննշան քանակության նյութ (տվյալ դեպքում ալկալիական մետաղների գոլորշի), բայց միանգամայն հավանական է, որ ապագայում հետազոտողները լազերային ճառագայթին կսովորեցնեն տեղափոխել ոչ միայն գրամի մասը, այլև նյութի ամբողջական գրամներ: «Լազերային տրանսպորտը» կօգնի այն գիտնականներին, որոնք նուրբ փորձեր են կատարում ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության բնագավառներում, ինչպես նաև լայն կիրառություն կգտնի բժշկության մեջ:*

## ԱՉՔԵՐԻ ԹԱՐԹԵԼԸ ՎԵՐԱՀՍԿՈՒՄ ԵՆ ԱԿՆՈՑՆԵՐԸ

*Շոգեքարշի հոգնած վարորդը գիշերը կարող է ննջել և չնկատել լուսանշանի կարմիր լույսը, իսկ դա վթարի պատճառ կդառնա: Տրանսպորտի միջոցների փորձարկումների գիտական կենտրոնում (ԳԳՀ) ստեղծվել են անվտանգության յուրատեսակ ակնոցներ: Արտաքնապես դրանք չեն տարբերվում սովորականից: Միայն այստեղ աղեղնակից ձգվում է բարակ հաղորդալար դեպի էլեկտրոնային բլոկը, որը մոնտաժված է կառավարման պուլտին: Հատուկ սարքը հսկում է աչքերի թարթման հաճախականությունը: Եթե կոպերը փակ են, և թերթերունքներն ավելի քան 20 վայրկյան չեն կպչում փոքրաչափ հաղորդիչներին, սարքը ձայնային ազդանշանով զգուշացնում է վարորդին: Եթե մարդը խորն է քնել և չի բացում աչքերը, ապա ևս 7 վայրկյան անց ավտոմատ կերպով միանում է արգելակման համակարգը:*

## ՕԳՏԱԿԱՐ ՋՈՒԳԱՀԵՌՆԵՐ

*Անգլիացի գիտնականների առաջարկությամբ մի շարք ֆերմերներ այժմ փորձարկում են հացահատիկային կուլտուրաներին հատկացված դաշտերի մշակման նոր սխեմ: Նորույթն այն է, որ վաղ գարնանը վարելահողերում մեքենաների անցման համար գծվում են անվածիրներ: Դրանք նշվում են կրի և հերբիցիդների խառնուրդով: Փխրեցման և պարարտացման կախովի ու կցովի տարբեր գործիքները նախօրոք հարմարեցվում են այդ զուգահեռ գծերին: Դրանով էլ բարձրանում է ցանքի մշակման ճշգրտությունը, մեքենայի անիվները չեն վնասում ծիլերը, լավանում են դրանց հսկման պայմանները, բարձրանում է բնական գրենաժի աստիճանը:*

## ՌԵՎՄԱՏԻԶՄԸ ԲՈՒԺՎՈՒՄ Է ՀԵՂՈՒԿ ՕԴՈՎ

*Ճապոնիայի ֆիզիոլոգիական սառեցման ինստիտուտի պրոֆեսոր Հոսիմա Յամաուտին հաղորդել է, որ ռևմատիզմը բավական հաջող բուժվում է... սառեցմամբ: Նրա շատ հիվանդներ, որոնք նախկինում գամված էին անկողնին, բուժվելով հեղուկ օդով, որը ներարկում է մարմնի վընասված մասի վրա, ոչ միայն չեն տառապում, այլև սկսել են.., քայլել: Պրոֆեսորը նոր մեթոդի այնպիսի էնտուզիաստ է, որ նրան են վերագրում հետևյալ խոսքերը. «Բուժման սովորական մեթոդները միայն վատթարացնում են մարդու վիճակը»:*